## Ի ԳԻՏՈՒԹՅՈՒՆ

### ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ԴՊՐՈՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ» ԱՄՍԱԳՐԻ ԱՅՍ ՀԱՄԱՐԻՑ ՍԿՍԱԾ ՆՅՈՒԹԵՐ ԵՆ ՀՐԱՊԱՐԱԿՎԵԼՈՒ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԸ ԴՊՐՈՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏ-ՆԵՐԻ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ.

ՆՅՈՒԹԵՐԸ ՏՊԱԳՐՎԵԼՈՒ ԵՆ ԸՍՏ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ԾՐԱԳՐԻ։

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

11 ՆՈՅԵՄԲԵՐ · 1965
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 44-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բովանդակություն

## Содержание



---

# ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒՄԸ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼՈՒ ՀԱՄԱՐ

1965 թվականի սեպտեմբերի 27-ից 29-ը կայացավ Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի պլենումը, որը քննարկեց արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումը ուժեղացնելու, ինչպես նաև Սովետական Միության կոմունիստական պարտիայի հերթական՝ XXIII համագումարի հրավիրման հարցերը և ընդունեց համապատասխան որոշումներ:

Պլենումը որոշեց ՍՄԿՊ հերթական XXIII համագումարը հրավիրել 1966 թվականի մարտի 29-ին: Համագումարը լսելու և քննարկելու է ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի և ՍՄԿՊ վերստուգիչ հանձնաժողովի հաշվետու զեկուցումները, հաստատելու է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թթ. հնգամյա պլանի դիրեկտիվները և ընտրելու է պարտիայի կենտրոնական օրգաններ:

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը, նրա կողմից ընդունված որոշումներն ունեն բացառիկ կարևոր նշանակություն պարտիայի ու սովետական ժողովրդի կյանքում, մեր երկրում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման և երկրի պաշտպանունակության ամրապնդման համար մղվող պայքարում:

Արդյունաբերության կառավարման կատարելագործման վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումն օրգանապես կապված է ՍՄԿՊ Կենտկոմի նախորդ պլենումների որոշումների հետ և որոշ իմաստով նրանց շարունակությունն է կազմում:

Ինչպես հայտնի է, ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումից հետո մեր պարտիան, հավատարիմ լենինյան պատգամներին, մեծ աշխատանք ծավալեց երկրի քաղաքական, հասարակական և տնտեսական կյանքի ղեկավարման մեթոդներն ու ոճը կատարելագործելու, դրանք վոլյունտարիզմի ու սուբյեկտիվիզմի տարրերից մաքրելու ուղղությամբ: Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշմամբ կյանքում վերականգնվեցին պարտիական օրգանների կառուցման լենինյան կազմակերպական սկզբունքները, իսկ մարտյան պլենումը մշակեց գյուղատնտեսության արտադրության զարգացման կոնկրետ ծրագիր, որը հաջողությամբ կենսագործվում է: ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը մշակեց սոցիալիստական էկոնոմիկայի հիմքի՝ արդյունաբերության ղեկավարման հետագա կատարելագործման հստակ ծրագիր:

ՍՍՌՄ Մինիստրների սովետի նախագահ ընկ. Ա. Ն. Կոսիգինի՝ «Արդյունաբերության կառավարումը բարելավելու և արդյունաբերության արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու մասին» զեկուցման մեջ և այդ հարցի կապակցությամբ ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի ճառում ու պլենումի որոշման մեջ հանրագումարի են բերված մեր երկրի արդյունաբերության զարգացման հիմնական արդյունքները, քննադատորեն վերլուծված է նրա ղեկավարման պրակտիկան և շարադրված են ՍՄԿՊ Կենտկոմի նախագահության կողմից մշակված միջոցառումները, որոնք ուղղված են սոցիալիստական էկոնոմիկայի այդ վճռողական ճյուղի առավել նշանակալի վերելքին:

Պլենումի նյութերում բերվել են համոզեցուցիչ թվեր և փաստեր, որոնք վկայում են մեր երկրի էկոնոմիկայի և, մասնավորապես, արդյունաբերության զարգացման ասպարեզում սովետական ժողովրդի ձեռք բերած նվաճումների մասին: Հիմնականում հաջողությամբ են կատարվում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա առաջադրանքները: Յոթնամյակի տարիներին արդյունաբերական արտադրության ընդհանուր ծավալը մեծանում է մոտավորապես 84 տոկոսով՝ պլանով նախատեսված 80 տոկոսի փոխարեն: Այդ կարճ ժամանակամիջոցում մեր երկրում կառուցվել ու շահագործման են հանձնվել ավելի քան 5,5 հազար խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ: Բարելավվել է նաև արդյունաբերական արտադրության կառուցվածքը, ավելի արագ տեմպերով են զարգանում նրա առաջատար ճյուղերը: Յոթ տարիների ընթացքում, մեր երկրի արտադրության ընդհանուր ծավալում էլեկտրաէներգիայի, մեքենաշինության, մետաղամշակման և քիմիական արդյունաբերության բաժինը, այսինքն՝ ամբողջ ժողովրդական տնտեսության տեխնիկական առաջադիմությունն ապահովող ճյուղերի բաժինը, 27 տոկոսից հասել է 35 տոկոսի:

Համաշխարհային ճանաչման արժանացած, աչքի ընկնող նվաճումներ ունեն սովետական գիտությունն ու տեխնիկան: Հանրահայտ են մեր հայրենիքի հիանալի հաջողությունները տիեզերական տարածության հետազոտության, ատոմային ֆիզիկայի ու ատոմային տեխնիկայի զարգացման ասպարեզում:

Վերջին տարիներին իրագործված են սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացման մի շարք միջոցառումներ: Կրճատվել է աշխատանքային օրվա տևողությունը, ավելացել է բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը, մտցված է կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովություն: Բանվորների ու ծառայողների համար վերջին յոթ տարում կառուցվել են ավելի քան 550 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ, ինչպես նաև առևտրական ու կոմունալ-կենցաղային շատ հիմնարկներ:

Այս մեծ հաջողությունները սովետական բանվոր դասակարգի, ինժեներների, տեխնիկների, գիտնականների ստեղծագործական աշխատանքի արդյունքըն են, պարտիայի կազմակերպչական և քաղաքական-դաստիարակչական մեծ աշխատանքի արդյունքը: Սակայն, ինչպես նշեց Կենտկոմի պլենումը, մեր երկրի սոցիալ-տնտեսական վիթխարի առավելությունները դեռևս լրիվ չափով չեն օգտագործվում: Դեռևս անբավարար են օգտագործվում արդյունաբերական հիմնական ֆոնդերը, վերջին տարիներում դանդաղել են աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, անհանդուրժելի կերպով ձգձգվում է բազմաթիվ նոր ձեռնարկությունների կարողությունների յուրացումը: Մոտ անցյալում, ժողովրդական տնտեսության պլանավորման և տնտեսական բարդ պրոբլեմների լուծման նկատմամբ հանդես բերված չկշռադատված վոլյունտարիստական



մոտեցման հետևանքով որոշ չափով խախտվել է համամասնությունը տնտեսության տարբեր ճյուղերում, ստեղծվել է ոչ ճիշտ հարաբերակցություն արդյունաբերության և գյուղատնտեսության, ինչպես նաև արդյունաբերության «Ա» և «Բ» խմբերի զարգացման միջև:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը, վերլուծելով մեր երկրի ժողովրդական տնտեսության մեջ եղած թերություններն ու տնտեսական աճի դանդաղեցման պատճառները, հանգեց այն հետևությանը, որ արդյունաբերության այժմյան կազմակերպական կառուցվածքը, պլանավորումն ու տնտեսական խթանման մեթոդները չեն համապատասխանում ներկա պահանջներին և խանգարում են արդյունաբերության հետագա արագ առաջընթացը: Պլենումը մասնավորապես նշեց, որ արդյունաբերության ղեկավարման մեջ մինչև այժմ գերակշռել են վարչական մեթոդները՝ ի վնաս տնտեսական մեթոդների: Ձեռնարկություններում տնտհաշվարկը մեծ մասամբ կրել է ձևական բնույթ, վատ է կիրառվել նյութական շահագրգռվածության սկզբունքը: Ձեռնարկությունների ղեկավարների գործողությունները կաշկանդվում էին վերևից կատարվող չափից դուրս մանրակրկիտ կանոնարկումներով, մեծաթիվ պլանների ցուցանիշներով: Դա սահմանափակում էր նրանց ինքնուրույնությունը և նախաձեռնությունը, իջեցնում արտադրության կազմակերպումը բարելավելու պատասխանատվությունը:

Ինչպես հայտնի է, հանրային աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու անհրաժեշտ պայմանն է տնտեսության կառավարման կազմակերպման ձևերի ու մեթոդների կատարելագործումը, նրանց համապատասխանեցումը արտադրողների ուժերի զարգացման մակարդակին:

1957 թվականին մեր երկրում անցում կատարվեց արդյունաբերությունը ժողովրդական տնտեսության խորհուրդների միջոցով կառավարելուն: Այդ ժամանակամիջոցում ժողտնտխորհները օգտակար աշխատանք կատարեցին մանր ձեռնարկությունները միավորելու, արտադրությունը մասնագիտացնելու և կոոպերացնելու ուղղությամբ: Սակայն ժողտնտխորհների միջոցով արդյունաբերության կառավարման սիստեմում շուտով երևան եկան խոշոր թերություններ, որոնք արդյունաբերական արտադրության աճի համեմատությամբ իրենց ավելի ու ավելի էին զգալ տալիս և բացասաբար էին ազդում արդյունաբերության աշխատանքների որակական ցուցանիշների վրա: Տերիտորիալ սկզբունքով արդյունաբերության կառավարումը կասեցնում էր ճյուղային մասնագիտացման և տնտեսական տարբեր շրջաններում գտնվող ձեռնարկությունների արտադրական ռացիոնալ կապերի զարգացումը, գիտությունը անջատում էր արտադրությունից, հանգեցնում էր արդյունաբերության ճյուղերի զարգացման մասնատվածության և բազմապանության, աշխատանքում օպերատիվության անկման:

Արդյունաբերության, մեր երկրի էկոնոմիկայի կարևորագույն ճյուղի աշխատանքներում, նրա ղեկավարման ու պլանավորման մեթոդներում տեղ գտած նման թերությունները չէին կարող չանհանգստացնել ՍՄԿՊ Կենտկոմին ու սովետական կառավարությանը: Այդ թերությունների շուտափույթ վերացման անհրաժեշտությունը թելադրվում էր իր իսկ կյանքի կողմից, բխում մեր երկրում կոմունիստական շինարարության շահերից:

Արդյունաբերության զարգացման մակարդակի ու տեմպերի հետագա բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում տեխնիկական առաջադիմության արագացման և ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման ասպարեզում սովետական էկոնոմիկայի առջև ծառացած կարևոր խնդ-

դիրները հրամայաբար պահանջում են մոբիլիզացնել բոլոր հնարավորությունները՝ արդյունաբերության ռեզերվների լրիվ օգտագործման, ազգային եկամտի աճի համար: Այստեղից էլ, որպես կենտրոնական պրոբլեմ, արդյունաբերության զարգացման ներկա էտապում, առաջին պլան են մղվում հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը, կենդանի և իրայնացված աշխատանքի ծախսումների խնայողությունը, աշխատանքի արտադրողականության անշեղ աճը, կապիտալ ներդրումների և հիմնական արտադրական ֆոնդերի փոխհատուցման նշանակալի ավելացումը, աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության զարգացումը: Այս խնդիրների լուծման կարևորագույն պայմաններն են՝ արդյունաբերության պլանավորման ու կառավարման կատարելագործումը, արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական խթանման ուժեղացումը, տնտեսական գործունեության մեջ նրանց իրավունքների ընդլայնումը: Հենց այդ նպատակներն են հետապնդում ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումները: Պլանավորման կատարելագործման միջոցառումներով նախատեսվում է բարձրացնել երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հեռանկարային պլանների դերը: Ժողովրդական տնտեսության պլանային ղեկավարման հիմնական ձևը պետք է դառնա հնգամյա պլանը՝ ըստ տարիների բաշխելով կարևորագույն առաջադրանքները: Արդյունաբերական ձեռնարկությունները պետք է իրենց արտադրատեխնիկական գործունեությունը կառուցեն հնգամյա պլանների հիման վրա:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը խնդիր դրեց՝ արդյունաբերությունը վարել այնպես, որ միասնական պետական պլանի գլխավոր ուղղությունները ճիշտ մշակելու միջոցով ամրապնդվի ինչպես կենտրոնացված պլանավորումը, այնպես և ապահովվի ձեռնարկությունների տնտեսական նախաձեռնության զարգացումը, տնտեսական խթանման սիստեմը լայնորեն օգտագործվի այնպիսի մեթոդների ու լծակների օգնությամբ, ինչպիսիք են՝ աշխատողների նյութական շահագրգռվածությունը, տնտհաշվարկը, գինը, շահույթը, վարկը և այլն:

Նախատեսվում է բազմաստիճան ծավալուն պլանի փոխարեն արդյունաբերական ձեռնարկություններին տալ միայն պլանային գլխավոր առաջադրանքներ, որոնց հիման վրա ձեռնարկություններն իրենք կմշակեն մյուս ցուցանիշները, այդ թվում մինչև այժմ վերևից պլանավորված այնպիսի ցուցանիշներ, ինչպիսիք են անձնակազմի քանակը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և այլն:

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի կողմից ընդունված միջոցառումներում մեծ նշանակություն է տրվում արդյունաբերական արտադրության տնտեսական խթանման ուժեղացմանը և աշխատողների նյութական խրախուսման սիստեմի բարելավմանը: Յուրաքանչյուր ձեռնարկությունում կստեղծվեն արտադրության զարգացման, նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության հատուկ ֆոնդեր, որոնց գոյացման աղբյուրը պետք է շահույթը դառնա: Սահմանվում է պետության տրամադրած հիմնական արտադրական ֆոնդերի և շրջանառու միջոցների օգտագործման վարձի կարգը:

Նախատեսվում է արդյունաբերության աշխատողների աշխատավարձի ֆոնդում մուծել պարգևների բաժինը: Ձեռնարկություններն իրենք անձամբ կըսահմանեն պարգևատրման պայմանները, չափերը և աշխատանքի վարձա-



տրության ձևերը: Այս դեպքում անհամեմատ մեծանում է պահանջը տնտեսական ու պլանավորող օրգանների նկատմամբ: Անհրաժեշտ է դառնում մեծ ճկունություն և օպերատիվություն արտադրության պլանավորման ու կառավարման գործում, ինչպես նաև փոփոխվող տնտեսական իրադրությունը ժամանակին հաշվի առնելու, ռեսուրսներով մանևրելու, տնտեսական հաշվարկը ամրապնդելու, գիտատեխնիկական նվաճումներն արագորեն արմատավորելու, ձեռնարկության կոնկրետ պայմաններում տնտեսական խնդիրների լուծման լավագույն եղանակներ գտնելու հմտություն:

Արտադրության պլանավորման և նյութական խրախուսման մշակված ամբողջ սիստեմի հիմնական նպատակը՝ հանրային արտադրության զարգացման բարձր տեմպերի ապահովումը և նրա արդյունավետության բարձրացումն է: Դրան հասնելու կարևորագույն պայմանը ձեռնարկությունների կոլեկտիվների մեջ շահագրգռվածության առաջացումն է, որն էական նշանակություն ունի պլանային ավելի բարձր առաջադրանքներ մշակելու, արտադրական ֆոնդերի, աշխատուժի, նյութական ու ֆինանսական ռեսուրսների օգտագործումը բարելավելու, տեխնիկան, աշխատանքի կազմակերպումը կատարելագործելու, արտադրության շահութաբերությունը բարձրացնելու գործում:

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը միահամուռ հավանություն տվեց նաև պարտիայի Կենտկոմի նախագահության առաջադրած այն միջոցառումներին, որոնցով նախատեսվում է արդյունաբերության կառավարումը կազմակերպել ճյուղային սկզբունքով և անհրաժեշտ համարեց կազմել արդյունաբերության ճյուղերի միութենական-ռեսպուբլիկական և ընդհանուր միութենական մինիստրություններ: Պլենումի հանձնարարությամբ ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությունը և ՍՍՌՄ Մինիստրների սովետը առաջարկություններ մշակեցին այդ հարցերի վերաբերյալ և դրանք ներկայացրին ՍՍՌՄ Գերագույն սովետի քննարկման: ՍՍՌՄ Գերագույն սովետը, քննարկելով ներկայացված առաջարկությունները, արդյունաբերության կառավարման օրգանների վերաբերյալ ընդունեց համապատասխան որոշումներ, որոնք հրապարակված են մամուլում:

Արդյունաբերական կառավարման կազմակերպումն ըստ ճյուղային սկըզբունքի լիովին համապատասխանում է մեր արդյունաբերության զարգացման օբյեկտիվ տենդենցին: Դա արտահայտվում է նրանում, որ գնալով ավելի ու ավելի հստակորեն են սահմանազատվում և իրենց յուրահատուկ ուղիներով զարգանում արտադրության առանձին ճյուղերը: Դրանցից յուրաքանչյուրն ունի իր տեխնոլոգիան, տեխնիկայի զարգացման իր առանձնահատկությունները. տարբեր են նրանց խնդիրները գիտատեխնիկական նվաճումների կիրառման և արմատավորման, կադրերի պատրաստման և նրանց աճի ապահովման գործում:

Պլենումը հանձնարարեց ՍՄԿՊ Կենտկոմի նախագահությանը, ՍՍՌՄ Մինիստրների սովետին, միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմներին, պարտիայի երկրկոմներին ու մարզկոմներին՝ կարճ ժամանակում լուծել միութենական-ռեսպուբլիկական և միութենական մինիստրություններ կազմելու, ինչպես նաև տեղերում տնտեսական ղեկավարման օրգաններ ստեղծելու հետ կապված բոլոր կազմակերպական հարցերը:

Սակայն, հասկանալի է, որ ընդհանուր-միութենական և միութենական-ռեսպուբլիկական մինիստրությունների ստեղծումը չի նշանակում վերադարձ արդյունաբերության կառավարման այն կառուցվածքին, որը կար մինչև 1957 թվականը: Այսօր, ինչպես ասվեց պլենումում, արդյունաբերության ղեկավարումը

բարելավելու հարցերը քննարկելիս մենք խոսում ենք ոչ թե մեխանիկորեն հին, մինչժողտնտխորհային սիստեմին վերադառնալու մասին, այլ ճյուղային կառավարման մասին, որ իրագործվելու է ձեռնարկությունների տնտեսական գործունեության պլանավորման ու գնահատման նոր սկզբունքների հիման վրա, ինչպես կառավարման կենտրոնացման հետագա կարգացման, այնպես էլ ձեռնարկությունների օպերատիվ-տնտեսական ինքնուրույնության ընդլայնման հիման վրա:

Արդյունաբերական կառավարման կազմակերպումը բարելավելու, ինչպես նաև նրա ղեկավարման տնտեսական մեթոդներն ուժեղացնելու վերաբերյալ պլենումի ընդունած որոշումներն ապահովում են կառավարման դեմոկրատական սկզբունքների հետագա ընդլայնումը, տնտեսական նախադրյալներ են ստեղծում արտադրության կառավարմանը մասսաների լայն մասնակցության և ձեռնարկությունների տնտեսական աշխատանքի արդյունքների վրա նրանց ներգործության համար: Տնտեսության կառավարման առաջարկվող նոր սիստեմը հնարավորություն կստեղծի ավելի լրիվ չափով օգտագործելու սոցիալիստական կարգի առավելությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների հաջող կենսագործումը ամենից առաջ կախված է պարտիայի, նրա բոլոր կազմակերպությունների, կոմունիստների բազմամիլիոն բանակի կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի մակարդակից ու թափից: Արդյունաբերության ղեկավարման ճյուղային սկզբունքին անցնելը և արտադրության կարգացման մեջ տնտեսական լծակների ուժեղացումը,— ասվում է պլենումի որոշման մեջ,— էլ ավելի են բարձրացնում ռեսպուբլիկաների, երկրամասերի, մարզերի, շրջանների, ձեռնարկությունների, մինիստրությունների և գերատեսչությունների պարտիական կազմակերպությունների դերը էկոնոմիկայի կարգացման բարձր տեմպեր ապահովելու համար մղվող պայքարում, բարձրացնում են նրանց պատասխանատվությունը ժողովրդատնտեսական պլանների և պետական առաջադրանքների կատարման ուղղությամբ, ձեռնարկությունների ու տնտեսական օրգանների աշխատանքի համար:

Պարտիական կոմիտեները, չփոխարինելով տնտեսական ղեկավարներին, պարտավոր են գլխավոր ուշադրությունը կենտրոնացնել կազմակերպական աշխատանքի, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության, պարտիայի և կառավարության դիրեկտիվների կատարման վերահսկողության, ինչպես նաև աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուժեղացման վրա: Պլենումը պարտավորեցրեց պարտիական կազմակերպություններին՝ շարունակ ուսումնասիրել ձեռնարկությունների գործունեությունը և օգնել տնտեսական ղեկավարներին թերությունները բացահայտելու և վերացնելու գործում, աշխատավորների ջանքերն ուղղել արտադրության բոլոր ռեզերվները գործողության մեջ դնելու նպատակներին, վճռական պայքար կազմակերպել խնայողության, դրամական միջոցների ու աշխատանքային ռեսուրսների տնտեսման համար: Պարտիան, առաջ քաշելով հանրային աշխատանքի արտադրողականության տնտեսական խթանների հարցը, միևնույն ժամանակ ամենայն սրությամբ դնում է աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուժեղացման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակման և աշխատանքի բարոյական ազդակների կարգացման խնդիրները:

Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումն ուժեղացնելու վերաբերյալ պարտիայի Կենտրոնական կոմիտեի որոշումը լուրջ և պատասխանատու խնդիր է դնում ոչ միայն տնտեսական ղեկավարների, գերատեսչությունների, այլև մեր բոլոր կազմակերպությունների առջև: Պլենումի որոշման մեջ ասված է, որ «Պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները պարտավոր են ուժեղացնել աշխատավորների կոմունիստական գիտակցությունը բարձրացնելու աշխատանքը, կարգացնել նրանց ստեղծագործական ակտիվությունը, հաստատակամորեն պայքարել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, աշխատանքային և արտադրական կարգապահությունը ամրապնդելու համար, ավելի մեծ հոգատարություն ցուցաբերել բանվորների ու ծառայողների աշխատանքի և կյանքի պայմանների բարելավման նկատմամբ: Անհրաժեշտ է բարելավել աշխատավորների սոցիալիստական մրցության կազմակերպումը, որպեսզի ողջ այն առաջավորը, ինչ ծնունդ է առնում արտադրության մեջ, մասսայական տարածում և արմատավորում ստանա: Հարկավոր է տնտեսավարության նոր սիստեմի հնարավորությունները առավելագույն չափով օգտագործել արտադրության հետագա վերելքի և լավ աշխատող ձեռնարկությունների ու արդյունաբերության աշխատողների նյութական խրախուսման համար»:

Հայաստանի կոմպարտիայի կենտկոմի պլենումը, քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի արդյունքները՝ կապված մեր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների խնդիրների հետ, համապատասխան միջոցառումներ մշակեց պարտիայի Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումները կյանքում անշեղորեն կենսագործելու համար:

Դրան հաջորդեց Հայկական ՍՍՌ Գերագույն սովետի սեսիան, որը ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի և Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի կողմից մշակված առաջարկությունների հիման վրա, համապատասխան որոշումներ ընդունեց ռեսպուբլիկայի արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումը ուժեղացնելու վերաբերյալ: Գերագույն սովետի սեսիայի որոշմամբ ռեսպուբլիկայում կազմակերպվել են արդյունաբերական մի շարք մինիստրություններ:

Մեծ են և բարդ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներում առաջադրված խնդիրները: Գիտակցելով այդ, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները լուրջ աշխատանք են ծավալել ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների պրոպագանդման, պարզաբանման ու կենսագործման ուղղությամբ: Ներկայումս սկզբնական պարտիական կազմակերպությունները ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների լույսի տակ վեր են հանում հիմնարկ-ձեռնարկությունների աշխատանքներում տեղ գտած թերությունները և որոշում յուրաքանչյուր կոմունիստի և աշխատողի տեղն ու դերը պլենումի կողմից առաջադրված խնդիրների հաջող լուծման գործում:

Պլենումի որոշումներն ու նյութերը ամենայն մանրամասնությամբ ուսումնասիրվում են քաղաքական լուսավորության ցանցի բոլոր օղակներում:

Պարտիայի քաղկոմների, շրջկոմների անդամների, պարտիական ակտիվի և մասնագետների ուժերով ամենուրեք՝ գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսային դաշտերում ու սովխոզներում, շինարարական հրապարակներում

անց են կացվում դասախոսություններ, կեկուցումներ ու ագիտացիոն կրույցներ՝ պլենումի որոշումների շուրջ:

Դրա հետ միասին պետք է լուրջ աշխատանք ծավալել արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներին տնտեսական անհրաժեշտ գիտելիքներով վինելու ուղղությամբ: Պարտիական և սովետական օրգանների, նոր կազմվող մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների խնդիրն է՝ մշակել համապատասխան ծրագիր, ընտրել որակյալ դասախոսներ, սեմինարների ղեկավարներ, որպեսզի առաջիկա ամիսների ընթացքում դիրեկտորների, գլխավոր ինժեներների, պլանային-տնտեսական բաժինների պետերի և ղեկավար մյուս կադրերի համար ստեղծվեն դասընթացներ, կազմակերպվի կոնկրետ էկոնոմիկայի և ֆինանսների բնագավառում նրանց գիտելիքների բարձրացման դիֆերենցված ուսուցում:

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի արդյունքները և այդ առթիվ ՀԿՊ Կենտկոմի՝ հոկտեմբերի 14-ին կայացած պլենումի որոշումները քննարկվեցին ռեսպուբլիկայի բոլոր քաղաքների ու շրջանների պարտիական կոմիտեների պլենումներում, պարտիական ակտիվի և սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովներում:

Խորապես և ինքնաքննադատաբար գնահատելով արդյունաբերության, այս կամ այն ձեռնարկության գործերի վիճակը, այդ ժողովներում կոնկրետ միջոցառումներ նշվեցին ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների կատարման համար:

Անհրաժեշտ է պարտիական ու սովետական օրգանների հատուկ ուշադրությունը հրավիրել այն բանի վրա, որ մոտ օրերս լուծվեն արդյունաբերության կառավարման նոր օրգանների ստեղծման հետ կապված կազմակերպական բոլոր հարցերը, իսկ որ գլխավորն է, խստիվ հետևելով պարտիական սկզբունքին՝ այդ օրգանները կոմպլեկտավորել որակյալ ու փորձված կադրերով: Պետք է ամեն ինչ անել, որպեսզի կառավարման նոր սիստեմին անցնելիս չխախտվի արդյունաբերական յուրաքանչյուր ձեռնարկության ռիթմիկ աշխատանքը:

Ոգեշնչված ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումներով և ի պատասխան պարտիայի ու նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի հոգատարության, ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատողները լայն մրցություն են ծավալում, լրացուցիչ պարտավորություններ ստանձնում յոթնամյա պլանի եկրափակիչ տարին հաջողությամբ ավարտելու և ՍՄԿՊ XXIII, Հայաստանի կոմպարտիայի XXIV համագումարները աշխատանքային նորանոր հաջողություններով դիմավորելու համար:

Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները պետք է խելացիորեն գլխավորեն աշխատավորական մասսաների խանդավառությունը և այն ուղղեն ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումների հաջող կենսագործմանը:



# ՄԻՇՏ ԴԵՊԻ ԱՌԱՋ

Շուտով կլրանա կես դարն այն պատմական օրվա, երբ Ռուսաստանի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ խորտակեցին շահագործողների տիրապետությունը և ստեղծեցին սովետական կարգեր: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան իր հզոր թափով ու ներգործության ծավալով գերազանցեց մինչ այդ տեղի ունեցած բոլոր սոցիալական հեղաբեկումները, կոմունիզմի հաղթանակի դարաշրջանի սկիզբը դրեց: Լենինի կոփած հզոր պարտիան շուտով կես դար է, ինչ սովետական ժողովրդին վարում է միանգամայն նոր, սոցիալիստական ուղիով: Հասարակական կյանքի նորագույն ֆորմացիան բևակոխած սոցիալիստական ազգերի մեծագույն հաջողություններից ոգեշնչված, այսօր աշխարհի բազմաթիվ ժողովուրդներ իրենց իսկ ծոցում հասունացնում են հոկտեմբերի կենսաբեր սերմերը: Գնալով հզորանում է խաղաղության և սոցիալական արդարության ձգտող միլիոնավոր մարդկանց բանակը կապիտալի երկրներում: Լենինի պարտիայի վառած ազատագրության անմար փարոսն այժմ լուսավորում է բոլոր տառապյալների ազատաբաղձ մաքառումների ուղին: Հոկտեմբերյան կենարար հրդեհի բոցերում վերածնված նորոգ ժողովուրդներն իրենց վիթխարի և աշխարհաշեն գործերով արագացնում են ամբողջ մարդկության պրոգրեսը: Հասարակական զարգացման բոլոր մեծ ու փոքր շրջադարձերը ժամանակակից աշխարհում իրենց վրա են կրում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի անջնջելի կնիքը:

Մեծ հոկտեմբերի շնորհիվ աշխարհի մեկ վեցերորդ մասում ստեղծվեցին ոչ միայն նոր կարգեր, այլև վերափոխվեց տնտեսական այն բազան, որի վրա հենվում էր շահագործման ու անարդարության հասարակարգը: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի առաջին իսկ օրերին Վ. Ի. Լենինը ընդգծեց՝ որքան ավելի հետամնաց է այն երկիրը, որին վիճակվել է պատմության զիգզագների պայմաններում սոցիալիստական ռևոլյուցիա սկսել, այնքան ավելի դժվար է նրա համար հին, կապիտալիստական հարաբերություններից սոցիալիստական հարաբերություններին անցնելը: Ռուսաստանն իր զարգացմամբ հետամնաց երկրներից մեկն էր: Ահա թե ինչու բանվոր դասակարգը իշխանությունը գրավելուց հետո իր առաջնակարգ խնդիրը համարեց՝ բոլոր ջանքերը գործադրել՝ արագ թափով առաջ մղելու ժողովրդական տնտեսությունը:

Ամերիկյան ժուռնալիստ և հրապարակախոս Ա. Վիլյամսը, որը հոկտեմբերյան փոթորկալից օրերին գտնվում էր Ռուսաստանում, գրում է. «1917 թվականին հասարակ ժողովուրդը, արդեն ո՛չ թե պասսիվ, ինչպես առաջ, դուրս եկավ պատմության առաջաբեմ: Տապալելով իր նախկին կառավարող-

ներին ու նրանց կամակատարներին, Եվրոպայի ու Ասիայի ընդարձակ տարածություններում՝ Բալթիկ ծովից մինչև Խաղաղ օվկիանոս բնակվող ժողովուրդները վերջապես բացահայտեցին երկար ժամանակ նիրհած իրենց բոլոր ուժերն ու ընդունակությունները: Պատմության կողմից նախանշված մեծ միսիան իրականացնելու ժողովրդի ընդունակության մեջ էր հենց Լենինը տեսնում ապագա Ռուսաստանի և ռևոլյուցիայի գրավականը: Նրա հավատը դեպի ժողովուրդը խարսխվում էր ժողովրդի կյանքը խորապես իմանալու վրա»:

Դժվարին և անծանոթ էր սովետական ժողովրդի ողեգրած ճանապարհը: Բայց կոմունիստական պարտիան, առաջնորդվելով մարքս-լենինյան ուսմունքով, հենվելով աշխատավորական լայն զանգվածների ստեղծագործական ակտիվության վրա, ապահովեց սոցիալիստական շինարարության խիստ բարդ հարցերի ճիշտ լուծումը: Պարտիայի իմաստուն քաղաքականության կենսագործման շնորհիվ մեր հայրենիքը վիթխարի թռիչք կատարեց դեպի առաջ և կարճ ժամանակամիջոցում հետամնաց, ագրարային երկրից դարձավ ինդուստրիալ կոլտնտեսային հզոր տերություն՝ իր ծաղկուն կուլտուրայով ու գիտությամբ:

Մեր ժամանակաշրջանի բնորոշ և կարևորագույն հատկանիշներից մեկը՝ այդ Սովետական Միությունում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցումն է: Երջանիկ հասարակարգի այդ վեհ շենքը կերտվում է սովետական ժողովրդի հայրենանվեր գործերով: Դրա փայլուն ապացույցը յոթնամյա պլանի հաջող կատարումն է: Բավական է ասել, որ ՍՍՌՄ-ում յոթ տարում կառուցվել և գործարկվել են 5500 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ: Այս տարի երկրում ձուլվելու է 91 միլիոն տոննա պողպատ, որն զգալիորեն գերազանցում է պողպատի այն քանակությանը, որն արտադրում են Անգլիան, Ֆրանսիան և ԳՖՌ-ն միասին վերցրած. նավթի արդյունահանումը կհասնի 243 միլիոն տոննայի, գազինը՝ 130 միլիարդ խորանարդ մետրի (1958 թվականի 30 միլիարդի փոխարեն): Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1958 թվականին 235 միլիարդ կիլովատ ժամից այս տարվա վերջին կհասնի 509 միլիարդ կիլովատ ժամի:

Մեծ են մեր երկրի նվաճումները գիտության ու կուլտուրայի առաջընթացի բնագավառում: Ներկայումս Սովետական Միությունը գտնվում է ատոմային ֆիզիկայի և ատոմային տեխնիկայի համաշխարհային զարգացման ավանգարդում: Հանրահայտ են մեր հայրենիքի հիանալի հաջողությունները տիեզերքի հետազոտության ասպարեզում: Երկրի տնտեսական բուռն առաջընթացի, գիտության ու կուլտուրայի աննախընթաց վերելքի շնորհիվ ավելի պաշտպանունակ է դարձել մեր հայրենիքը, որի զինված ուժերը հագեցած են ժամանակակից ռազմական տեխնիկայով ու ահեղ զենքերով:

Կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը, հենվելով ժողովրդական տնտեսության զարգացման գործում ձեռք բերած հաջողությունների վրա, մեծ հոգատարություն են ցուցաբերում աշխատավորների բարեկեցությունն ու կուլտուրան բարձրացնելու ուղղությամբ: ՍՄԿԿ Կենտկոմի այս տարվա սեպտեմբերյան պլենումում ընդգծվեց, որ «Յոթնամյա պլանի կատարման ընթացքում կենսագործվել են ժողովրդի նյութական բարեկեցության մակարդակի բարձրացման մի շարք խոշոր միջոցառումներ: Կրճատված է աշխատանքային օրվա տևողությունը, աճել է միջին աշխատավարձը, վերացվել կամ պակասեցվել են բանվոր ծառայողների զգալի մասի



աշխատավարձից գանձվող հարկերը, մտցված է կոլտնտեսականների կենսաթոշակային ապահովություն»: Յոթ տարում ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը կաճի մոտավորապես 60 տոկոսով:

Կոմունիստական պարտիան, վարելով լենինյան ազգային քաղաքականություն, հաղթահարեց անցյալում ճնշված ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը և մեր երկրի բոլոր ժողովուրդներին համախմբեց եղբայրական մեծ ու հզոր ընտանիքում: Սոցիալիստական ռևոլյուցիան փրկեց նաև հայ ժողովրդին, որը սովետական կարգերի պայմաններում դարձավ իր բախտի տերը:

Ընդամենը քառասունհինգ տարի է, ինչ ազատագրված սովետական Հայաստանի վրա ծածանվում է հոկտեմբերի ալ դրոշը, որի ներքո Հայաստանի աշխատավորները, համագործակցելով մյուս եղբայրական ռեսպուբլիկաների ժողովուրդների հետ, կառուցում են կոմունիզմի հոյակապ շենքը. պատմական այդ կարճ ժամանակաշրջանում հրաշքներ են գործվել հայկական հողում, կառուցվել են բազում նոր գյուղեր, ավաններ ու քաղաքներ, որոնք անցյալում չեն եղել աշխարհագրական քարտեզի վրա. կառուցվել են հարյուրավոր գործարաններ ու ֆաբրիկաներ, որոնք հագեցած են նորագույն սարքավորումներով, մեքենաներով ու մեխանիզմներով և արտադրում են մեր դարաշրջանի ամենաբարդ ու ճշգրիտ գործիքներ, ամենահզոր ու բարձր արտադրողականություն ունեցող հաստոցներ:

Միայն յոթնամյակի անցած վեց տարում սովետական Հայաստանի ժողովրդական տնտեսության մեջ կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալը կազմել է 1 միլիարդ 237 միլիոն ռուբլի, այսինքն՝ զգալիորեն ավելի, քան նախատեսված էր յոթնամյա պլանի կոնտրոլ թվերով: Այդ ժամանակաշրջանում ռեսպուբլիկայում գործարկվել են 518 միլիոն ռուբլու հիմնական ֆոնդերը, 220 նոր ձեռնարկություններ և արտադրատեղամասեր, մոտ երեք միլիոն քառակուսի մետր բնակելի տարածություն: Անհամեմատ արագ թափով է անում մետաղամշակման, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության և էլեկտրաէներգիայի արտադրանքը: Ժողովրդական տնտեսության զարգացման առաջադրանքների անթերի կատարման գործում արտադրական ստեղծագործական մեծ նախաձեռնություն են հանդես բերում ռեսպուբլիկայի գիտնականները, ինժեներները, տեխնիկներն ու բանվորները: Այժմ սովետական Հայաստանի արդյունաբերական ձեռնարկություններում արտադրված մեխանիզմները, մեքենաները, սարքավորումներն ու հաստոցները մեծ պահանջարկ ունեն ոչ միայն երկրի ներսում, այլև ՍՍՌՄ սահմաններից դուրս:

Ջրանցքների արծաթափայլ գոտիներով են պատված ռեսպուբլիկայի հանրային դաշտերը, ծաղկել են հազարավոր հեկտարներով անապատներ:

Սովետական մարդկանց օրինակով ոգեշնչված, Եվրոպայի, Ասիայի ու Լատինական Ամերիկայի մի շարք երկրների աշխատավորներ, իրենց կոմունիստական պարտիաների ղեկավարությամբ, երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին և նրանից հետո խորտակեցին կապիտալիստական կարգերը, ձեռնամուխ եղան սոցիալիզմի կառուցմանը: Ըստ էության այդ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շարունակությունն է, որի շնորհիվ սոցիալիզմը մեկ երկրի շրջանակներից դուրս գալով վերածվեց համաշխարհային հզոր սիստեմի:

Սոցիալիզմի առաջացումը նպաստեց գաղութարարների լծի տակ ճնշված ժողովուրդների ազատագրական պայքարին: Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի գաղութային ու կիսագաղութային երկրների հարյուր միլիոնավոր մարդիկ ոտքի ելան հանուն ազատության ու անկախության: Գաղութատիրության դեմ նրանց հերոսական պայքարը պսակվում է փայլուն հաղթանակներով: Արդեն ազատություն և ինքնուրույնություն են ձեռք բերել ավելի քան հիսուն երկրներ, որոնց ժողովուրդները բռնել են ինքնուրույն զարգացման ուղին:

Այժմ սոցիալիզմի լագերի երկրները փոխադարձ համագործակցությամբ և թափով առաջ են մղում մեծ հոկտեմբերի սկսած գործը: Ժողովրդական տնտեսության վերելքի, կուլտուրայի ու գիտության զարգացման, աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացման գործում սոցիալիստական լագերի երկրների յուրաքանչյուր տարվա ձեռք բերած հաջողությունն այն բանի վկայությունն է, որ հասարակական-տնտեսական նոր կարգը անժխտելի կերպով դրսևորում է իր գերազանցությունը կապիտալիստականի հանդեպ: Սոցիալիզմի բոլոր երկրների հաջողություններն ամրապնդում են կոմունիզմի ուժերը, կապիտալիստական երկրների աշխատավորներին պայքարի ոգեկոչում հին կարգերի դեմ: Որքան առաջ է ընթանում սոցիալիստական լագերը, այնքան կրկնապատկվում են նրա ուժերը և հին աշխարհից նա նվաճում է դիրք դիրքի հետևից: Կոմունիստական շինարարության հաջողությունները ՍՍՌՄ-ում, սոցիալիզմի կառուցման նվաճումները ժողովրդական դեմոկրատիայի երկրներում, կատաղի զայրույթ են առաջացնում իմպերիալիզմի լագերում: Ահա թե ինչու այսօր «կոմունիստական վտանգի դեմ» պայքարելու մոլուցքով լցված միլիտարիստները դիմում են բռնության և ագրեսիայի, ուրիշ երկրների ու ժողովուրդների ներքին գործերին զինված միջամտության: Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի դեմ կատարած ամերիկյան իմպերիալիզմի ոտնձգությունների դեմն առնելու համար, Սովետական Միությունը սրբությամբ է կատարում իր ինտերնացիոնալիստական պարտքը Վիետնամի ժողովրդի հանդեպ, ցույց տալով նրան պատշաճ օգնություն: Հավատարիմ մնալով Հոկտեմբերի վեհ սկզբունքներին՝ կոմունիստական պարտիան և սովետական կառավարությունը վարել և այսուհետև էլ կվարեն խաղաղասիրական քաղաքականություն, ամեն ինչ կանեն կանխելու ջերմամիջուկային պատերազմը:

Ընդամենը երկու տարի է մեզ բաժանում Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիայի հիսունամյակից: Մեր երկրի աշխատավորները նախապատրաստվում են ըստ արժանվույն դիմավորելու այդ մեծ տոնը, որը համայն աշխարհի առաջադեմ մարդկությունը համարում է իր տոնը: Սովետական ժողովուրդը, հանրագումարի բերելով քառասունութ տարիներին աշխատանքով ու պայքարով ձեռք բերած նվաճումները, օրինական հպարտությամբ է նայում առաջ և ստեղծագործական ուժերով լի, հաջողությամբ իրագործում կոմունիստական հասարակարգի կառուցման հոյակապ ծրագիրը:

Նոր հասարակարգի կառուցման ասպարեզում մեր հաջողությունները սովետական մարդկանց գործադրած ջանքերի, կոմունիստական պարտիայի կազմակերպչական ու դաստիարակչական բեղմնավոր գործունեության արդյունքն են: Ինչպես մեծ հոկտեմբերի փոթորկալի օրերին կոմունիստական պարտիան հանդիսանում էր ռևոլյուցիոն դրոշը բարձրացրած մասսաների



ղեկավարն ու առաջնորդը, այնպես էլ մեր օրերում՝ հավատարիմ մնալով մարքսիզմ-լենինիզմին՝ նա հանդիսանում է սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժը: Մեր պարտիան գոյություն ունի ժողովրդի համար,— ասված է ՍՄԿՊ ծրագրում,— նրան ծառայելու մեջ է տեսնում իր գործունեության իմաստը: Կոմունիստական պարտիայի իդեաները դարձել են ամբողջ ժողովրդի իդեաները, պարտիայի ծրագիրը, որը կոմունիստական հասարակարգ կառուցելու պլան է, դարձել է սովետական մարդկանց պրակտիկ գործունեության ծրագիրը: Կոմունիստական պարտիայի ուժը ժողովրդի հետ անխզելի կապի մեջ է, ժողովրդի ուժը՝ պարտիայի շուրջը նրա համախմբվածության մեջ: ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում մի անգամ ևս դրսևորվեց այդ ճշմարտությունը: Քննության առնելով «Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումը ուժեղացնելու» հարցը, պլենումը նշեց կոնկրետ միջոցառումներ արդյունաբերության ղեկավարումն ու պլանավորումը նոր մեթոդներով վարելու համար:

Սովետական մարդիկ բուռն խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշումը՝ որը մեծ նշանակություն ունի երկրի տնտեսական առաջընթացն ապահովելու գործում: Սովետական Միության կոմունիստական պարտիան, հավատարիմ մնալով մարքս-լենինյան սկզբունքներին, բարձր պահած մեծ հոկտեմբերի դրոշը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը, մեր երկիրը տանում է դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները:

Տոնելով Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 48-րդ և Հայաստանում սովետական իշխանության հաստատման 45-րդ տարեդարձը, ռեսպուբլիկայի աշխատավորները նոր ոգևորությամբ, նոր եռանդով պայքարում են իրենց առջև դրված խնդիրները լուծելու և կոմունիստական շինարարության գործում նշանակալից հաջողությունների հասնելու համար: Այսօր նրանց նշանաբանն է՝ միշտ դեպի առաջ, դեպի նորանոր հաղթանակներ:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Մ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ

## ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

### 1. ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԸ

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ աշխարհը հասարակության ռևոլյուցիոն մեծ վերափոխման, սոցիալական հարաբերությունների բուռն հեղաբեկման պրոցես է ապրում։ Մեր դարաշրջանի հիմնական բովանդակությունն՝ անցումն է կապիտալիզմից սոցիալիզմին, որն սկսվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայով։ Սովետական ժողովրդի հաղթանակը սոցիալիզմի կառուցման ասպարեզում, նրա համաշխարհային պատմական սխրագործությունը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ալեկոծեցին և ոգեշնչեցին բոլոր երկրների ժողովրդական մասսաներին, նպաստավոր պայմաններ ստեղծեցին պրոլետարական, ազգային-ազատագրական շարժման նոր վերելքի, դեմոկրատիայի, խաղաղության և սոցիալիզմի համար։

1944—1949 թվականներն ընդգրկեցին համաշխարհային ռևոլյուցիոն շարժման նոր, երկրորդ էտապը։ Առաջին էտապը, ինչպես հայտնի է, տեղի ունեցավ 1917—1923 թվականներին։ Միջազգային ռեակցիային այն ժամանակ հաջողվեց ռևոլյուցիայի հրդեհը մարել Արևմուտքի մի շարք երկրներում, ժամանակավորապես հետաձգել գաղութային սիստեմի խորտակումը։ Բայց իմպերիալիստական ռեակցիան անզոր էր ոչնչացնելու Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ցանած սերմերը, կասեցնելու նրա մեծ գաղափարների տարածումը։ Աշխարհի բոլոր բանակները, ասել է ֆրանսիական հայտնի գրող Վ. Հյուգոն, չեն կարող ոչնչացնել այն առաջավոր գաղափարները, որոնք արդեն հասունացել են։ Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում լայնորեն ծավալվեցին և հաղթանակեցին ժողովրդա-դեմոկրատական ռևոլյուցիաները, որոնք այնուհետև վերաճեցին սոցիալիստական ռևոլյուցիաների։

«Ես խորապես համոզված եմ,— գրել է Լենինը,— որ ռևոլյուցիոն Ռուսաստանի շուրջը հետզհետե ավելի ու ավելի կխմբավորվեն ազատ ազգերի առանձին ֆեդերացիաները»։ Լենինի խոսքերի փայլուն հաստատումը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առկայությունն է։ ՍՄԿՊ XX համագումարը նշեց, որ սոցիալիզմը դուրս է եկել մի երկրի շրջանակներից, վեր է ածվել համաշխարհային սիստեմի, որի ստեղծումը հասարակության առաջընթաց զարգացման հիմնական արդյունքն է մեր դարաշրջանում, բանվոր դասակարգի միջազգային ռևոլյուցիոն շարժման գլխավոր նվաճումը։



Աշխարհը բաժանվեց հասարակական երկու հակադիր սիստեմների, որոնց պայքարի և մրցության ընթացքով, արդյունքներով է որոշվում համաշխարհային զարգացումն արդի դարաշրջանում։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը ժողովուրդների պատմական նոր ընդհանրություն է, նրանց բազմակողմանի մերձեցման ու կամավոր միավորման ուղին։ Ժողովուրդների ու պետությունների միջազգային, տնտեսական, քաղաքական և կուլտուրական հարաբերությունների միանգամայն նոր տիպ է այն։ Այդ հարաբերությունների բնորոշ գծերն են՝ բազմակողմանի եղբայրական համագործակցությունը, անշահախնդիր փոխօգնությունը և պրոլետարական ինտերնացիոնալիզմը։ Այդպիսի հարաբերությունները միանգամից, հեշտությամբ չեն ստեղծվում։

Ինչպես հայտնի է, Վ. Ի. Լենինը սոցիալիստական երկրների փոխհարաբերությունների զարգացումը հակասությունից զուրկ պրոցես չէր համարում։ Նա սովորեցնում էր, որ սոցիալիստական ժողովուրդների կամավոր միության, դաշինքի ստեղծումը չի կարելի իրագործել միանգամից. դրանց պետք է հասնել մեծագույն համբերատարությամբ և զգուշությամբ։ Սոցիալիստական երկրների մերձեցումը, նրանց համագործակցության կազմակերպումն ու զարգացումը, նրանց միասնության ամրապնդումը օրինաչափ, թեև բարդ պրոցես է, որը բոլոր դժվարությունների ու խոչընդոտների միջոցով ուղի է հարթում իր համար։

Սոցիալիստական սիստեմը հաղթահարում է որոշակի դժվարություններ, որոնք պայմանավորված են գլխավորապես նրանով, որ այդ սիստեմի երկրների մեծամասնությունն անցյալում ունեցել է զարգացման ցածր մակարդակ, ինչպես նաև նրանով, որ իմպերիալիստական ռեակցիան բոլոր ուժերով ու եղանակներով ձգտում է խանգարել սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցմանը։ Այդ ռեակցիայի կողմից օգտագործվող վտանգավոր զենքը նացիոնալիզմն ու հակակոմունիզմն են։ Պետք է նկատի ունենալ, որ սոցիալիզմի ուղին բռնած երկրների միջև անցյալում եղել են վեճեր, ընդհարումներ, վերափոխվել են սահմանները, մնում են ազգայնական բնույթի նախապաշարումներ։

Սակայն կոմունիստական պարտիաները, հենվելով սոցիալիզմի երկրների սոցիալ-տնտեսական և քաղաքական ընդհանրության, գլխավոր նպատակների միասնության վրա, հաղթահարելով տարաձայնություններն ու դժվարությունները, զարգացնելով բազմակողմանի համագործակցությունն ու եղբայրական փոխօգնությունը, հաջողությամբ կառուցում են սոցիալիզմ և կոմունիզմ։ Ոչ մի ժամանակավոր դժվարություն, տարաձայնություն կամ առանձին սխալ չի կարող նսեմացնել կոմունիստական պարտիաների՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի մեծագույն հաղթանակները։ Սոցիալիզմի արագ աճը արդիականության անխախտ օրինաչափությունն է։

Կապիտալիզմը ֆեոդալիզմի հանդեպ իր առավելություններն ապացուցեց և որպես համաշխարհային սիստեմ ձևավորվեց ավելի քան 300 տարվա ընթացքում, հաղթանակեց մեր մոլորակի մեկ երրորդում՝ հիմնականում Եվրոպական և Ամերիկյան մայր ցամաքներում։ Մոտ 1900 միլիոն բնակչությամբ Ասիան և Աֆրիկան մնացին հիմնականում ֆեոդալական և կիսաֆեոդալական երկրներ։ Սոցիալիզմը կապիտալիզմի հանդեպ իր առավելությունն ապացուցեց մեկ երրորդ դարի ընթացքում, այսինքն՝ 10 անգամ ավելի արագ։ Մինչև

*երկրորդ համաշխարհային պատերազմը կային միայն 2 սոցիալիստական երկրներ՝ ՍՍՌՄ-ը և ՄԺՌ-ն, որոնց բաժին էր ընկնում երկրագնդի բնակչության 9 և տերիտորիայի մոտ 16 տոկոսը, Կուբայում ռևոլյուցիայի հաղթանակից հետո, սոցիալիստական համաշխարհային սիստեմն ընդգրկել է Եվրոպան, Ասիան և Ամերիկան։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմում այժմ կան 14 երկրներ։ Հինգ մայր ցամաքներից չորսն ապրում են ռևոլյուցիոն փորձությունների ժամանակաշրջան։ Սոցիալական այսպիսի մեծ ցնցումներ մեր մոլորակը երբեք չի տեսել։*

*Սոցիալիզմի հզորությունն ու անպարտելիությունը ապացուցվեցին նոր և հին աշխարհի վիթխարի գոտեմարտերում։ Դեռևս մինչև սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումը ձախողվեցին իմպերիալիստների այն բոլոր փորձերը, որոնց նպատակն էր տապալել առաջին սոցիալիստական պետությունը, ձախողվեցին իմպերիալիստական ռեակցիայի և ֆաշիզմի՝ պատերազմի միջոցով պատմական զարգացման ընթացքը կասեցնելու փորձերը։ Իմպերիալիզմն անզոր գտնվեց փակելու սոցիալիստական ռևոլյուցիաների ուղին Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում։ Երբ սոցիալիզմը դարձավ համաշխարհային սիստեմ, էլ ավելի փոխվեց ուժերի հարաբերակցությունը հօգուտ խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի։*

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծման շնորհիվ սովետական երկիրը դուրս եկավ միջազգային մեկուսացումից և կապիտալիստական երկրների շրջապատումից, վերացավ կապիտալիզմի վերականգնման վտանգը, սոցիալիզմը մեր երկրում հաղթանակեց ոչ միայն լիովին, այլև վերջնականապես։ Ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սոցիալիզմի կառուցման բնագավառի նվաճումները ևս դարձան վերջնական։ Պատմությունը նոր, խոշոր առաջընթաց քայլ կատարեց՝ ՍՍՌՄ-ում սկսվեց կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Ավելի մեծացավ սոցիալիզմի ձգողական ուժը։ Համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսը ծավալվեց նոր ուժով։*

*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծման և նրա մեծ հաջողությունների, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի օգտին կատարված լուրջ փոփոխությունների շնորհիվ հնարավոր դարձավ միջազգային զարգացման արմատական պրոբլեմների վերաբերյալ առաջ քաշել մի շարք նոր դրույթներ, որոնք հարստացրին գիտական կոմունիզմի տեսությունը։ Այդ դրույթները վերաբերում են երկու սիստեմների խաղաղ գոյակցությանը և խաղաղ ձևով սոցիալիստական ռևոլյուցիայի իրականացմանը, ինչպես և արդի պայմաններում պատերազմը կանխելու հնարավորությունների մեծացմանը և այլն։ Այժմ արդեն չի կարելի արդիականության արմատական պրոբլեմներին մոտենալ սոսկ կապիտալիզմի օրենքների գործողության տեսանկյունից։ Առանց սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հաշվի առնելու, այժմ չի կարելի ճիշտ գնահատել արդի պատմության ոչ մի քիչ թե շատ էական իրադարձություն։*

*Կոմունիստական և բանվորական պարտիաները, ելնելով միջազգային իրադրության մեջ կատարված արմատական փոփոխություններից և համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի համար ստեղծված նոր պայմաններից, տվեցին արդի դարաշրջանի հստակ բնութագիրը, մշակեցին միջազգային կոմունիստական շարժման գլխավոր գիծը։*



## 2. ԶԱՐԳԱՑՄԱՆ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ

*Վ. Ի. Լենինը նշում էր, որ պատմական դարաշրջանները չի կարելի սահմանել կամայականորեն, ելնելով սուբյեկտիվ ցանկություններից և գնահատականներից, որ դարաշրջանի ճշգրիտ, գիտական սահմանման համար անպայման պետք է հաշվի առնել պատմական պրոցեսի օբյեկտիվ բովանդակությունը տվյալ կոնկրետ մոմենտում, կոնկրետ իրադրության մեջ, որպեսզի ճիշտ որոշենք, թե ո՞ր դասակարգի շարժումն է հանդիսանում հասարակական պրոգրեսի գլխավոր զսպանակը, ո՞ր դասակարգն է կանգնած դարաշրջանի կենտրոնում և ապա որոշել նրա գլխավոր բովանդակությունը, ուղղությունը և առանձնահատկությունները։ Համաձայն Վ. Ի. Լենինի այդ սկզբունքային դրույթներին՝ կոմունիստական պարտիաների ներկայացուցիչների 1957 և 1960 թվականների խորհրդակցությունները բացահայտեցին արդի դարաշրջանի բնույթը, նրա գլխավոր առանձնահատկություններն ու տարբերիչ գիծը։*

*Արդի դարաշրջանի կենտրոնում,— նշեց 1960 թվականի խորհրդակցությունը,— կանգնած է միջազգային բանվոր դասակարգը և նրա գլխավոր ծնունդը հանդիսացող սոցիալիզմի համաշխարհային սիստեմը։ Ինչո՞ւ հենց նրանք։ Որովհետև նրանք են խաղաղության, դեմոկրատիայի, ազգային ազատագրության, սոցիալիզմի և մարդկության առաջադիմության համար մղվող պայքարի վճռական ուժը։ Միայն նրանք են ի վիճակի լուծելու գլխավոր հակասությունը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև հօգուտ սոցիալիզմի, խտացված ձևով արտահայտելու ամբողջ պրոգրեսիվ մարդկության արմատական շահերը, ղեկավարելու համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսը և նրան տալու կազմակերպված, հետևողական բնույթ։*

*Մեր դարաշրջանում վիթխարի չափերով ընդլայնվում են համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի շարժիչ ուժերը։ Իմպերիալիստական ճնշման ու շահագործման դեմ այժմ միավորվում են հզոր ուժեր՝ սոցիալիզմ և կոմունիզմ կառուցող ժողովուրդները, բանվոր դասակարգի ռևոլյուցիոն շարժումը կապիտալիստական երկրներում և ազգային-ազատագրական շարժումը։ Արդիականության այդ երեք ռևոլյուցիոն մեծ ուժերի միջև գոյություն ունի ամենասերտ կապ, փոխազդեցություն։ Կարևոր նշանակություն ունեն նաև համադեմոկրատական զանազան շարժումները։ Բոլոր այդ շարժումները համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի տարբեր ձևերն ու բաղկացուցիչ մասերն են։ Բոլորն էլ ուղղված են իմպերիալիզմի դեմ, խարխլում և քայքայում են նրա հիմքերը։ Սակայն համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսում վճռական, առաջնակարգ դերը պատկանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմին։ Ինչո՞ւմ և ինչպե՞ս է արտահայտվում այդ։*

*Համաշխարհային պատերազմը կանխելու անդուլ կամքի ու ջանքերի գործադրման փաստը հենց ցույց է տալիս, որ սոցիալիզմը արդիականության վճռական ռևոլյուցիոն ուժն է. իմպերիալիստներին մինչև այժմ չի հաջողվել սանձազերծել համաշխարհային նոր պատերազմ, ընդ որում կապիտալիստական աշխարհը առանց այդպիսի պատերազմի մտավ իր ընդհանուր ճգնաժամի նոր, երրորդ էտապը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը մարդկության հուսալի պատվարն է ընդդեմ զավթողական պատերազմների, խաղաղության ու ժողովուրդների անվտանգության համար մղած իր պայքարում։ Սոցիալիզմը մարդկությանն առաջարկել է պետությունների հարաբերություն-*

ների միակ բանական սկզբունքը՝ խաղաղ գոյակցության սկզբունքը, որը մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունն է և համապատասխանում է մարդկության բացարձակ մեծամասնության շահերին։ Խաղաղության պաշտպանության անհրաժեշտությունը թելադրվում է սոցիալիստական երկրների, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման շահերով։

Մարքսիստները վճռականապես հանդես են գալիս ամեն տեսակ զավթողական, ագրեսիվ պատերազմների դեմ։ Դատապարտելի են համաշխարհային պատերազմները հատկապես արդի ժամանակաշրջանում, երբ գոյություն ունի ջերմամիջուկային զենքը, երբ կան մասսայական բնաջնջման բազմաթիվ միջոցներ։ Այդպիսի պայմաններում համաշխարհային պատերազմը մարդկությանը կբերի անթիվ աղետներ և, ինչպես կանխատեսել է Վ. Ի. Լենինը, «... դա կարող է հասցնել և անխուսափելիորեն կհասցնի մարդկային հասարակության գոյության բուն պայմանների խախտմանը։ Որովհետև պատմության մեջ առաջին անգամ տեխնիկայի ամենահզոր նվաճումները գործադրվում են այդպիսի մասշտաբով, այդպես ավերիչ կերպով և այդպիսի եռանդով միլիոնավոր մարդկային կյանքերի մասսայական բնաջնջման համար» (Երկեր, հ. 27, էջ 524—525)։

Սկզբունքային ու գործնական հսկայական նշանակություն ունի համաշխարհային կոմունիստական շարժման այն հետևությունը, որ այժմ հնարավոր է կանխել համաշխարհային պատերազմը։ Այս դրույթը բխում է ուժերի ռեալ հարաբերությունից, իմպերիալիզմի ուժերի նկատմամբ սոցիալիզմի ուժերի, պատերազմի ուժերի նկատմամբ խաղաղության ուժերի հարաճուն գերակըշռությունից։ Արդի դարաշրջանում անչափ աճել են ժողովրդական մասսաների՝ միջազգային հարցերի լուծմանը ակտիվ միջամտելու հնարավորությունները։

Պատմական փորձը լիովին հաստատեց, որ, իրոք, սոցիալիստական հզոր լագերի և խաղաղության գործը պաշտպանող բոլոր ուժերի միացյալ ջանքերով կարելի է կանխել համաշխարհային պատերազմը։ Միջազգային քաղաքականության բնագավառում սոցիալիզմը բազմիցս վիժեցրել է իմպերիալիզմի ագրեսիվ գործողություններն ու ոտնձգությունները, կանխել նոր համաշխարհային պատերազմի սանձազերծումը։

Բանը նրանումն է, որ այժմ պատմության մեջ առաջին անգամ պատերազմի դեմ պայքար են մղում մեծ ու կազմակերպված ուժեր և, ամենից առաջ՝ սոցիալիզմի ուժերը։ Այդ ուժերի պայքարը մեծագույն, բախտորոշ նշանակություն ունի ամբողջ մարդկային հասարակության համար, որովհետև խաղաղությունը մարդկության պրոգրեսի գլխավոր պայմանն է։ Չարաչար սխալվում են ժամանակակից այն դոգմատիկները, որոնք սոցիալիստական ռևոլյուցիայի բախտը կապում են համաշխարհային պատերազմի հետ։ Պատերազմն, առհասարակ, չի եղել, իսկ ժամանակակից ավերիչ համաշխարհային ջերմամիջուկային պատերազմը առավել ևս չի կարող լինել սոցիալիստական ռևոլյուցիայի ոչ աղբյուրը, ոչ էլ անհրաժեշտ պայմանը։

Խաղաղ գոյակցությունը և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյությունը նպաստավոր պայմաններ են ստեղծում կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պայքարի համար: Այնտեղ կազմավորվում, բազմապատկվում և կոփվում են այն սոցիալական ուժերը, որոնք կոչված են ապահովելու սոցիալիզմի հաղթանակը։ Բանվորական շարժումը



կուտակել է պայքարի հսկայական փորձ, գաղափարապես ավելի է հասունացել, ունի կազմակերպված մեծ ուժ և մարտական հարձակողական ոգի։ Զարգացած կապիտալիստական երկրներում կան մոտ 160 միլիոն բանվորներ, 26 կոմունիստական պարտիաներ՝ 3 և կես միլիոն կոմունիստներով, արհմիությունները միավորում են 60 միլիոն մարդ։ ՍՍՌՄ-ի, սոցիալիստական սիստեմի նվաճումները բարենպաստ պայմաններ են ստեղծում մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածման, աշխատավորների համախմբման, նրանց քաղաքական լուսավորության և պայքարի համար։

Սոցիալիստական երկրները, ինչպես կանխատեսել է Վ. Ի. Լենինը, համաշխարհային ռևոլյուցիայի, միջազգային զարգացման վրա ներգործում են գլխավորապես իրենց տնտեսական հաջողություններով։ Վճռականը սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող տնտեսական պայքարն է։ Վ. Ի. Լենինը նշում էր, որ «այս ասպարեզն է փոխադրվել պայքարը համաշխարհային մասշտաբով։ Կլուծենք այդ խնդիրը և այն ժամանակ մենք կշահենք միջազգային մասշտաբով հաստատապես ու վերջնականապես» (Երկեր, հ. 32, էջ 562)։ Խաղաղ տնտեսական մրցության ընթացքում՝ լուծվում է համաշխարհային պատմական վեճն այն մասին, թե ո՞ր սիստեմն է լավ, ո՞րը լավագույն կյանք կապահովի բոլոր մարդկանց համար։ Այդ պայքարում սոցիալիզմը կապիտալիզմից նվաճում է դիրք դիրքի հետևից։

Իր օրինակի ուժով, առաջին հերթին արտադրողական ուժերի արագ զարգացմամբ, ժողովրդի կենսամակարդակի անշեղ վերելքով, մարդկանց խաղաղ և երջանիկ կյանքի պայմաններ ստեղծելով սոցիալիզմն իր դրոշի շուրջն է համախմբում հարյուր միլիոնավոր նորանոր աշխատավորներ՝ ամբողջ աշխարհում, նրանց պայքարի է ոգեկոչում ընդդեմ իր դարն ապրած կապիտալիզմի։

Սոցիալիստական երկրների հաջողությունները քաղաքական բնագավառում, հասարակության քաղաքական կազմակերպումը, սոցիալիստական համաժողովրդական դեմոկրատիայի զարգացումը և կատարելագործումը, ժողովրդական մասսաների ներգրավումը հասարակական և պետական կառավարման գործերում, ժողովուրդների իրավահավասարությունն ու բարեկամությունն ուժգին հարված են հասցնում կապիտալիզմի հիմքերին, բարձրացնում կապիտալիստական երկրների աշխատավորների գիտակցականությունը, նպաստում նրանց քաղաքական և գաղափարական պայքարի ուժեղացմանը։ Այստեղ առանձնահատուկ նշանակություն ունի սոցիալիստական դեմոկրատիայի զարգացումը։

Սոցիալիզմի առավելություններն առանձնապես ակնառու են դրսևորվում բուրժուական դեմոկրատիայի ճգնաժամի, մոնոպոլիաների կողմից կառավարման բացահայտ դիկտատորական, ֆաշիստական մեթոդներին անցնելու փորձերի ֆոնի վրա։ Սոցիալիզմի երկրները, կառուցելով սոցիալիզմ ու կոմունիզմ, բազմակողմանիորեն ցուցահանում են համաշխարհային հասարակական զարգացման գլխավոր տենդենցը, կապիտալիզմի պատմական դատապարտվածությունը, աշխարհի բոլոր ժողովուրդներին ցույց են տալիս նրանց վաղվա օրը, ուժեղացնում սոցիալիստական երկրների օրինակի ձգողական ուժը, խոր ներգործում համաշխարհային ռևոլյուցիոն պրոցեսի ընթացքի վրա։ Հենց դրա և ոչ թե ռևոլյուցիայի արհեստական «հրման», արտահանության (ինչպես կարծում են «ձախ» աղմկարարները) մեջ էր Լենինը տեսնում սո-

ցիալիստական երկրների պրոլետարիատի ինտերնացիոնալ պարտականությունը։

Վ. Ի. Լենինը քանիցս վճռականապես դատապարտել է ռևոլյուցիայի արտահանության ավանտյուրիստական փորձերը, որոնք կարող էին աշխատավորական մասսաների աչքում վարկաբեկել սոցիալիզմի վսեմ իդեալները։ Ճիշտ է, արդի էտապում ռևոլյուցիոն իրադրության ծագման համար զգալիորեն ուժեղացել է արտաքին գործոնների, այդ թվում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ազդեցությունը, սակայն այժմ էլ ռևոլյուցիոն իրադրության ծագման համար վճռական նշանակություն ունեն տվյալ երկրի ներքին պայմաններն ու ուժերը։ Ռևոլյուցիան չի կարող դրսից պարտադրվել։ «Սովետական Միության սոցիալական հաջողությունները, ինչպես նաև նրա հաջողությունները գիտության ու տեխնիկայի բնագավառում,— գրում է Ֆինլանդիայի կոմունիստական պարտիայի գլխավոր քարտուղար Վիլլե Պեսսին,— լայն մասսաների մեջ ավելի շատ բան են անում, քան կարող էր անել ռևոլյուցիայի արտահանությունը, որ մարքսիզմ-լենինիզմը լիովին մերժում է» (Проблемы мира и социализма, № 6, 1963, стр. 3)։

Նոր հասարակարգի հաջող կառուցման օրինակի, նրա առավելությունների ցուցադրման ուժը, որի մասին խոսում էր Վ. Ի. Լենինը, դարձել է մարդկության առաջադիմական զարգացման կարևոր գործոնը։

Կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի պայքարը զարգանում և խորանում է։ Բոլորովին էլ պատահական չէ, որ այդ պայքարը հզոր վերելք ապրեց և մեծ սրության հասավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմակերպումից հետո, երկու սիստեմների խաղաղ գոյակցության պայմաններում։

Մի շարք երկրներում գործադուլային հուժկու մարտերը իմպերիալիստական պետությունների կառավարող շրջաններին ստիպեցին լուրջ զիջումներ անել աշխատավոր մասսաներին։ Իհարկե, բանվոր դասակարգը գործադուլների միջոցով չի կարող լուծել իր արմատական խնդիրները, բայց դրանց միջոցով նա անցնում է պայքարի, ուսուցման, կազմակերպման մեծ դպրոց, դիմում կռվի ավելի բարձր ձևերի։

Շատ կարևոր, վճռական նշանակություն ունի սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ազդեցությունը ազգային-ազատագրական շարժման վրա։ Անմիջապես հակադրվելով իմպերիալիստական ռեակցիայի և ագրեսիայի հիմնական ուժերին և կաշկանդելով նրանց՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը դրանով իսկ գաղութային ժողովուրդների համար առավել նպաստավոր պայմաններ ստեղծեց իմպերիալիզմի և ներքին ռեակցիայի դեմ հաջող պայքարի, գաղութատիրության լուծը թոթափելու, քաղաքական ու տնտեսական անկախության հասնելու համար։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո ազգային-ազատագրական շարժումը չտեսնված վերելք ապրեց, որի հզոր ալիքները սրբում տանում են գաղութային սիստեմը, քայքայում իմպերիալիզմի հիմքերը։ Անցած երկու տասնամյակների ընթացքում, այսինքն՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և խաղաղ գոյակցության պայմաններում, գաղութատիրությունից ազատագրվել և ինքնուրույն զարգացման ուղի են բռնել մոտ 60 երկրներ։ Իմպերիալիզմի գաղութային սիստեմը փաստորեն դադարել է գոյություն ունենալուց։ Դա գաղութային կախման մեջ եղած ժողովուրդների մեծ սխրագործությունն է,



նրանց հերոսական պայքարի արդյունքը։ Ազատասեր ժողովուրդների այս ակնբախ հաղթանակն իր պատմական նշանակությամբ երկրորդն է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ստեղծումից հետո։

Ազգային-ազատագրական ռևոլյուցիաների համաշխարհային պատմական հաղթանակներն անխզելիորեն կապված են սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, նրա նյութական ու բարոյական աջակցության հետ։ «Մենք մեզ չենք խաբելու,— գրում է Նիգերիայի հասարակական ականավոր գործիչ Վահաբ Դուղլակը,— զենքի մեջ գերակշռությունը չէ, որ ազգային-ազատագրական շարժմանը հնարավորություն տվեց իմպերիալիստներին դուրս վռնդելու գաղութներից։ Դրա պատճառը ավելի շուտ պետք է որոնել սոցիալիստական երկրների հզորության մեջ, ազգային-ազատագրական ուժերին ցույց տրվող նրանց ամենօրյա բարոյական, ֆինանսական, տեխնիկական ու ռազմական աջակցության մեջ»։

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները անշեղորեն պաշտպանել ու պաշտպանում են ժողովուրդների պայքարը ընդդեմ իմպերիալիզմի, գաղութատիրության և նեոգաղութատիրության։ Տնտեսական ու բարոյական մեծ օգնություն են ցույց տալիս նրանք անկախ զարգացման ուղին բռնած ժողովուրդներին, օգնում են ազգային էկոնոմիկայի, կուլտուրայի զարգացմանը, կադրերի պատրաստմանը։ Սոցիալիստական երկրների ֆինանսական ու տեխնիկական օգնությամբ գաղութատիրությունից ազատագրված երկրներում կառուցվում են ավելի քան 1170 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ և այլ կարևոր օբյեկտներ։ Սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության անկյունաքարերից մեկը եղբայրական դաշինքն է ազատագրված ժողովուրդների հետ։ Սոցիալիստական սիստեմը դարձել է պայքարող և ազատագրված ժողովուրդների ազգային-անկախ զարգացման հուսալի վահանը։ «Եթե չլիներ Սովետական Միությունը,— ասել է Գանայի պրեզիդենտ Քվամե Նքրուման,— գաղութային ճնշումից ազատագրվելու համար ծավալված շարժումը Աֆրիկայում կճաշակեր դաժան ու կոպիտ ճնշման ամբողջ ուժը» («Կոմունիստ», № 17, 1963 թ., էջ 22)։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը և նրա օգնությունը ոչ միայն նախադրյալ և բազա հանդիսացան ազգային-ազատագրական ռևոլյուցիաների հաղթանակի համար, այլ խոր ազդեցություն թողեցին նրանց բնույթի վրա։ Այդ մասին է վկայում այն փաստը, որ արդի ժամանակաշրջանում ազգային-ազատագրական ռևոլյուցիան համեմատաբար արագ է վերաճում սոցիալիստականի։ Ազատագրված շատ երկրների ժողովուրդներ հայտարարում են, որ իրենց նպատակն է սոցիալիստական հասարակարգի կառուցումը։ Եվ այդ բանական է, քանի որ կապիտալիզմը ժողովուրդների տառապանքների ուղին է, այն իրեն լրիվ վարկաբեկել է պայքարող ժողովուրդների աչքում։

Սոցիալիստական երկրների աճող հզորությունը, նրանց դիրքերի ընդլայնումը համաշխարհային տնտեսության և առևտրի բնագավառում իմպերիալիստներին զրկում են երիտասարդ, անկախություն նվաճած երկրների նկատմամբ տնտեսական թելադրանքի, բլոկադայի նախկին հնարավորություններից։

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի գոյությունը այժմ տնտեսապես հնարավոր է դարձնում սոցիալիստական շինարարությունն ամեն մի երկրում՝ անկախ ռևոլյուցիայի պահին ունեցած նրա զարգացման մակարդակից։ Առաջ այդպիսի հնարավորություն ունեին տնտեսական զարգացման առնվազն միջին

մակարդակ ունեցող երկրները։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առկայությունն, ըստ էության, սոցիալիզմի կառուցման քաղաքական հնարավորություն է ստեղծում յուրաքանչյուր երկրի համար՝ անկախ նրա տերիտորիայի մեծությունից, բնակչության թվից և ռազմական հզորությունից։ Այս հանգամանքը շատ կարևոր է։

Դառնալով մարդկային հասարակության զարգացման վճռական գործոնը՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը սոցիալական և ազգային-ազատագրության համար պայքարող ռևոլյուցիոն ուժերին հնարավորություն է տալիս ավելի արդյունավետ պայքարելու հակառևոլյուցիայի իմպերիալիստական ուժերի դեմ, կանխելու իմպերիալիստական ռեակցիայի կոպիտ միջամտությունը պայքարող կամ նոր կյանք կառուցող ժողովուրդների ներքին գործերին։ Դրա շնորհիվ, ինչպես հայտնի է, ձախողվեցին իմպերիալիստների փորձերը՝ վերականգնելու հին ռեակցիոն ռեժիմները ԳԴՌ-ում, Հունգարիայում, Կուբայում և այլուր։

Վերջին ժամանակներս իմպերիալիզմը, առաջին հերթին՝ ամերիկյան իմպերիալիզմը, Վիետնամում, Լաոսում, Կոնգոյում, Դոմինիկյան Ռեսպուբլիկայում, աշխարհի մի շարք այլ շրջաններում անցել է բացահայտ ագրեսիվ գործողությունների, որոնք հարուցել են խաղաղասեր ուժերի, միջազգային հասարակայնության օրինական զայրույթը։ Այդ գործողությունները դատապարտված են խայտառակ ձախողման։ Այժմ այլ են ժամանակները, արդի աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք ընդունակ լինեն կասեցնելու ժողովուրդների մեծ շարժումը սոցիալական առաջադիմության և ազգային ազատագրության ուղիով։ Ռևոլյուցիայի ուժերը կազմակերպվում են ամենուրեք, հասունանում են ռևոլյուցիոն նոր պայթյուններ։ Այդ անխուսափելի պրոցեսը ընթանում է անհամաչափ։ Բոլոր հիմքերը կան ենթադրելու, որ ռևոլյուցիոն պրոցեսի տեմպերն էլ ավելի կարագանան։ Իմպերիալիզմը ուժեղ հարվածներ է ստանում և՛ ճակատից, և՛ թիկունքից։ Այդ հարվածները նրան հասցնում են և՛ հաղթանակած սոցիալիզմը, և՛ կապիտալի երկրների պրոլետարիատը, և՛ ազգային-ազատագրական ռևոլյուցիաները, և՛ համադեմոկրատական շարժումները։

Բուրժուական գաղափարախոսությունը խոր ճգնաժամ է ապրում, նա ի վիճակի չէ գիտական կոմունիզմին հակադրելու որևէ դրական ծրագիր, առաջ քաշելու այնպիսի գաղափարներ, որոնք կարողանային ոգևորել և իրենց հետևից տանել մասսաներին։ Աշխարհում ծավալված գաղափարական պայքարում մարքսիզմ-լենինիզմի կողմն է պատմական ճշմարտության ուժը։ Գիտական կոմունիզմի գաղափարներն իրենց համար ճանապարհ են հարթում դեպի աշխարհի բոլոր երկրները, ջերմ արձագանք են գտնում միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց սրտերում։

Կոմունիզմը դարձել է մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժը, հասարակական առաջադիմության կարևորագույն գործոնը։ Առանց կոմունիստների չի կարելի պատկերացնել ժամանակակից աշխարհը, առանց կոմունիստների չկա հասարակական մեծ առաջադիմություն։



Մ. ԱՆՏՈՆՅԱՆ

# ԳԻՏԱԿՑԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՕՐԵՆՔԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿՅԱՆՔՈՒՄ

ՄԱՐՔՍԻ, Էնգելսի, Լենինի ստեղծած պատմական մատերիալիզմի խոշորագույն գիտական նվաճումներից մեկն այն է, որ նա հասարակական մտքի պատմության մեջ առաջին անգամ հիմնավորեց գիտակցական սկզբունքի աճման ընդհանուր սոցիոլոգիական օրենքը հասարակության վերընթաց զարգացման պրոցեսում՝ նրա խնդիրների ու պահանջմունքների աճման, հասարակական մեկ ֆորմացիայից մյուսին, ստորինից բարձրին անցնելուն համեմատ։ Ձևակերպելով այս օրենքը, Մարքսը և Էնգելսը գրել են. «Պատմական ներգործության հիմնավորության հետ միասին, հետևաբար, աճելու է նաև մասսայի ծավալը, որի գործն է հանդիսանում այն» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 2, էջ 90)։

Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ այս խոսքերի մեջ արտահայտված է պատմական մատերիալիզմի ամենախոր և ամենակարևոր դրույթներից մեկը։ Հիշյալ օրենքը հաստատվում է հասարակական զարգացման ամբողջ պատմությամբ, հասարակական առաջադիմության համար մղվող պայքարի պատմությամբ ընդհանրապես, սոցիալիզմի, կոմունիզմի համար մղվող պայքարի պատմությամբ՝ մասնավորապես։



ԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ զարգացման մեջ գիտակցական սկզբունքի աճման օրենքի ներգործությունը տարածվում է մարդկանց, ամբողջ հասարակության գործունեության բոլոր ուղղությունների վրա։ Դրանցից առավել կարևորը, հիմնականն ու գլխավորը երեքն են։ Առաջին ուղղությունը հասարակության արտադրողական ուժերի զարգացման ու փոփոխման համար մղվող պայքարն է նրա զարգացման յուրաքանչյուր էտապում։ Արտադրողական ուժերի զարգացումն ու փոփոխումը ժողովրդական մասսաների գիտակցականության ու կազմակերպվածության աստիճանական աճման, հասարակական կյանքի օբյեկտիվ պրոցեսների վրա նրանց ազդեցության աճման վճռական օբյեկտիվ պայմանն է։ Մարքսիզմ-լենինիզմը, հակառակ բուրժուական գաղափարախոսների պնդումների, ելնում է այն բանից, որ ընդունում է մարդկանց գիտակցական ու ակտիվ գործունեության վիթխարի հարաճուն դերը պատմական պրոցեսում, արտադրողական ուժերի զարգացման ընթացքում։

Արտադրողական ուժերի զարգացումը ուղեկցվում է այն բանով, որ մարդը աստիճանաբար ազատագրվում է բնության տարերային ուժերի իշխանությունից, և նախադրյալներ են ստեղծվում հասարակության զարգացման օրենքներին տիրապետելու և այդ օրենքները հասարակական առաջընթացի շահերին ծառայեցնելու համար։ Ֆ. էնգելսը «Բնության դիալեկտիկա»-ում նշել է, որ որքան ավելի են մարդիկ հեռանում կենդանիներից, որքան ավելի են նրանք զարգացնում հասարակության արտադրողական ուժերը, «այնքան ավելի մեծ չափով են նրանք հենց իրենք կերտում իրենց պատմությունը, իրենց գործողությունների գիտակցմամբ և այնքան ավելի է նվազում չնախատեսված հետևանքների, չվերահսկվող ուժերի ազդեցությունը այդ պատմության վրա, և այնքան ավելի ճշտորեն է պատմական արդյունքը համապատասխանում նախօրոք սահմանված նպատակին (Ֆ. էնգելս, «Բնության դիալեկտիկա», էջ 23)։

Սակայն հարկավոր է նշել, որ անտագոնիստական հասարակության մեջ, երբ որոշ հասարակական ուժեր իրենց պահանջմունքները բավարարում էին ուրիշների հաշվին, խիստ կաշկանդվում էր մարդկանց, առանձնապես աշխատավորների ազատությունը, այն զարգանում էր՝ հաղթահարելով մեծ դժվարություններ ու խոչընդոտներ։ Հետևաբար, մեծ դժվարություններով ու խոչընդոտներով էր զարգանում գիտակցական սկզբունքը մասսաների պատմական ստեղծագործության մեջ։ Մարքսը և էնգելսը «Գերմանական իդեոլոգիա»-ում գրել են, որ «... մարդիկ ամեն անգամ իրենց ազատությունը նվաճել են այնքանով, որքանով դա թելադրվել է իրենց և իրականանում էր ոչ թե մարդու նրանց իդեալով, այլ գոյություն ունեցող արտադրողական ուժերով։ Սակայն, ազատության մինչև այժմ տեղի ունեցած նվաճումների հիմքում ընկած են եղել սահմանափակ արտադրողական ուժեր. այդ արտադրողական ուժերով պայմանավորված, ամբողջ հասարակության համար անբավարար արտադրությունը հնարավոր էր դարձնում զարգացումը լոկ այն ձևով, որ որոշ անձինք իրենց պահանջմունքները բավարարում էին ուրիշների հաշվին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, էջ 433)։

Հասարակության կյանքում գիտակցական սկզբունքի աճման Երկրորդ ուղղությունը անցումն է հասարակական-տնտեսական մեկ ֆորմացիայից մյուսին, իսկ յուրաքանչյուր ֆորմացիայի ներսում՝ մեկ ստադիայից, փուլից մյուսին, ստորինից ավելի բարձրին։ Այս հաջորդական օրինաչափ հասարակական պրոցեսները ուղեկցվում են պատմության ակտիվ, գիտակից ու կազմակերպված կերտողների թվի ավելացմամբ՝ համեմատած այն բանի հետ, ինչ եղել է հասարակության զարգացման նախորդ հասարակական ֆորմացիայում կամ ստադիայում։ Որքան ավելի առաջադիմական է հասարակությունը, այնքան ավելի մեծ թվով մարդիկ են ակտիվորեն մասնակցում պատմական գործունեությանը։

Ընդհանուր սոցիոլոգիական օրենք է հանդիսանում այն, որ յուրաքանչյուր հաջորդ ֆորմացիայում կատարելագործվում, որակապես փոփոխվում է արտադրության եղանակը, նախորդ ֆորմացիայի համեմատությամբ ընդունելով ավելի առաջադիմական բնույթ։ Դրան լիովին համապատասխան աճում է նաև մարդկանց գիտակցականության, կազմակերպվածության դերը, որը իր գլխավոր արտացոլումն է գտնում հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման, արտադրության, գիտության, կուլտուրայի և հա-



սարակության կյանքի մյուս կողմերի զարգացման տեմպերի արագացման մեջ։

Հասարակության կյանքում գիտակցական սկզբունքի աճման Երրորդ գլխավոր ուղղությունը դա ժողովրդական մասսաների, ամբողջ հասարակության քաղաքական գործունեության բնույթի քանակական ու որակական աստիճանական փոփոխությունն է։ Անտագոնիստական հասարակության մեջ մեկ ֆորմացիայից մյուսին անցնելու ժամանակ փոփոխվում է հասարակական դասակարգերի բնությունը և, այդ կապակցությամբ, փոփոխվում է դասակարգային, քաղաքական պայքարի բնույթը, նրա ձևերն ու եղանակները։ Կատարելագործվում են դասակարգային պայքարի ձևերը, բովանդակությունը, տարերայնությունից ու անկազմակերպվածությունից գնալով դեպի գիտակցականություն և կազմակերպվածություն։ Այս ամենը հասարակական-քաղաքական կյանքում գիտակցական սկզբունքի աճման դիալեկտիկայի արտահայտությունն է։

Միանգամայն ակնհայտ է, որ մարդկանց գիտակցական գործունեության դերը ժամանակակից հասարակության մեջ որակապես տարբերվում է պատմության անցած ժամանակաշրջաններից։ Այդ տարբերությունը արտահայտվում է հասարակության կյանքի բոլոր բնագավառներում, այդ թվում և հասարակական զարգացման ընդհանուր տեմպերի բնագավառում։ 1918 թվականին Վ. Ի. Լենինը, խոսելով մեր երկրում սոցիալիստական հզոր տերություն ստեղծելու օբյեկտիվ պայմանների մասին, ընդգծում էր, որ «...ավելի քան հարյուր տարի առաջ պատմությունը կերտում էին մի բուռ ազնվականներ և բուրժուական ինտելիգենտների խմբակներ, մինչդեռ բանվորական ու գյուղացիական մասսաները թմրած ու քնած էին։ Այդ պատճառով այդ ժամանակ պատմությունը կարող էր սողալ միայն սոսկալի դանդաղությամբ։

Այժմ կապիտալիզմը շատ և շատ է բարձրացրել ընդհանրապես կուլտուրան, մասնավորապես մասսաների կուլտուրան։ Պատերազմը թափահարեց մասսաներին, շլված սարսափներով և տառապանքներով զարթեցրեց նրանց։ Պատերազմն առաջ հրեց պատմությունը և վերջինս այժմ սլանում է լոկոմոտիվի արագությամբ։ Այժմ պատմությունն ինքնուրույն կերպով կերտում են միլիոնավոր և տասնյակ-միլիոնավոր մարդիկ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 27, էջ 183—184)։

Երկրորդ համաշխարհային պատերազմի շրջանում և նրանից հետո հասարակության կյանքում գիտակցական սկզբունքների դերի աճման օրենքը էլ ավելի մեծ ասպարեզ ստացավ։ Այդ մասին են վկայում հասարակական առաջադիմության արագացման բազմաթիվ փաստերը։ Բավական է մատնանշել դրանցից մի քանիսը։ Սոցիալիզմի համաշխարհային լագերի կազմավորումը կապիտալիզմից դեպի կոմունիզմ հասարակության վերընթաց զարգացման օրինաչափ արդյունքն է։ Մեր օրերում փաստորեն փլուզվել է իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Մոտ մեկ և կես միլիարդ մարդ, այսինքն՝ երկրագնդի բնակչության կեսը, դեն է նետել գաղութակալության շղթաները։

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների 1960 թվականի Խորհրդակցության Հայտարարության մեջ մատնանշվում է, որ ազգային-ազատագրական շարժման ճնշման տակ գաղութային ստրկության սիստեմի փլուզումը իր նշանակությամբ երկրորդ պատմական երևույթն է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումից հետո։

Եթե պատմական զարգացման ընդհանուր օբյեկտիվ ուղղությունը բնորոշվում է կապիտալիզմից սոցիալիզմին անցումով, ապա ժողովուրդների հոգևոր կյանքի ընդհանուր զարգացումը ընթանում է գաղափարախոսության բուրժուական և մինչբուրժուական ձևերից դեպի սոցիալիստական գաղափարախոսության հաղթանակը։



ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ կյանքում գիտակցական սկզբունքի աճման օրենքը իր զարգացման համար էլ ավելի լայն ասպարեզ ձեռք բերեց սոցիալիզմի և կոմունիստական հասարակարգի կառուցման պայմաններում։ Եվ դա հասկանալի է։ Միայն այստեղ աշխատավորական մասսաները առաջին անգամ հնարավորություն ստացան գիտակցորեն, պլանաչափ և կանխամտածված կերպով վերափոխելու հասարակական օրգանիզմի բոլոր կողմերը՝ որակապես նոր սկզբունքներով և իրենց սեփական շահերի համար։

Հասարակության զարգացման մեջ գիտակցական սկզբունքի աճման այդպիսի թռիչքը պայմանավորված է ամենից առաջ օբյեկտիվ պայմանների այն արմատական փոփոխություններով, որոնք տեղի են ունեցել Մեծ Հոկտեմբերից հետո՝ մեր երկրում սոցիալիզմի լրիվ և վերջնական հաղթանակի շնորհիվ։ Սոցիալիստական սիստեմը, աշխատավորներին ազատագրելով ճնշման ու ստրկացման բոլոր ձևերից, նրանց գիտակցական պատմական ստեղծագործության մղեց հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Ժողովուրդը՝ պատմության կերտողը, դարձավ իր սեփական կյանքի իսկական տերը, ձեռք բերեց, ինչպես դեռ Էնգելսն էր հանճարեղ կերպով կանխագուշակում, «իսկական մարդկային պայմաններ»։ Ուստի ժողովուրդը, Վ. . Լենինի խոսքերով, անդուլ կերպով գիտակցաբար աշխատում է կարգապահության և ինքնակարգապահության ստեղծման համար, ամենուրեք կազմակերպվածության, կարգ ու կանոնի, կոմունիստական գործիմացության ու նախաձեռնության ամրապնդման համար՝ հանուն կոմունիզմի սկզբունքների հաղթանակի։

Արտադրության սոցիալիստական եղանակը արմատապես փոխեց էկոնոմիկայի զարգացման բնույթը։ Եթե արտադրության միջոցների մասնավոր սեփականության տիրապետության ժամանակ էկոնոմիկայի զարգացումը կրում է տարերային բնույթ, որի հետևանքով տիրապետող դասակարգերը չեն կարող գիտակցորեն, պլանաչափ կերպով ուղղություն տալ օբյեկտիվ տնտեսական պրոցեսներին, ապա սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունը կայանում է այն բանում, որ նա պահանջում և ապահովում է պլանաչափ, գիտակցական զարգացումը։ Այդ հանգամանքը կանխատեսել էին դեռ Մարքսը և Էնգելսը, որոնք ընդգծում էին, որ կոմունիզմը որպես հասարակական կյանքի որակապես նոր վիճակ, ենթարկվում է ոչ թե տարերայնության օրենքներին, այլ բնության ու հասարակության տարերային ուժերը ենթարկում է կազմակերպված ժողովրդի շահերին (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 70—71)։

Հասարակության կյանքում գիտակցական սկզբունքի աճումը պայմանավորված է ոչ միայն տնտեսական, այլև հասարակության սոցիալ-քաղաքական կյանքում տեղի ունեցած փոփոխություններով։ Խոսքը, օրինակ, այն մասին է, որ մեզ մոտ վերացել են շահագործող դասակարգերը, մնացել են



բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և սովետական աշխատավոր ինտելիգենցիան։ Սովետական հասարակության այս դասակարգերն ու խավերը արմատապես փոխվել են, իրենց հիմնական մասսայով դարձել են կոմունիստական իդեալների իսկական կրողներ, այդ իդեալների կենսագործման համար պայքարող ակտիվ մարտիկներ։

Սոցիալիզմի դարաշրջանը դա արտադրության սուբյեկտի, հասարակության բոլոր անդամների բոլոր ընդունակությունների բազմակողմանի ծաղկման սկզբի դարաշրջանն է։

Անհատի այդ ծաղկման հիմքերից մեկը կուլտուրական այն մեծ հեղափոխությունն է, որը տեղի ունեցավ մեր երկրում և որը աշխատավոր մասսաներին դուրս բերեց հոգևոր ստրկությունից ու խավարից, նրանց հաղորդակից դարձրեց կուլտուրայի այն հարստություններին, որ կուտակել է մարդկությունը։ Այն երկիրը, որի բնակչության մեծ մասը անգրագետ էր, վիթխարի թռիչք գործեց դեպի գիտության ու կուլտուրայի բարձունքները։ Բնակչության կուլտուրական աճումից մեծ չափով կախված են գիտակցական սկզբունքի աճումը արտադրողական ուժերի զարգացման գործում, տեխնիկայի առաջադիմությունն ու արտադրության կազմակերպումը, ժողովրդական մասսաների հասարակական ակտիվության բարձրացումը։

Այս ամենը հանգեցրեց աշխատավորների՝ նոր կյանքի կերտողների քաղաքական գիտակցականության չտեսնված աճման։ Այդ բանն արտահայտվում է.

— ժողովրդի կողմից պարտիայի քաղաքականությունն իբրև իր սեփական քաղաքականություն ըմբռնելու մեջ, քաղաքականություն, որը արտահայտում է իր արմատական ու կենսական շահերը, այն խնդիրներն ու նպատակներն ըմբռնելու մեջ, որոնց համար նա պայքարում է.

— կոմունիստական շինարարության ծրագրի համաժողովրդական պաշտպանության մեջ.

— մեր երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների կողմից բոլոր ժողովուրդների տնտեսական, քաղաքական, գաղափարական և կուլտուրական կապերի անխզելիության խոր ըմբռնման մեջ, բանվորների, գյուղացիների և ինտելիգենցիայի դաշինքի ամրության ու անխախտելիության նկատմամբ ունեցած հավատի մեջ.

— ժողովուրդների կողմից համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության ու անհաղթահարելիության ըմբռնման մեջ, այն հավատի մեջ, որ այդ լագերի միաձուլության դեպքում աշխարհում չեն կարող լինել այնպիսի ուժեր, որոնք կարողանային վերականգնել կապիտալիզմը մեր երկրում, սոցիալիստական որևէ այլ երկրում և խորտակել սոցիալիստական լագերը։

Որքան ավելի բարձր է մասսաների քաղաքական գիտակցականությունը, այնքան ավելի ուժեղ է մեր պետությունը։ Ահա ինչու Լենինը ընդգծում էր, որ մասսաների գիտակցության զարգացումը, ինչպես միշտ, մնում է մեր ամբողջ աշխատանքի բազան և գլխավոր բովանդակությունը։

Մենք այժմ ապրում ենք այնպիսի մի դարաշրջանում, երբ, Լենինի խոսքերով, անմիջական քաղաքական գործունեության համար հանդես է գալիս բոլոր ազգությունների հասարակ ժողովուրդը, երբ արթնանում են անցյալում ճնշված միլիոնավոր մարդկանց միտքն ու բանականությունը, արթնանում է, վաղուց արդեն արթնացել է ոչ թե միայն գրքեր կարդալու համար, այլ կեն-

դանի, մարդկային գործերի համար, պատմական ստեղծագործության համար։

Ամբողջ ասվածը վկայում է այն մասին, որ սոցիալիզմի օրով արմատապես փոխվել է տարերայնության և գիտակցականության հարաբերակցությունը հասարակության կյանքում՝ հօգուտ վերջինի։ Համառոտակի քննության առնենք այդ կատեգորիաներից յուրաքանչյուրի էությունը։

«Տարերայնության» կատեգորիան արտահայտում է մարդկային գիտակցության այն աստիճանը, որի դեպքում օբյեկտիվ օրենքներն ու իրենք՝ հասարակական հարաբերությունները ենթարկված չեն մարդկանց վերահսկողությանը, այլ, ընդհակառակը, իշխում են նրանց վրա։ Այդ պատճառով հասարակական-պատմական պրոցեսը հանդես չի գալիս իբրև պլանաչափ կերպով կազմակերպված, գիտակցական ուղղություն ստացող պրոցես՝ արդեն ճանաչված և գիտակցորեն օգտագործվող օբյեկտիվ օրենքների հիման վրա։ Կ. Մարքսը մատնանշում էր, որ տարերայնությունը հասարակական զարգացման մեջ դա այն է, ինչը ենթարկված չէ ընդհանուր պլանի։

Հասարակության զարգացման տարերայնությունը չի կարելի շփոթել մարդկանց գիտակցականության բացակայության հետ։ Հասարակական զարգացման բոլոր էտապներում մարդիկ գործում են գիտակցորեն։ Սակայն, ամեն գիտակցություն օբյեկտիվ հասարակական օրենքների ճիշտ, գիտականորեն ստույգ արտացոլում չէ։

«Գիտակցականության» կատեգորիան հասարակական զարգացման մեջ նշանակում է օբյեկտիվ անհրաժեշտության շատ թե քիչ ճիշտ արտացոլում, մարդկանց կողմից իրենց գործունեության սոցիալական հետևանքների ճիշտ իմացություն։ Այլ կերպ ասած, գիտակցականությունը հասարակական զարգացման մեջ ըմբռնվում է մարդկանց հասարակական գործունեության պլանաչափության իմաստով, որի դեպքում մարդիկ նախօրոք գիտեն իրենց գործողությունների սոցիալական հետևանքները, սոցիալական արդյունքները, գիտեն հասարակական այն նպատակը, որի համար պայքարում են։ Այս է սոցիալիստական, կոմունիստական հասարակարգի գլխավոր գիծը։

Հասարակական-պատմական պրոցեսը միշտ իրենից ներկայացնում է երկու հակադրությունների՝ տարերայինի ու գիտակցականի դիալեկտիկական միասնություն։ Այս դեպքում չի կարելի մոռանալ, որ ոչ տարերայնությունը, ոչ գիտակցականությունը անփոփոխ, մի անգամ ընդմիշտ տրված, քարացած բան չեն։ Այդ կատեգորիաներից յուրաքանչյուրի բովանդակությունը փոփոխվում է օբյեկտիվ պատմական իրադրության փոփոխման հետ։ Միաժամանակ փոխվում է նաև հարաբերակցությունը նրանց միջև։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ տարերայնություն էլ կա, տարերայնություն էլ։ Համեմատելով Ռուսաստանի բանվորների XIX դարի 60—70-ական և 90-ական թվականների տարերային գործադուլները, նա ընդգծում է, որ «բունտերի» համեմատությամբ 90-ական թվականների գործադուլները կարելի է նույնիսկ «գիտակցական» անվանել, այն աստիճանի նշանակալի է այն առաջընթաց քայլը, որ այդ ժամանակվա ընթացքում կատարվել է բանվորական շարժման մեջ։

Պատմության դիալեկտիկան կայանում է այն բանում, որ օրինաչափ կերպով աճում են գիտակցական սկզբունքի դերն ու նշանակությունը և նվազում է տարերայնության դերը պատմական պրոցեսում, այսինքն՝ փոփոխվում է հարաբերակցությունը նրանց միջև։

Երբեմն մեր առանձին փիլիսոփաներ ու տնտեսագետներ պաշտպանում



են այն սխալ կարծիքը, թե մինչսոցիալիստական հասարակական ֆորմացիաներում իբր անբաժան կերպով տիրապետում է լոկ տարերայնությունը, առանց գիտակցականության տարրերի։ Սխալ է նաև այն տեսակետը, որի համաձայն սոցիալիզմի օրով իբր հասարակական զարգացման մեջ անբաժան կերպով տիրապետում է լոկ գիտակցականությունը, առանց տարերայնության տարրերի։

Պաշտպանել նման տեսակետներ, նշանակում է անտեսել կամ չհասկանալ պատմական պրոցեսի դիալեկտիկան, որը ենթադրում է տարերային ու գիտակցական սկզբունքների անխզելի միասնության առկայությունը պատմության բոլոր էտապներում։ Սակայն այդ դիալեկտիկան ելնում է այն բանից, որ պատմության մինչսոցիալիստական ժամանակաշրջանում այս կամ այն չափով գերիշխում էր տարերայնությունը, իսկ երբ հասարակությունը անցնում է սոցիալիզմին, տեղի է ունենում տարերայնության և գիտակցականության հարաբերակցության նոր, արմատական փոփոխում՝ հօգուտ վերջինի։

Սոցիալիստական հասարակության մեջ անհամեմատ աճում են մարդու իշխանությունն ու վերահսկողությունը օբյեկտիվ աշխարհի և իր սեփական հասարակական հարաբերությունների նկատմամբ։ Կոմունիստական շինարարության փորձը ՍՍՌՄ-ում և սոցիալիստական շինարարության փորձը սոցիալիստական մյուս երկրներում ակնառու կերպով հաստատում են Ֆ. Էնգելսի խոսքերը սոցիալիստական հասարակությունում գիտակցական սկզբունքի դերի մասին. «Եվ միայն այդ մոմենտից մարդիկ կսկսեն միանգամայն գիտակցորեն կերտել իրենց պատմությունը, միայն այդ ժամանակ նրանց կողմից շարժման մեջ դրվող հասարակական պատճառները զգալի և շարունակ աճող չափով նրանց համար ցանկալի հետևանքներ կունենան։ Դա մարդկության թռիչքն է անհրաժեշտության թագավորությունից դեպի ազատության թագավորությունը» (Ֆ. Էնգելս, «Անտի-Դյուրինգ», էջ 364)։

Դա նշանակում է, որ կոմունիստական ֆորմացիան, ի տարբերություն նախորդ հասարակական ֆորմացիաների, ստեղծվում է ոչ թե տարերայնորեն, այլ մարքս-լենինյան պարտիայի ղեկավարած ժողովրդական մասսաների գիտակցական, պլանաչափ ու նպատակասլաց գործունեության շնորհիվ։ Այս բանում արտահայտվում է տարերայնության և գիտակցականության հարաբերակցության արմատական փոփոխությունը հասարակության զարգացման մեջ։

Այդ արմատական փոփոխությունը, սակայն, չի նշանակում, թե սոցիալիստական հասարակությունում չկան տարերայնության էլեմենտներ։ Այդպիսիք կան, և դրանցից մի քանիսը կմնան նաև լիակատար կոմունիզմի օրով։

Տարերայնության էլեմենտներին է վերաբերում ամենից առաջ այն, որ գիտության և տեխնիկայի զարգացման տվյալ էտապում մարդը դեռ չի տիրապետել մեզ շրջապատող նյութական աշխարհի շատ երևույթների և ի վիճակի չէ կառավարելու դրանք։ Ուստի հասարակությունը կրում է այդ տարերային ուժերի որոշ բացասական ներգործությունը (երաշտ, հեղեղներ և տարերային այլ երևույթներ)։

Տարերայնության էլեմենտները ծնվում են նաև այն պատճառով, որ աշխարհում դեռ գոյություն ունի կապիտալիստական սիստեմը։ Իրերի այդ դրության դեպքում սոցիալիստական պետությունները չեն կարող լիովին կարգա-

վորել միջազգային հարաբերությունները, թեև հայտնի է, որ համաշխարհային սոցիալիստական սիստեմը գնալով ավելի վճռական գործոն է դառնում միջազգային կյանքում։

Անհրաժեշտ է նկատի ունենալ նաև, որ ինչպես մեզ մոտ, այնպես էլ սոցիալիստական մյուս երկրներում դեռ գոյություն ունի անկազմակերպ շուկա՝ կոլտնտեսային շուկան, որտեղ գյուղատնտեսական մթերքների գները գոյանում են տարերայնորեն, այսինքն՝ պահանջարկի ու առաջարկի համեմատ։ Բայց այդ տարերայնությունն ունի այն առանձնահատկությունը, որ անսահման չէ, քանի որ նրա ոլորտը սահմանափակվում է հասարակական տնտեսության արտադրողական ուժերի աճմանը և ժողովրդի համար նյութական բարիքների արտադրության ավելացմանը զուգընթաց։

Եթե կապիտալիստական հասարակությունում տարերայնության արմատական պատճառը արտադրության միջոցների մասնավոր սեփականությունն է, ապա սոցիալիզմի պայմաններում իսպառ վերանում է այդ պատճառը։ Էնգելսը մատնանշում էր, որ արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա հիմնված յուրաքանչյուր հասարակության առանձնահատկությունը կայանում է այն բանում, որ այնտեղ արտադրողները կորցնում են իշխանությունը իրենց սեփական հասարակական հարաբերությունների նկատմամբ, իսկ մարդու բուն գործունեությունը նրա համար դառնում է խորթ, հակադիր ուժ, որը ճնշում է իրեն, փոխանակ ինքը իշխելու նրա վրա։ Միանգամայն ակնհայտ է, որ այդ պայմաններում մարդիկ չեն գիտակցում իրենց սեփական գործունեության սոցիալական հետևանքները, չեն հասկանում այն սոցիալական պրոցեսների օբյեկտիվ պատմական անհրաժեշտությունը, որոնց իրենք մասնակցում են։ «Ամեն մեկն ինքն իր համար է արտադրում, իր տրամադրության տակ պատահաբար եղած արտադրության միջոցներով և փոխանակման իր առանձին կարիքի համար։ Ոչ ոք չգիտե, թե ինչքան կհանվի շուկա այն արդյունքից, որ նա արտադրում է, և ինչ քանակությամբ սպառողներ կարող է գտնել նա. ոչ ոք չգիտե թե արդյոք իր անհատական արդյունքի իսկական կարիքը կա, արդյոք կարդարանան արտադրության իր ծախքերը, և առհասարակ կծախվի արդյոք այդ արդյունքը։ Հանրային արտադրության մեջ անարխիա է տիրում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս։ Ընտիր երկեր, երկու հատորով, հատ. II, էջ 172)։

Սոցիալիստական հասարակությունում տարերայնության տարրերի առկայության պատճառներից մեկն էլ այն է, որ հաճախ մեզ մոտ սուբյեկտիվ գործոնի այս կամ այն կողմը խախտում էր և խախտում է օբյեկտիվ պայմանների ու օբյեկտիվ օրենքների, առանձնապես տնտեսական օրենքների պահանջները։ Դա նշանակում է, որ ինքը՝ սուբյեկտիվ գործոնը հանդես է գալիս իբրև մեր հասարակության մեջ տարերայնության տարրերի առկայության պատճառներից մեկը։

Որքան մարդիկ ավելի խորն են ճանաչում և գիտակցաբար օգտագործում սոցիալական օրենքները, մասնավորապես տնտեսական օրենքները, այնքան ավելի քիչ սխալներ են թույլ տալիս նրանք էկոնոմիկայի ղեկավարման գործում, հետևաբար, որքան քիչ են տարերայնության տարրերի դրսևորումները, այնքան ավելի քիչ է այդ տարրերի բացասական ազդեցությունը հասարակության կյանքի վրա։

Սակայն, չի կարելի կարծել, թե երբևէ կգա մի այնպիսի ժամանակ, երբ



հասարակական զարգացման մեջ իսպառ և վերջնականապես կվերանա տարերայնությունը և կսկսվի համապարփակ գիտակցականության դարաշրջանը։ Այդ բանը չի կարող լինել այն պատճառով, որ մարդիկ երբեք չեն կարողանա լրիվ, վերջնականապես ու բացարձակապես ճանաչել ամեն բան աշխարհում, դրանք ենթարկելով իրենց շահերին։ Մարդիկ շարունակ մոտենում են դրան։ Այդ պրոցեսը հասարակության կյանքում գիտակցական սկզբունքի աճման պրոցես է, ինչպես բնության ու հասարակության երևույթների ու օրինաչափությունների մասին մարդկային գիտելիքների խորացման, այնպես էլ ժողովրդական մասսաների՝ հասարակական առաջընթացը արագացնող բազմակողմանի գործունեության արդյունավետության բարձրացման պրոցես։ Դրա հետ մեկտեղ այդ պրոցեսը հասարակական կյանքի բոլոր կողմերի գիտական ղեկավարման մակարդակի ըստ ամենայնի բարձրացման պրոցես է։

***

Հասարակական զարգացման մեջ գիտակցական սկզբունքի աճումը չի նշանակում հասարակության կյանքի ու զարգացման օբյեկտիվ պայմանների ու օրինաչափությունների դերի թուլացում։ Պատմական փորձը ցույց է տալիս, որ տեղի է ունենում ոչ միայն գիտակցական սկզբունքի, այլև օբյեկտիվ նյութական պայմանների, հատկապես նյութական արտադրության աճում։

Հասարակության կյանքի երևույթների նկատմամբ իսկական գիտական մոտեցումը մարքսիզմ-լենինիզմը տեսնում է օբյեկտիվ նյութական պայմանների, ստեղծված տվյալ իրադրության ճիշտ գնահատման մեջ, ժամանակին նոր տենդենցները բացահայտելու և կանխատեսելու կարողության մեջ, այդ հիման վրա ամենից ավելի ճիշտ քաղաքական գիծ մշակելու ընդունակության մեջ։ Հասարակության ղեկավարման տեսական պրոբլեմների և գործնական հարցերի նկատմամբ նման գիտական մոտեցման հիանալի օրինակ են հանդիսանում ՍՄԿՊ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումի որոշումները՝ գյուղատնտեսության զարգացման հարցերի մասին։ Այդ որոշումներում բացահայտվում են գյուղատնտեսության վերջին տարիների ետ մնալու հիմնական պատճառները։ Այդ պատճառները գլխավորապես կապված են ղեկավարման գործում եղած սուբյեկտիվիզմի հետ, օբյեկտիվ տնտեսական օրենքների պահանջների անտեսման հետ։

Ամենից առաջ խոսքն այն մասին է, որ տեղի է ունեցել հասարակական տնտեսության վերելքի գործում կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածության, աշխատավորների հասարակական և անձնական շահերի ճիշտ զուգակցման օրենքի խախտում։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ առանց իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ աշխատավորների անձնական նյութական շահագրգռվածության անհնար է կառուցել կոմունիզմ։

Ինքնին հասկանալի է, որ ըստ աշխատանքի բաշխման օրենքը, ինչպես նաև սոցիալիզմի մյուս օբյեկտիվ օրենքները կենսագործվում են ոչ տարերայնորեն, ոչ ինքնահոսի կարգով, ոչ առանց գիտակցական սկզբունքի ակտիվ ջանքերի։ Այդ օրենքն ինքնին չի կարող և չի որոշում աշխատավարձի, պարգևատրման կոնկրետ ձևերը սոցիալիստական հասարակարգի զարգացման յուրաքանչյուր տվյալ ժամանակաշրջանում։ Գիտակցական սկզբունքը, հաս-

*կապես կոմունիստական պարտիայի ղեկավարած սոցիալիստական պետության պլանաչափ գործունեությունը վիթխարի դեր է կատարում հիշյալ օրենքի պահանջների կենսագործման մեջ, աշխատանքի արդյունքի նկատմամբ նյութական շահագրգռվածության սկզբունքի կենսագործման մեջ։*

*Սակայն սուբյեկտիվ գործոնի այդ ամբողջ միջամտությունը տնտեսական կյանքում կարող է հաջողություն ունենալ միայն այն դեպքում, եթե սուբյեկտիվ գործոնն իր գործունեության մեջ ելնում է օբյեկտիվ օրենքների պահանջներից և ոչ թե առանձին ղեկավարների սուբյեկտիվիստական ցանկություններից։*

*Սուբյեկտիվիզմը տեղ էր գտել նաև ժողովրդական տնտեսության պլանաչափ, պրոպորցիոնալ զարգացման օրենքի օգտագործման նկատմամբ։ Խոսքը պլանավորման «կամային» մեթոդների մասին է։ Իր ելույթներից մեկում Ա. Ն. Կոսիգինը նշել է, որ յոթնամյակի ընթացքում (և դրանից առաջ) տեղ էր գտել անհամապատասխանություն արդյունաբերության և գյուղատնտեսության միջև, արտադրության և սպառման միջև։ Չէին ապահովվում ճիշտ համամասնությունները գյուղատնտեսության ներսում։ Դրա հետևանքով գյուղատնտեսությունը, ըստ էության, երբեք չէր հասնում այն մակարդակին, որ նա պետք է ունենար մեր սոցիալիստական երկրում, և լիովին չէր բավարարում ժողովրդական տնտեսության պահանջները (տե՛ս* «Экономическая газета», *1965 թվականի ապրիլի 2, էջ 3)։*

*Սուբյեկտիվիզմը պլանավորման մեջ դրսևորվում էր նաև այն բանում, որ արդյունաբերության և գյուղատնտեսության առանձին ճյուղերում շատ էին վերևից պարտադրված, տնտեսապես չհիմնավորված որոշումները։ Օրինակ, եգիպտացորենի ցանքը երկրի հյուսիսային շրջաններում չէր արդարացվում տնտեսապես հիմնավորված ոչ մի նկատառումով։ Ավելին, այն վիթխարի վնաս էր հասցնում ժողովրդական տնտեսությանը։*

*Սուբյեկտիվիզմը դրսևորվում էր նաև գների քաղաքականության մեջ, գյուղատնտեսության ֆինանսավորման և վարկավորման մեջ։*

*Սուբյեկտիվիզմի ամենից ավելի բացասական ձևը էկոնոմիկայի նկատմամբ քաղաքականության դերի բացարձակացումն է սոցիալիստական շինարարության ժամանակաշրջանում։ Հայտնի է, որ քաղաքականությունը պատմական, վերնաշենքային երևույթ է։ Նա որոշակի դասակարգի արմատական շահերի արտահայտությունն է։ Այս իմաստով Վ. Ի. Լենինը ասում էր, որ քաղաքականությունը էկոնոմիկայի խտացված արտահայտությունն է։*

*Երբեմն ճիշտ չի հասկացվում լենինյան դրույթն այն մասին, որ քաղաքականությունը առաջնակարգ նշանակություն ունի էկոնոմիկայի նկատմամբ։ Լենինը այստեղ նկատի ունի ոչ թե քաղաքականության ծագման հարցը, այլ նրա նշանակությունը, նրա դերը տնտեսական խնդիրների լուծման գործում։ «Առաջնակարգ» հասկացությունը չի կարելի շփոթել «առաջնայնություն» հասկացության հետ։ Դրանք նույնը չեն։ Քաղաքականությունը ևս, ինչպես վերնաշենքի ամեն մի ձև ընդհանրապես, իր ծագումով երկրորդային է տնտեսական կարգի նկատմամբ։ Էկոնոմիկան հասարակության ամբողջ կյանքի հիմքն է։ Նա նաև քաղաքականության հիմքն է։ Բայց երբ խոսքը քաղաքականության նշանակության մասին է, հասարակության կյանքի բոլոր տնտեսական, կուլտուրական և այլ հարցերի նկատմամբ քաղաքական մոտեցման մասին, ապա Լենինը օգտագործում է էկոնոմիկայի նկատմամբ քաղաքականության առաջնակարգության հասկացությունը, քանի որ քաղաքական ճիշտ մոտեցումն է միայն ապահովում նոր կյանքի կառուցման հաջողությունը։ «Առանց ճիշտ քաղաքական մոտեցման գործին՝ տվյալ դասակարգը չի պահի իր տիրապետությունը,— գրում էր Լենինը,—* և, հետևաբար, *չի կարող լուծել նաև իր* արտադրական խնդիրը» *(Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 32, էջ 89)։*

*Ընդգծելով քաղաքականության առաջնակարգ լինելը էկոնոմիկայի նկատմամբ վերոհիշյալ իմաստով, Լենինը միաժամանակ մատնանշում էր, որ սոցիալիստական հեղափոխությունից և նոր հասարակարգի կառուցումից հետո ստեղծված պայմաններում «գերակշռող նշանակություն է ձեռք բերում ոչ թե քաղաքականությունը, այլ էկոնոմիկան»։*

*Ահա ինչու Լենինը արտադրողական ուժերի զարգացումը դիտում էր իբրև Սովետական պետության գործունեության վճռական բնագավառ։ Նա ասում էր, որ պետական իշխանությունը նվաճելուց հետո բանվոր դասակարգի գլխավոր և ամենաարմատական շահագրգռությունն է հանդիսանում մթերքների քանակի ավելացումը և հասարակության արտադրողական ուժերի վիթխարի զարգացումը։*

*Այսպիսով, մի կողմից, մի տեսանկյունից քաղաքականությունը առաջնակարգ նշանակություն ունի էկոնոմիկայի նկատմամբ, իսկ մյուս կողմից, մյուս տեսանկյունից, գերակշռող նշանակություն է ստանում տնտեսական գործը, սոցիալիզմի և կոմունիզմի էկոնոմիկայի շինարարությունը։ Այստեղ մենք տեսնում ենք քաղաքականության և էկոնոմիկայի հարաբերակցության հարցի դիալեկտիկական դրվածքի օրինակ։*

*Հասարակության զարգացման գիտական ղեկավարումը կարող է ապահովվել միայն այն դեպքում, երբ կիրառվում է այնպիսի քաղաքականություն, որը համապատասխանում է օբյեկտիվ տնտեսական օրենքների պահանջներին, երբ նա հենվում է օբյեկտիվ պրոցեսների խոր ըմբռնման և ժողովրդական մասսաների ռևոլյուցիոն ստեղծագործության փորձի վրա։*

*Որքան բարձր է հասարակության զարգացման գիտական ղեկավարման մակարդակը, որքան բարձր է գիտակցական սկզբունքի դերը հասարակական կյանքում, այնքանով և, հետևաբար, բացառվում է սուբյեկտիվիզմի դրսևորման հնարավորությունը։ Հասարակության կյանքում գիտակցական սկզբունքի լստ ամենայնի աճումը կոմունիզմի կառուցման օրինաչափությունն է։*



Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆ

ՀՍՍՌ Մինիստրների սովետի կինեմատոգրաֆիայի
պետական կոմիտեի նախագահ

# ՀԱՅ ԿԻՆՈԱՐՎԵՍՏԻՆ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԼԱՅՆ ՃԱՆԱՊԱՐՀ

ՎԵՐՋԻՆ տարիներին սովետական կինեմատոգրաֆիան ստեղծեց մի շարք առաջնակարգ և մշտարժեք գործեր, որոնք լայն արձագանք գտան Սովետական Միությունում և նրա սահմաններից դուրս։ Հիշատակենք այնպիսի ֆիլմեր, ինչպես՝ «Թռչում են կռունկները», «Բալլադ զինվորի մասին», «Մեկ տարվա ինն օրը», «Իվանի մանկությունը», «Ողջերն ու մեռածները», «Ամեն ինչ մնում է մարդկանց», «Հարազատ արյուն», «Լավատեսական ողբերգություն», «Զինվորի հայրը», «Երկուսը», «Պատերազմ և խաղաղություն», որոնք արժանի փառք բերեցին սովետական կինոարվեստին և նրա ստեղծողներին։ Տարբեր են այս ժապավենները իրենց ժանրով, շոշափած խնդիրներով, ոճով, արտահայտչական միջոցներով, սակայն դրանք միավորողը գեղարվեստական բարձր չափանիշն է, ճշմարտացիությունը, հուզականությունը, արվեստագետի նուրբ ճաշակը, նրա կենսահաստատ աշխարհայեցողությունը։ Հիշատակված ֆիլմերը մի նոր ապացույց են այն բանի, որ սովետական արվեստի զարգացման հնարավորությունները իրապես անսպառ են։

Հարուստ ու ինքնատիպ է Սովետական Միության ժողովուրդների կինոարվեստը։ Երկրի յուրաքանչյուր ստուդիա ունի իր դեմքը։ Նրանցից յուրաքանչյուրը, պահպանելով ազգային ոճն ու յուրահատկությունը, գեղարվեստական ձևերով արտահայտում է մեր ժամանակի սոցիալիստական բովանդակությունը։ Մամուլն իրավացիորեն նշում է, որ «Զինվորի հայրը» ոչ միայն լավ, այլև ազգային ֆիլմ է։ Եվ ազգային է ոչ միայն արտաքին ատրիբուտներով, այլ խոր հոգեբանական դրսևորումներով։ Ուկրաինայի Դովժենկոյի անվան ստուդիայի հաջողությունը պետք է համարել «Մոռացված նախնիների ստվերները» ֆիլմը, որը ցուցադրվեց նաև արտասահմանյան մի շարք երկրներում։

Վերը հիշատակված ֆիլմերի մեջ իրենց ցայտուն արտահայտությունն են գտել որակական այն լուրջ փոփոխությունները, որոնք տեղի են ունեցել սովետական կինոարվեստում։ Այսօրվա ֆիլմի հերոսը ավելի խոհուն է, ավելի գունեղ, ձեռք է բերել շեշտված բնական ինտոնացիաներ, ներքնապես ավելի



հարուստ է, կյանքում ավելի ակտիվ ու համարձակ։ Այս օրինաչափ երևույթը միաժամանակ զուգակցվում է սովետական կինոարվեստի լավագույն տրադիցիաների օգտագործման, դրանց հետագա զարգացման ու խորացման հետ։

Ընդգրկելով Սովետական Միության ժողովուրդների հերոսական անցյալը, հայրենական մեծ պատերազմի անմոռաց էջերը և ժամանակակից կյանքի ամենաբարդ երևույթները, սովետական կինոարվեստի լավագույն ստեղծագործությունները լուրջ դեր են խաղում աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում, մեծապես նպաստում են նրանց գեղագիտական ճաշակի զարգացմանը։

Սովետական կինեմատոգրաֆիայի զարգացման ընդհանուր ֆոնի վրա վերջին տարիներին առավել հստակությամբ ակներև դարձավ Հայաստանում գեղարվեստական կինեմատոգրաֆիայի ետ մնալը, որը պայմանավորված էր մի շարք լուրջ պատճառներով։ Հիրավի, Սովետական Միության հնագույն ստուդիաներից մեկը՝ «Հայֆիլմ»-ը, որն իր ավելի քան 40 տարվա պատմության ընթացքում ստեղծել է լավագույն կինոժապավեններ, վերջին տարիների ընթացքում հանդիսատեսին շատ հիասթափություններ պատճառեց։ Այստեղից էլ այն համընդհանուր դժգոհությունը, որ հասարակայնությունը արդարացիորեն արտահայտում է «Հայֆիլմ» կինոստուդիայի ստեղծագործական կոլեկտիվի նկատմամբ։

Կինոարվեստը Հայաստանում իրապես ետ է մնում գրեթե բոլոր մյուս արվեստներից։ Կերպարվեստի մեջ Մարտիրոս Սարյանը՝ շրջապատված ավագ, միջին և երիտասարդ սերնդի տաղանդավոր նկարիչների մի ամբողջ համաստեղությամբ։ Երաժշտության մեջ Արամ Խաչատրյանը՝ որին շրջապատողները նույնքան ուժեղ են, որքան Սարյանինը։ Գրականության մեջ՝ ազգային, համամիութենական և համաշխարհային համարում ունեցող մի շարք անուններ։ Ճարտարապետության մեջ՝ քանքարավոր մարդկանց մի հզոր խումբ, որի ջանքերով մեր հինավուրց ճարտարապետությունը ապրում է իր իսկական ոսկեդարը։ Այստեղից էլ հարց է ծագում. մի՞թե հայ ժողովրդի հիրավի հերոսական ներկան, նրա անվեհեր զավակների մասնակցությունը Հայրենական մեծ պատերազմին, հայ ժողովրդի հեղափոխական անցյալը, Շահումյանի, Սպանդարյանի, Մյասնիկյանի, տասնյակ ուրիշ պայծառ անունների անմոռաց կյանքի հերոսապատումը հայ կինոարվեստի գործիչների պատվի գործը չէ և, վերջապես, մի՞թե հայ ժողովրդի բազմադարյան հարուստ պատմությունը, նրա մշակույթը, նրա ազգային-ազատագրական պայքարի անկրկնելի էջերը չեն ոգեշնչում կինոարվեստի գործիչներին՝ ստեղծելու իսկական էպիկական կինոկտավներ։ Դժվար է միանգամից տալ շատ պարզ և բնական թվացող այդ հարցերի պատասխանը։ Ցավոք պետք է արձանագրել, որ վերջին տարիներին «Հայֆիլմ» ստուդիայի ստեղծագործական աշխատողները զգալիորեն թուլացրել են պահանջկոտությունը իրենց իսկ ստեղծած ժապավենների նկատմամբ։ Ստուդիայում որոշակիորեն իջել է արվեստի չափանիշների մակարդակը և չի կարելի ասել, որ այնտեղ գոյություն ունի ստեղծագործական իսկական մթնոլորտ, կոլեկտիվ պատասխանատվության զգացում կինոարվեստի վիճակի համար։ Եթե մանրամասն բնութագրենք 1961—1964 թվականներին ստեղծված ֆիլմերը, դա մեզ շատ հեռուն կտանի։ Դրա կարիքը հավանաբար չկա նաև այն պատճառով, որ այդ շրջանում ստեղծված բոլոր ֆիլմերը մամուլում ստացել են իրենց գնահա-

տականը։ Նախընտրելի է նշել ընդհանուր բնույթ կրող մի քանի թերություններ, որոնք մինչև այսօր էլ խանգարում են գործին։

Սովետական կինեմատոգրաֆիայում ամբողջությամբ վերցրած, նկատելի է երիտասարդ կարող ուժերի ընդգրկումը կինոարտադրության բոլոր օղակներում՝ ռեժիսուրայում, օպերատորական արվեստում, կինոդրամատուրգիայում և մյուս ասպարեզներում։ Այդ գործում մեծ ծառայություն ունեն կինոարվեստի վետերանները, որոնք իրենց ստեղծագործական փորձն ու հմտությունը հաղորդում են երիտասարդներին, օգնում են նրանց ստեղծագործական որոնումներում, իսկ ստուդիաների ղեկավարները խելացիորեն զուգակցում են փորձառու վարպետների և կինոարվեստի բնագավառը նոր մուտք գործող երիտասարդ կադրերի աշխատանքը։

Մեզ մոտ երիտասարդ կադրերի նկատմամբ հարկ եղած հոգատարություն և ուշադրություն չի եղել։ Մի շարք երիտասարդ մասնագետներ, Մոսկվայում ավարտելով կրթությունը, չեն վերադարձել «Հայֆիլմ» և տեղավորվել են աշխատանքի այլ ստուդիաներում, կամ կարճ ժամանակ աշխատելով այստեղ, թողել հեռացել են։ Ստեղծագործական ամեն մի օրգանիզմ, եթե նա ուզում է պահպանել իր կենսունակությունը, պետք է համալրվի երիտասարդ խոստումնալի ուժերով։ Այդ ուղղությամբ այժմ «Հայֆիլմ» ստուդիայում որոշ աշխատանք կատարվում է։ Անցյալ տարի թողարկված «Մսյո Ժակ և ուրիշներ» ֆիլմում հանդես եկան երիտասարդ օպերատորներ Ս. Իսրայելյանը և Կ. Մեսյանը, որոնք դրսևորեցին ինքնուրույն աշխատանքի շնորհք ու կարողություն։ Այժմ արտադրության մեջ գտնվող ֆիլմերի ռեժիսյորներն ու օպերատորներն են մի շարք երիտասարդ ստեղծագործողներ։

Կինեմատոգրաֆիայի պետական կոմիտեն Մոսկվա է գործուղել երիտասարդների նոր խումբ։ Նրանք սովորում են ռեժիսորական, օպերատորական, սցենարական և կինոքննադատության բաժիններում։ Պետք է պայմաններ ստեղծել, որպեսզի ավարտելուց հետո այդ երիտասարդ մասնագետները կարողանան իրենց ուժերը ի սպաս դնել հայ կինոարվեստի զարգացմանը։

Գեղարվեստական կինեմատոգրաֆիայի զարգացման գործում բացառիկ կարևոր է կինոդրամատուրգիան։ Աչքի առաջ ունենալով սցենարական պրոբլեմի լուծման բացառիկ նշանակությունը, ստուդիաներում ստեղծվել են սցենարական կոլեգիաներ, որոնց գլխավոր խնդիրը սցենարների պատրաստումն է։ Սցենարական կոլեգիաները դրական աշխատանքի որոշ փորձ են կուտակել։ Սակայն մեզանում սցենարական աշխատանքի գլխավոր թերություններից մեկը խմբագրական կադրերի անթույլատրելի հոսունությունն է, որը խիստ բացասաբար է անդրադառնում ստուդիայի արտադրական պրոցեսի վրա։ Մենք չենք ուզում թեկուզ փոքր չափով մեղմել սցենարական կոլեգիայի պատասխանատվությունը։ Բայց տեղի է ունենում մի հետաքրքիր երևույթ. վերջին 8—10 տարվա ընթացքում ստուդիան փոխել է ութ գլխավոր խմբագիրներ։ Նման դեպքում լուրջ խոսակցություն սցենարական արդյունավետ քաղաքականության մասին չի կարող լինել։ Մյուս կողմից ստուդիայի պատմության մեջ կարծես թե արձանագրված չէ մի դեպք, երբ ֆիլմերը պարբերաբար տապալած, ստեղծագործորեն անհուսալի որևէ ռեժիսյոր փոխադրվեր այլ աշխատանքի։ Թեև սցենարական կոլեգիան որոշակի քայլեր է կատարում գրողների և կինոդրամատուրգների հետ կապերն ընդլայնելու, ժամանակակից թեմատիկայով գեղարվեստական լիարժեք սցենարներ ստեղծելու ուղղությամբ,



սակայն սցենարական պրոբլեմը դեռևս լուծված չէ։ Այս գործում մեծ անելիքներ ունեն նաև ռեժիսյորները։ Նրանք ստեղծագործական ակտիվություն պետք է ցուցաբերեն սցենարների ստեղծման բոլոր էտապներում, որը շատ դեպքերում դրսևորվում է միայն սցենարի հեղինակ կամ համահեղինակ լինելու դեպքում, մի երևույթ, որը հատկապես վերջին տարիներին մեծ տարածում է գտել։ Անվիճելի և բացահայտ ճշմարտություն է՝ իսկական կինոստեղծագործությունը կարող է ծնվել սցենարական կոլեգիայի և ռեժիսյորների միասնական ջանքերով։

Կինոն ոչ միայն արվեստ է, այլև արտադրություն։ Առանց ժամանակակից արտադրական բազայի հնարավոր չէ ստեղծել բարձրորակ կինոֆիլմեր։ Դա ակնհայտ ճշմարտություն է հատկապես այժմ, երբ բացառիկ արագ տեմպերով զարգանում է կինոարդյունաբերությունը, կատարելագործվում են կինոսարքավորումներն ու լաբորատորիաները։ Այդ իմաստով չի կարելի լըրջորեն խոսել հայ կինեմատոգրաֆիայի արտադրական բազայի մասին։ Դժվարություններն իսկապես մեծ են։ Գոհունակությամբ պետք է նշել, որ այդ վաղուց հասունացած հարցը, վերջապես, գտնում է իր դրական լուծումը։ Առաջիկա հնգամյակում կկառուցվի «Հայֆիլմ» ստուդիայի նոր արտադրական բազան, որը կունենա ժամանակակից բոլոր հարմարությունները։ Շինարարական կոմպլեքսի արժեքը կկազմի 3,5 միլիոն ռուբլի։ Մենք համոզված ենք, որ Հայաստանի շինարարության մինիստրությունը ջանք չի խնայի, որպեսզի առաջիկա հնգամյակի այդ խոշոր կառույցներից մեկը հնարավորին չափ արագ ավարտվի և շահագործման հանձնվի։ Ստուդիայի նոր բազայի շինարարությանը զուգընթաց միջոցներ պետք է որոնել արագորեն լուծելու ստեղծագործական և տեխնիկական կադրերի բնակարանային հարցը։

Շուտով Հայաստանի կինոաշխատողները կունենան իրենց նոր ստուդիան։ Արտադրական և տեխնիկական շատ հարցեր կգտնեն իրենց լուծումը։ Սակայն ժամանակակից ստուդիայի առկայությունը նոր, ավելի պատասխանատու խնդիրներ կդնի նրանց առջև։ Գորշ և անգույն ֆիլմերի արտադրությունն այլևս չի պատճառաբանվի արտադրական վատ պայմաններով. կմնա վճռական գործոնը՝ մարդկանց, կադրերի գործոնը, ովքեր են ստեղծել սցենարը և ինչ որակով, ով է ֆիլմի ռեժիսյորը, օպերատորը, ովքեր են կինեմատոգրաֆիայի վարչական աշխատողներն ու ղեկավարները։

Ստեղծագործական մի շարք ձախողումների կողքին ստուդիան 1961—1963 թվականներին ստեղծեց առաջին լայնէկրան, գունավոր՝ «Կրկեսի ճանապարհ» ֆիլմը (սցենարի հեղինակ Ա. Յուրովսկի, ռեժիսյորներ՝ Լ. Իսահակյան և Հ. Մալյան, օպերատոր Ժ. Վարդանյան), որը հաջողությամբ ցուցադրվեց Սովետական Միությունում և արտասահմանյան մի շարք երկրներում։ 1964 թվականի տվյալներով Սովետական Միությունում ֆիլմը դիտել են 20 միլիոն մարդ։ Ստեղծագործական անվիճելի հաջողություն էր Ա. Մանարյանի բեմադրած «Տժվժիկը» կարճամետրաժ ֆիլմը, որում իր անզուգական տաղանդի ամբողջ ուժով կրկին փայլեց Հրաչյա Ներսիսյանը։

Ինչպես արդեն նշեցինք, անցյալ տարվա վերջին ստուդիան թողարկեց «Մսյո Ժակ և ուրիշներ» կինոալմանախը, որը ստեղծված էր արևմտահայ նովելների մոտիվներով։ Հակոբ Պարոնյանի, Երվանդ Օտյանի և Լևոն Բաշալյանի երկերի էկրանացումը լուրջ և պատասխանատու գործ էր ստուդիայի համար։ Ստուդիայի կոլեկտիվը կարողացավ համեմատաբար կարճ ժամանա-

կամիջոցում հաղթահարել ֆիլմի ստեղծման հետ կապված բոլոր դժվարությունները և այն էկրան բարձրացնել։ «Քաղաքավարության վնասները» (սցենարի հեղինակ և ռեժիսյոր Հր. Ղափլանյան), «Կեղծ լրտես» (սցենարի հեղինակ Ս. Ռիզաև, ռեժիսյոր Հ. Մալյան) և «Տերտերին ուխտը» (սցենարի հեղինակ Լ. Ղարագյոզյան, ռեժիսյոր Հ. Մարգարյան) արժանացան հանդիսատեսի դրական գնահատականին։

Արևմտահայ դասական գրականության երկերին դիմելը ինքնին շնորհակալ գործ է։ Սակայն իրականում դա լավ կյանքից չէր գալիս։ Ստուդիայի սցենարական պորտֆելում ոչ մի պատրաստի սցենար չկար և, ինչպես հաճախ անցյալներում պատահել է, դասական գրականության երկերը փրկության խարիսխ էին։

Անցյալ տարիների համեմատությամբ բազմազան է ստուդիայի այս տարվա ծրագիրը։ Ստուդիայի կոլեկտիվը հանդիսատեսի դատին է ներկայացրել երկու գեղարվեստական և մեկ գիտահանրամատչելի լիամետրաժ ֆիլմ։ Աշխատանքի լավ կազմակերպման դեպքում այս տարի կարող է թողարկվել ևս մեկ ֆիլմ։

Հայաստանի հանդիսատեսը հետաքրքրությամբ դիտեց «Արտակարգ հանձնարարություն» ֆիլմը (սցենարի հեղինակ Կ. Իսաև, ռեժիսյորներ Ս. Գևորկով և Է. Քարամյան, գլխավոր օպերատոր Ա. Ջալալյան)։ Երկրորդ անգամ հայ կինեմատոգրաֆիստները դիմում են ականավոր հեղափոխական գործիչ Կամոյի լեգենդար կյանքի դրվագներին։ Հանդիսատեսի հիշողության մեջ դեռ թարմ էր «Անձամբ ճանաչում եմ» ֆիլմը և ահա այժմ նա կրկին տեսավ Կամոյին՝ նրա կյանքի ավելի ուշ շրջանում, 1918 թվականին։ Ամուր է ֆիլմի սցենարական հենքը։ Կինոդրամատուրգ Կ. Իսաևը կարողացել է հարազատորեն պատկերել գործողությունների պատմական ֆոնը, ստեղծել հետաքրքիր ու կլանող դրամատիկական իրավիճակներ։ Ռեժիսյորներ՝ Մ. Գևորկովին և Է. Քարամյանին հաջողվել է ստեղծել ուշագրավ ֆիլմ։ Անբասիր է ֆիլմի դերասանական կազմը (Կամո—Թոնունց, լրտես—Ջիրկով, Սավինկով—Սոկոլովսկի, Կրիվոյ—Կենինգսոն, դերասանուհի Օլյա — Շատսկայա, Նիկո—Կվելաիձե)։

«Արտակարգ հանձնարարություն» ֆիլմը պատմա-հեղափոխական թեմայի հաջող մշակում է, որը կարևոր նշանակություն ունի, հատկապես երիտասարդության դաստիարակության համար։ Հայ կինոգործիչները պետք է շարունակեն այդ շնորհակալ գործը և էկրան հանեն նոր կտավներ։

Այս տարի Մարտիրոս Սարյանը, մեր մեծագույն նկարիչը, բոլորեց իր կյանքի 85 տարին։ Համաժողովրդական մեծարման անմոռանալի օրեր ապրեց Հայաստանը։ Այդ օրերին շարունակվում էին նկարչին նվիրված ֆիլմի նկարահանումները։ Այժմ այն պատրաստ է։ Գեղարվեստական հեշտ խնդիր չէ էկրանի լեզվով ներկայացնել Մ. Սարյանի ստեղծագործությունը, թափանցել նրա անզուգական արվեստի խորքը։ Կարելի է ասել, որ դա հիմնականում հաջողվել է ֆիլմի հեղինակ և ռեժիսյոր Լ. Վաղարշյանին։ Ուրախալի է նշել, որ երիտասարդ օպերատոր Մ. Վարժապետյանը, առաջին անգամ ինքնուրույն հանդես գալով այդպիսի պատասխանատու ֆիլմում, լավ քննություն է բռնել։

Հանդիսատեսը շուտով կդիտի «Բարև, այդ ես եմ» ֆիլմը (սցենարի հեղինակ Ա. Աղաբաբով, ռեժիսյոր-բեմադրող Ֆ. Դովլաթյան, օպերատոր Ա. Յավուրյան), որը ստուդիայի և այն ստեղծողների համար սկզբունքային նշանակություն ունի։ Ֆիլմի հեղինակները պաշտպանում են որոշակի ստեղծագործական կոնցեպցիա, որն այժմ մեր կինոարվեստում իշխող է դառնում։ «Բարև, այդ ես եմ» ֆիլմով ռեժիսյոր Ֆ. Դովլաթյանը դրսևորել է իրեն որպես ինքնատիպ և ուրույն արվեստագետ։ Նրա հերոսը զերծ է աղմկարարությունից, պլակատայնությունից, ցուցամոլությունից։ Նա գիտության գաղտնիքների մեջ թափանցելիս նույնքան պարզ է, որքան սեր բացատրվելիս։ Նրա ներքնաշխարհը բարդ է իր պարզությամբ։ Դա մեր օրերի դրական հերոսն է։

Հիշատակված ֆիլմերը, անտարակույս, զերծ չեն էական թերություններից։ Մենք տվեցինք ընդհանուր բնութագիրը միայն, իսկ դրանց բազմակողմանի քննադատական վերլուծությունը թողնում ենք արվեստագետներին։

Ո՞րն է հետևությունը։ Ստուդիայի արտադրական ստեղծագործական կյանքում տեղի է ունեցել որոշ տեղաշարժ, որը պետք է ամրապնդել և չափազանց լուրջ ու տևական ջանքեր են պետք, որ այդ տեղաշարժերը դառնան ստեղծագործական բեկում։

ՈՐՈՇ անհանգստություն է առաջացնում ստուդիայի 1966 թվականի ռեպերտուարը։ Այժմ արտադրական պրոցեսում է գտնվում կինոալմանախը, որը բաղկացած է երեք նովելից — «Ավդոյի ավտոմեքենան», «Գառնի» և «Ջեյթունի քայլերգը», «Լալվարի որսը», «Լեբլեբիջի» և «Եռանկյունի» ֆիլմերը։ Ալմանախում հիմնականում զբաղված է երիտասարդությունը (Դ. Քեսայան, Ա. Աղաբաբով, Կ. Մեսյան, Ս. Իսրաելյան, Մ. Վարժապետյան)։

Ստեղծագործական վեճերի առիթ տվեց «Լալվարի որս»-ի բեմադրությունը։ Ոմանք գտնում են, որ Վ. Միրաքյանի պոեմի հիման վրա դժվար է ստեղծել այնպիսի կինոժապավեն, որը շատ թե քիչ ժամանակակից հնչեղություն ունենա։ Մյուսները, ընդհակառակը, կարծում են, որ ստեղծագործական ճիշտ լուծումների դեպքում կարելի է ստեղծել հետաքրքիր ֆիլմ։ Բեմադրող-ռեժիսյոր Ա. Հայ-Արտյանին է մնում լուծելու այդ վեճը։ Նա միաժամանակ սցենարի հեղինակն է։ Ֆիլմի օպերատորներն են Հ. Դիլդարյանը և Ժ. Վարդանյանը։

«Արտիստ»-ում կրած անհաջողությունից հետո երիտասարդ ռեժիսյոր Ա. Մանարյանը այժմ աշխատում է «Լեբլեբիջի»-ի վրա։ Ստուդիայի կոլեկտիվը սպասում է, որ ականավոր կոմպոզիտորի այդ հանրահայտ երկի հիման վրա կստեղծվի հետաքրքիր երաժշտական ֆիլմ։ Ռեժիսյոր Հ. Մալյանին գրավել է Աղասի Այվազյանի «Եռանկյունի» սցենարը, որն արտացոլում է Հայաստանում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական վերափոխումները նախապատերազմյան և Հայրենական պատերազմի շրջանում։

Սցենարական կոլեգիան շարունակում է աշխատանքը Հր. Քոչարի՝ Ստեփան Շահումյանի մասին գրած և Գ. Բորյանի «Նույն հարկի տակ», սցենարի վրա։ Արտադրական հեռանկարներ են ուրվագծվում Ա. Արաքսմանյանի, Գ. Առաքելյանի և Ա. Դարբնու «Մեկ տոկոս հույս» ու Մաթևոս Դարբինյանի «Կրկոս» վիպակի մոտիվներով ստեղծված սցենարի համար։ Հետաքրքիր հայտ ունի Հր. Մաթևոսյանը։ Սցենարական պորտֆելը լրացնելու համար ստուդիան կդիմի նաև սովետահայ գրողների որոշ երկերի էկրանացմանը։

Հայ կինոարվեստի աշխատողներն այժմ շատ պատասխանատու շրջան են ապրում։ Ամբողջ երկիրը պատրաստվում է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 50-ամյակին։ Կինեմատոգրաֆիական արտադրության ժամկետները հրամայաբար պահանջում են, որ այժմվանից արդեն սկսվեն մեծ հոբելյանին նվիրված կինոժապավենների նախապատրաստական աշխատանքները։ Մեր կինեմատոգրա-

ֆիստները հույս ունեն, որ այդ գործում նրանք կստանան Հայաստանի գրողների աջակցությունը:

Գեղարվեստական կինեմատոգրաֆիայի զարգացման ասպարեզում վճռական խոսք ունեն ասելու մեր դերասանները: Ցավոք, պետք է նկատել, որ վերջին տարիներին դերասանական պրոբլեմը գրեթե մոռացության է մատնվել, որի բացասական հետևանքներն այժմ արդեն առկա են: Հայ կինոարվեստը զարգացել է հայկական թատերական արվեստի կորիֆեյների սերտ մասնակցությամբ ու աջակցությամբ: Սակայն վերջին տարիների ընթացքում հայ գրողներն ու կինոդրամատուրգները, իսկ նրանց հետ միասին և ռեժիսյորները քիչ են մտահոգվել մեր ականավոր դերասանների ճակատագրով: «Զինվորի հայրը», «Համլետը» և շատ ուրիշ ֆիլմեր եկան մի անգամ ևս հավաստելու այն պարզ ճշմարտությունը, որ առանց լավ դերասանի լավ ֆիլմ չկա: Հրաչյա Ներսիսյանը, Վաղարշ Վաղարշյանը և շատ ուրիշներ ստեղծել են անմոռանալի էկրանային կերպարներ: Սակայն հայ կինոարվեստը նրանցից չվերցրեց այն ամենը, ինչ կարող էր: Վերջին տարիներին հանդիսատեսը էկրանի վրա գրեթե չի տեսել Ավետ Ավետիսյանին, Գուրգեն Ջանիբեկյանին, Օլգա Գուլազյանին, Դավիթ Մալյանին և մեր մյուս ականավոր դերասաններին: Ծրագրված է ստուդիայում կազմակերպել ժողովրդական դերասանական ստուդիա և նրանում ընդգրկել շնորհալի երիտասարդների և աղջիկների: Այդ կարևոր միջոցառումը պետք է արագորեն իրականացնել: Կինոարվեստում դերասանական պրոբլեմը սրվում է նաև այն պարզ պատճառով, որ զբաղված լինելով թատրոնում, դերասանը հաճախ զրկվում է ֆիլմում հանդես գալու հնարավորությունից: Ուրեմն պրոբլեմը մասամբ պետք է լուծել սեփական կադրեր ստեղծելու ճանապարհով, մանավանդ, որ ոչ բոլոր թատերական դերասանները կարող են հանդես գալ կինոյում, նկատի ունենալով էկրանի առանձնահատկությունը:

Վերջերս Հայաստանի կոմունիստական պարտիայի կենտկոմը և Մինիստրների սովետը հատուկ որոշումներով անդրադարձան «Հայֆիլմ» ստուդիայի ստեղծագործական և արտադրական գործունեությանը: Թեև ստուդիայի կոլեկտիվը այդ որոշումների կենսագործման ուղղությամբ որոշ աշխատանք կատարել է, սակայն ֆիլմերի արտադրության գործում դեռևս խոշոր թերություններ կան: Ստուդիայի աշխատանքում իսկական չարիք են դարձել ֆիլմերի արտադրության ժամկետների անվերջանալի երկարաձգումները, նախահաշիվների խախտումները, ֆինանսական միջոցների և ժապավենի գերածախսը: Այսպես, «Ջրերը բարձրանում են» ֆիլմի համար նախատեսված էր 315 օր, փաստորեն այն տևել է 509 օր, պլանավորված 228,6 հազար ռուբլու դիմաց ծախսվել է 405,8 հազար ռուբլի: «Երգում է Գոհար Գասպարյանը» ֆիլմը արտադրության մեջ ուշացել է գրեթե մեկ տարի և տվել է նյութական միջոցների գերածախս: «Բարև, այդ ես եմ» ֆիլմի ժամկետը երկու անգամ երկարաձգվել է: Թույլ է տրված դրամական միջոցների և ժապավենի զգալի գերածախս և այսպես անվերջ: Այս ամենը վկայում են այն մասին, որ ստուդիայում դեռևս ցածր է պետական և աշխատանքային կարգապահությունը, աշխատողների մի մասը անպատասխանատու վերաբերմունք է ցուցաբերում հանձնարարված գործի նկատմամբ, ցածր է աշխատանքի կուլտուրան, առկա են հապճեպությունն ու թափթփվածությունը:

Հայաստանի նորագույն պատմության մեջ դժվար թե գտնվի շատ թե քիչ նշանակալի մի իրադարձություն, որը փաստագրված չլինի ժապավենի վրա: Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում, վերականգնման շրջանի բարդ սոցիալ-տնտեսական կյանքը, երեսնական թվականների տնտեսական և մշակութային հսկայական տեղաշարժերը, Հայրենական մեծ պատերազմի իրադարձությունները, հետպատերազմյան շրջանում ծավալված կոմունիստական շինարարությունը — այս ամենը փաստաթղթերի անկրկնելի ուժով արտացոլված են ժապավենի վրա: Եվ դա ոչ միայն ժամանակակից, այլև ապագա սերունդների սեփականությունն է:



Ակնարկներ, լիամետրաժ ֆիլմեր, պարբերական կինոհանդեսներ են ստեղծվել արդյունաբերության, գյուղատնտեսության, արվեստի, գրականության ու գիտության գրեթե բոլոր բնագավառների մասին: Բացառիկ կարևոր նշանակություն ունեն այն ակնարկները, որոնք նվիրված են մեր թատերական արվեստի, գրականության, գիտության ականավոր ներկայացուցիչներին: Կարելի է հիշատակել «Երկիր հայրենի», «Պոեմ Հայաստանի մասին», «Հարազատ երգ», «Դարեր և տարիներ», Խ. Աբովյանին, Մ. Սարյանին, Հակոբ Պարոնյանին, Ե. Չարենցին, Ա. Իսահակյանին, Հր. Ներսիսյանին, Վ. Փափազյանին և մեր մյուս գործիչներին նվիրված ակնարկները:

Ինչպես վերը նշեցինք, սովետական կինոարվեստը վերջին տարիների ընթացքում ստեղծագործական լուրջ վերելք է ապրել: Նույնը պետք է ասել դոկումենտային կինեմատոգրաֆիայի մասին: Բազմազան ու ավելի նուրբ են դարձել գեղարվեստական մեթոդներն ու ձևերը: Սովետական կինոարվեստի այդ բնագավառի ականավոր վարպետները, ինչպես նաև երիտասարդ ստեղծագործողները համարձակորեն նոր ուղիներ են փնտրում, օգտագործում են գեղարվեստական արտահայտչական այնպիսի ձևեր, որոնք առավել խորությամբ ու բազմազանությամբ արտահայտեն մեր ժամանակաշրջանի ոգին, էությունը: Այլևս անմարսելի են դառնում կոպիտ արված ինսցենիրովկաները, պլակատային, շաբլոն տեքստերը, ֆիլմի հեղինակների ձգտումը՝ հանդիսատեսին բացատրելու տարրական ճշմարտություններ: Դրան փոխարինելու են գալիս այնպիսի ֆիլմեր, ինչպես՝ «Կատյուշան», «Վիրաբույժի դիմանկարը», «Միայն մի կյանք»: Արվեստագետն այստեղ փնտրում է ավելի բնական, ճշմարտացի վիճակներ, չի ձգտում պարադայնության, կյանքի գունազարդման: Այդ նպատակով օգտագործվում է թաքնված կամերան, որը հնարավորություն է ընձեռում կյանքից վերցված բազում բնական վիճակներից ընտրել առավել հետաքրքիրը, բնորոշը, անկրկնելին: Պետք է շիտակորեն ասել, որ մինչև վերջերս Երևանի դոկումենտային և խրոնիկային ստուդիան այս երևույթների վրա քիչ ուշադրություն էր դարձնում: Այդ իմաստով ստուդիայի համար կարևոր, կարելի է ասել, սկզբունքային նշանակություն ունեցավ «Բարև, Արտյոմ» ֆիլմը (սցենարի հեղինակներ Ա. Հովհաննիսյան, Մելիք Ավագյան, օպերատոր Ս. Գևորգյան): Հայ դոկումենտալիստների հաջողությունը պետք է համարել Ստեփան Շահումյանի մասին ստեղծված ժապավենը (սցենարի հեղինակներ Ծ. Աղայան, Վ. Միքայելյան, ռեժիսյոր Լ. Իսահակյան, օպերատոր Գ. Սանամյան) և Սովետական Միության կրկնակի հերոս Ն. Ստեփանյանին նվիրված ֆիլմը (սցենարի հեղինակ և ռեժիսյոր Գ. Բալասանյան):

ԻՆՉՊԵՍ հայտնի է, վերջին տարիների ընթացքում մեծապես ընդլայնվեցին մշակութային կապերը Սովետական Հայաստանի և սփյուռքահայ գաղութների միջև, մասնավորապես Հայաստանի համերգային կոլեկտիվները բազմաթիվ շրջագայություններ կատարեցին արտասահմանի հայաշատ վայրերում և

փայլուն հաջողություն ունեցան։ Սակայն այս բոլորն աններելիորեն դուրս էր մնում դոկումենտային կինեմատոգրաֆիայի տեսադաշտից։ Այդ բացը լրացվեց այս տարի, երբ էկրան բարձրացավ «Երգի թևերով» ֆիլմը (սցենարի հեղինակ Գ. Առաքելյան, ռեժիսյոր Լ. Իսահակյան, օպերատոր Ն. Սիմոնյան)։ Ֆիլմը պատկերում է Հայաստանի երգի և պարի պետական անսամբլի ուղևորությունը Սիրիա և Լիբանան։ Հանդիսատեսը ջերմորեն ընդունեց այդ ֆիլմը և սպասում է, որ այն վերջինը չի լինի։ Հետաքրքիր, ինքնատիպ աշխատանք է «Լեռնային պարեկ» ֆիլմը, որը գեղարվեստական նոր միջոցներով պատկերում է երկաթուղային ճանապարհների անվտանգությունն ապահովող մագլցողների վտանգներով լի կյանքը։ Սցենարի հեղինակն է Գ. Առաքելյանը, ռեժիսյորը՝ Ա. Փելեշյանը, օպերատորը՝ Բ. Հովսեփյանը։

Մեր կարծիքով ստուդիայի առաջ կանգնած գլխավոր պրոբլեմը դա երիտասարդ ստեղծագործողներին ավելի համարձակ առաջ քաշելն է։ Ի դեպ, դրան մեծապես պետք է օգնեն ստուդիայի հնագույն մասնագետները։ Պետք է վճռական պայքար ծավալել միջակության, ապաշնորհության դեմ, իսկ դրանց նմուշները հազվագյուտ չեն ստուդիայում, բարձրացնել ստուդիայի կոլեկտիվի պատասխանատվությունը սեփական հեղինակության նկատմամբ։

Ստուդիան այժմ ձեռնամուխ է եղել Սովետական Հայաստանի մասին նոր լիամետրաժ ֆիլմի ստեղծմանը, որը նվիրվելու է Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 50-րդ տարեդարձին։ Այդ պատմական կարևոր դոկումենտը պետք է գեղարվեստական նոր միջոցներով պատմի այն հսկայական վերափոխումների մասին, որոնք տեղի են ունեցել հայ ժողովրդի կյանքում։ Հայաստանում սովետական կարգերի հաստատման 45-րդ տարեդարձին է նվիրված Արփա—Սևան շինարարության մասին ֆիլմը, որը պատրաստ կլինի նոյեմբերին։

«Հայֆիլմ» կինոստուդիայի և դոկումենտային ու խրոնիկային ֆիլմերի ստուդիաների կոլեկտիվների վերջին շրջանի աշխատանքի համեստ արդյունքները վկայում են, որ երկու ստուդիաներում էլ կան բոլոր նախադրյալները կինոարվեստում նկատելի բեկում ստեղծելու համար։ Դրա նախապայմանը ստեղծագործական կոլեկտիվների ուժերի մոբիլիզացումն է, կինոարվեստի և կինոարտադրության բոլոր աշխատողների պատասխանատվության բարձրացումը։





Ա. ԲԱԼՅԱՆ

# ԿՈՄՈՒՆԻԶՄԸ ԵՎ ԱՆՀԱՏԻ ԷՍԹԵՏԻԿԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ[1]

Թող մեր իդեալը լինի... ամբողջական, իրական, համակողմանի, կատարյալ, զարգացած մարդը:

В. И. ԼԵՆԻՆ

**Կ**ՈՄՈՒՆԻԶՄԻ ծավալուն կառուցման ժամանակաշրջանում համակողմանիորեն զարգացած մարդու դաստիարակությունը ՍՄԿՊ Ծրագրով առաջ քաշված երեք գործնական, դարակազմիկ խնդիրներից մեկն է։ Հիրավի, չի կարելի կոմունիզմ կառուցել առանց հասարակության անդամների գիտակցության, նրանց հայացքների, բարքերի, սովորությունների, նրանց հոգևոր աշխարհի խոր փոփոխության, այսինքն՝ առանց նոր մարդու դաստիարակության։

Սխալ կլիներ կարծել, թե համակողմանիորեն և ներդաշնակորեն զարգացած անձնավորության գաղափարը առաջ է քաշվել միմիայն մեր օրերում։ Անձի բազմակողմանի զարգացման գաղափարը ծագել է տակավին անտիկ աշխարհում։ Հետագա դարերում շատ առաջադեմ մտածողներ, փիլիսոփաներ, մանկավարժներ, արվեստագետներ հանդես են բերել մեծ հետաքրքրություն այդ հարցի նկատմամբ։ Սակայն դարեր ի վեր այն մնում էր իբրև լոկ իդեալ, հումանիզմի կոչ։ Միմիայն մարքսիզմը այդ պրոբլեմը դրեց գիտական հիմքերի վրա, ապացուցելով բազմակողմանիորեն զարգացած անհատի օբյեկտիվ անհրաժեշտությունը կոմունիստական հասարակարգի պայմաններում։



**Մ**ԱՐԴՈՒ համակողմանի և ներդաշնակ զարգացումը ենթադրում է նրա հոգևոր հարստությունը, բարոյական անաղարտությունը և ֆիզիկական կատարելությունը։ Իսկ մարդու նման զարգացումը անհրաժեշտաբար կապված է էսթետիկական ներազդեցությունների, էսթետիկական կուլտուրայի հետ։

Ի՞նչ պետք է հասկանալ էսթետիկական կուլտուրա ասելով, ինչո՞վ է պայմանավորված անձնավորության էսթետիկական զարգացումը։

Առօրյա կյանքի յուրաքանչյուր քայլափոխում, կամա թե ակամա, գիտակցաբար թե անգիտակցաբար մեզ շրջապատող մարդկանց, իրերին, բնության և

1 Տպագրվում է հարցադրման կարգով.—Խմբ։

հասարակական երևույթներին, իրադարձություններին մոտենում ենք գեղեցկության չափանիշով, առաջնորդվում ենք չափի զգացումով։ Իրերի հարմարավետության, օգտակարության, էժանության կամ թանկության, մարդու բնավորության գծերի, բարոյական վարքագծի վերաբերյալ մեր դատողություններում զգալի տեղ են գրավում նաև այդ երևույթների էսթետիկական նշանակության, դրանց գեղեցկության մասին մտքերը։ Որոշ մարդիկ, առարկաներ, իրեր մեզ պատճառում են ուրախություն, ուրիշները՝ դառնություն, հիասթափություն, ոմանք մեզ թվում են վեհ, իսկ մյուսները՝ ծիծաղելի։ Ահա շրջապատող կյանքի զանազան երևույթները գնահատելու մարդու ընդունակությունը, դրանք գեղեցիկ կամ այլանդակ, վեհ կամ ստոր, ողբերգական կամ կոմիկական համարելը, այդ գնահատումների հետ կապված վերապրումները կոչվում են էսթետիկական զգացումներ, որոնց հիմքում ընկած են էսթետիկական ընկալումները և ճաշակները։

Մարդիկ չեն սահմանափակվում միայն ընկալումով, նրանք ձգտում են ստեղծել գեղեցիկը, զարդարել կենցաղը, գեղեցիկը մտցնել իրենց շրջապատի մեջ և ամենագլխավորը՝ ձգտում են դառնալ լավ, բարի, գեղեցիկ, հարստացնել, խորացնել սեփական վերապրումները։ Այդ էսթետիկական ակտիվ գործունեությունը դրսևորվում է կյանքի ամենաբազմազան բնագավառներում՝ աշխատանքի մեջ, առանց որի հնարավոր չէ ստեղծել գեղեցիկը արվեստում, ինչպես նաև մարդկային փոխհարաբերությունների բոլոր ոլորտներում։ Մարդը ձգտում է այնպես կազմակերպել աշխատանքը, կենցաղը և հանգիստը, որպեսզի դրանից ստանա նաև էսթետիկական բավականություն, հաճույք։ Մարդու էսթետիկական կուլտուրան մարդկային հետաքրքրությունների մի հատուկ բնագավառի ինչ-որ բնութագիրը չէ։ Այն վերաբերում է մարդու կյանքի ու գործունեության բոլոր ոլորտներին։

Այն բանից, թե ինչպես է մարդը պատկերացնում գեղեցիկը, վեհը, ողբերգականը, կոմիկականը, ինչպես է նա ընկալում և գնահատում դրանք, ինչպես է իր այդ պատկերացումները մարմնավորում կյանքում, գոյանում է նրա էսթետիկական կուլտուրան։ Այսպիսով, էսթետիկական կուլտուրա հասկացությունը իր մեջ ներառում է ինչպես մարդու էսթետիկական պատկերացումները, մտապատկերները և ճաշակները, դրանց ձևավորումը և դաստիարակությունը, այնպես էլ այդ մտապատկերների ու ճաշակների դրսևորումը, դրանց նյութականացումը պրակտիկ գործունեության մեջ, մարդկանց վարքագծում, սովորույթներում և արվեստի երկերում։

Կոմունիստական հասարակարգի մարդուն հատուկ կլինի էսթետիկական բարձր կուլտուրա, որով և կչափվի իրականությունը էսթետիկորեն ճանաչելու նրա ընդունակությունը։

Էսթետիկական կուլտուրան մարդու բնատուր և կամ ժառանգական հատկությունը չէ։ Մարդու էսթետիկական զարգացումն սկսվում է խոր, վառ, տպավորիչ զգացմունքներ ունենալու ընդունակություն, իրականության նկատմամբ հուզական վերաբերմունք ցուցաբերելու կարողությունների ձևավորումից։

Էսթետիկական ընկալումների և վերապրումների մշակման հիմքը հանդիսանում են տեսողությունն ու լսողությունը—մարդու զգայարաններից «ամենահեռածիգը» և «ամենախելոքը»։ Հատկապես այդ զգայարանները մարդկային պրակտիկայի բովում վերածվեցին երաժշտական ականջի, և տարածական, գունային, լուսային ու այլ ձևերի բազմակերպությունն ու գեղեցկությունը



տարբերակող աչքի։ Տակավին Դիդրոն է նկատել, թե «Աչքն ու ականջը գեղեցիկ զգայարաններն են»։ Հիրավի, ի ծնե տեսողությունից զուրկ մարդը չի կարող ճանաչել աշխարհի գունային հարստությունը, դառնալ նկարիչ, իսկ լսողությունից զուրկը՝ կոմպոզիտոր։ Ուստի մարդու էսթետիկական զարգացման առաջին քայլը նրա տեսողության և լսողության, կամ, ինչպես ասում են, սենսորիկայի կազմակերպումն է, որն ընկած է էսթետիկական ընկալումների հիմքում և առանց որոնց հնարավոր չէ էսթետիկական դիտունակության զարգացումը։

Մարդու էսթետիկական զարգացումը, բացի անմիջական «կենդանի հայեցողության» կուլտուրայից, ենթադրում է նաև ֆանտազիա՝ երևակայելու ընդունակություն։ Հանրահայտ է, թե երևակայության ինչպիսի ուժով են օժտված եղել անցյալի շատ խոշոր գիտնականներ, արվեստագետներ, հասարակական գործիչներ։ Մոցարտը և Կյուվեն, Ռեմբրանդտը և Կ. Մարքսը, Տոլստոյը և Լենինը, Րաֆֆին ու Շահումյանը կարողանում էին զարմանալի ճշտությամբ ընդգրկել ամբողջը որևէ մեկ դետալի հիման վրա, «ծառերի ետևում տեսնել անտառը, իսկ անտառում ծառերը»։ Իհարկե, նման ստեղծագործական երևակայությունը, «հոգու նման խիզախումը» դաստիարակվում է բազմազան, իսկ երբեմն էլ ներքին գործոնների ազդեցությամբ։ Բայց կարևորն այն է, որ առանց այդպիսի ընդունակության չկա իսկական էսթետիկական զարգացում, իսկ այդ տեղի է ունենում էսթետիկական դաստիարակության և, ամենից առաջ, արվեստի միջոցով։ Իր հերթին իսկական արվեստը անհնար է առանց պայծառ ու խելացի երևակայության։ «Բանականությունից զուրկ ֆանտազիան արտադրում է հրեշավոր բաներ, իսկ միանալով նրա հետ՝ դառնում է արվեստի մայրը, նրա հրաշքների աղբյուրը»,—այսպես է բնութագրել արտասովոր երևակայության դերը գեղարվեստական ստեղծագործության մեջ իսպանացի մեծ նկարիչ Գոյան։ Հենց երաժշտական զորեղ երևակայությունը (կոմպոզիտորական հիանալի տեխնիկայի հետ) հնարավորություն տվեց Բեթհովենին՝ հաղթահարելու վրա հասնող խլությունը և ստեղծելու անզուգական երկեր, այդ թվում վերջին լարային կվարտետները և աշխարհահռչակ Իններորդ սիմֆոնիան։

Մարդու էսթետիկական զարգացումը չի սպառվում նրա էսթետիկական ընկալումներով և երևակայությամբ. այն ենթադրում է նաև զարգացած էսթետիկական ճաշակ։ «Պարտիան,— ասված է ՍՄԿՊ Ծրագրում,— անդուլ կերպով կհոգա գրականության, արվեստի, կուլտուրայի ծաղկման, յուրաքանչյուր մարդու անձնական ընդունակությունների առավել լրիվ դրսևորման համար բոլոր պայմանների ստեղծման, բոլոր աշխատավորների էսթետիկական դաստիարակության, ժողովրդի մեջ գեղարվեստական բարձր ճաշակի ու կուլտուրական ունակությունների ձևավորման մասին»։

Էսթետիկական ճաշակը մարդու էսթետիկական աշխարհայացքի դրսևորումն է իրական երևույթների կոնկրետ գնահատման և գործնականորեն գեղեցկությունը ստեղծելու ժամանակ։ Գնահատման չափանիշի մոտենալը օբյեկտիվ գեղեցկությանը, կամ իրականության էսթետիկական այլ որակներին և դրա ընդգրկման աստիճանը արտահայտվում են «լավ ճաշակ», «լայն ճաշակ» և այլ հասկացություններով։ Հետևապես, էսթետիկական ճաշակի զարգացումը պետք է տարվի երկու ուղղությամբ. նախ՝ լավ ճաշակի դաստիարակության ուղղությամբ, այն հաշվով, որ մարդկանց մոտ ձևավորվի իսկական գեղեցիկը այլանդակից զանազանելու և հասկանալու ընդունակություն, երկրորդ.

լայն ճաշակի դաստիարակություն, որը հնարավորություն տա մարդուն ճանաչելու և իմաստավորելու գեղեցկի բազմազան դրսևորումները կյանքում։

Էսթետիկական ճաշակի բովանդակությունը, որքանով որ այն հանդիսանում է էսթետիկական աշխարհայացքի դրսևորումը, կախված է այն երևույթներից, որոնք գնահատվում են մարդու կողմից, ինչպես և գնահատողի հասարակական ու անհատական որակներից։ Կարելի է խոսել ճաշակների ընդհանրության և նրանց բազմազանության մասին, ըստ որում դրանք մեկը մյուսին չեն բացառում։ Այսպես, օրինակ, սովետական մարդկանց ճաշակների ընդհանրությունը, դրանց կենսահաստատ բնույթը, հակումը դեպի պարզությունը և նպատակահարմարությունը կապված են նրանց ընդհանուր իդեալների, բնության, հասարակական կյանքի և արվեստի երևույթների նկատմամբ միատեսակ մոտեցման հետ։ Մյուս կողմից՝ ճաշակների միատեսակությունը դրսևորվում է ամենաընդհանուր պլանով, մինչդեռ յուրաքանչյուր կոնկրետ դեպքում մենք հանդիպում ենք ճաշակների լայն բազմազանության։

Մարդիկ չեն ծնվում պատրաստի ճաշակներով։ Ճաշակը, ինչպես և մարդու անձնական հատկությունները զարգանում են շրջապատող կյանքի, հասարակական պայմանների և մարդու՝ իր գործունեության ազդեցությամբ։ Առաջավոր էսթետիկական միտքը վաղուց ապացուցել է, որ առողջ ճաշակը կարող է ձևավորվել սոցիալական բարենպաստ միջավայրում, որն իր արմատներն ունի աշխատավորական մասսաների էսթետիկական իդեալներում։

Ճաշակի մեջ առավել ցայտուն կերպով դրսևորվում են մարդու անձնական հակումներն ու հետաքրքրությունները, նրա անհատականությունը։ Կոմունիզմը ենթադրում է հակումների, հետաքրքրությունների, ճաշակների բազմազանություն, մերժում է ճաշակների համահարթեցումը։ Եվ, հիրավի, մի պահ պատկերացնենք այնպիսի վիճակ, երբ մարդիկ ունեն միատեսակ ճաշակ և հայացքներ կյանքի բոլոր երևույթների նկատմամբ, բոլորը կրում են միևնույն գույնի ու ձևի տարազ, պարում են միևնույն պարը, երգում են նույն երգը։ Որքա՜ն անհրապույր, աղքատ կլիներ կյանքը։

Մարդկանց ճաշակների բազմազանությունն ունի իր օբյեկտիվ պատճառները։ Ամենից առաջ գեղեցիկը, ինչպես և վեհը, ողբերգականն ու կոմիկականը դրսևորվում են բազմազան ձևերով, որով և պայմանավորվում է մարդկանց էսթետիկական գնահատումների բազմազանությունը։ Այնուհետև, գեղեցիկը, ինչպես և էսթետիկական մնացած որակները հարաբերական են և ճանաչվում են համեմատության մեջ։ Այստեղից էլ միևնույն երևույթը տարբեր առումներով կարող է լինել և՛ գեղեցիկ, և՛ ոչ գեղեցիկ։

Ճաշակների բազմազանությունը ունի նաև իր սուբյեկտիվ բնույթի պատճառները։ Գեղեցկի ըմբռնման մեջ դրսևորվում են յուրաքանչյուր մարդու անհատականությունը, նրա կրթվածությունը, պրոֆեսիան, ազգային առանձնահատկությունները, կենսափորձը, տարիքը, դասակարգային պատկանելությունը, բնավորությունը, դաստիարակության աստիճանը, այն ժամանակաշրջանը, որում ապրում է նա և այլն։ Էսթետիկական ճաշակը բնութագրում է մարդու անհատականության մեջ բեկված հասարակական դիրքորոշումը։

Ահա թե ինչու, սովետական ժողովրդի էսթետիկական դաստիարակության կարևոր սկզբունքներից մեկը հանդիսանում է գեղեցկության կոմունիստական իդեալին համապատասխանող բազմազան ճաշակների ձևավորման սկզբունքը։

Տարբեր ճաշակների դաստիարակությունը համակողմանիորեն ու ներդաշ-



նակորեն զարգացած անձնավորությունների ձևավորման պայմաններից մեկն է։

Թե որքան պետք է դեռևս աշխատել էսթետիկական առողջ ճաշակ դաստիարակելու համար, երևում է պատմական գիտությունների մի ոմն թեկնածուի «Литературная газета»-ում ունեցած այն տխրահռչակ ելույթից, որով նա լրջորեն քննադատում է Կ. Չուկովսկու «Ճանճ-Կոկոտուխան» այն բանի համար, որ իբր այդ հեքիաթում «փառաբանվում է նողկալի ու զզվելի մրջյունը», պրոպագանդվում է սեր վարակիչ հիվանդությունները տարածողների նկատմամբ։ Մի ուրիշ վայ-քննադատ նույն թերթի միջոցով զայրացած պահանջում է վաճառքից հանել «Թոմ Սոյերի արկածները», քանի որ այդ գրքում պատմվում է «Սանձարձակ, փչացած տղայի մասին, որը խուլիգանություն է անում, գողանում, խաբում և համբուրվում է աղջիկների հետ»։

Հեշտ չէ հաղթահարել տրոգլոդիտների (քարանձավի բնակիչներին) հիշեցնող մարդկանց հետամնացությունը և յուրաքանչյուր քաղաքացու մոտ դաստիարակել նրբազգացություն, երբեմն առաջին հայացքից անտեսանելի, աչքի չզարնող գեղեցիկը խորապես զգալու կարողություն։ Այդ առումով շատ արժեքավոր է «Զարմանալին մեր շուրջը» կինոֆիլմը։ «Իմ ֆիլմի թեման,—պատմում է Սերգեյ Օբրազցովը,— այն հարցն է, թե ինչ է տաղանդը։ Ինձ թվում է, տաղանդը մարդու ունակությունն է տեսնելու այն, ինչ չեն տեսել ուրիշները, լսելու այն, ինչ չեն լսել ուրիշները, հասկանալու այն, ինչ չեն հասկացել ուրիշները... Եթե տասնից-տասներկու տարեկան տղան կամ աղջիկը չի զարմացել այն բանի համար, թե ինչպես է լվացվում ճանճը, եթե նրանց մոտ չի առաջանում ծիծաղ ճանճի թաթիկները իրար շփվելու տեսարանից, ապա հազիվ թե այդ երեխաներից աճեն տաղանդավոր մարդիկ... Ես ցանկացել եմ ցույց տալ, թե որքան կարևոր, և հարկավոր է սիրել կյանքը, բնությունը... Որքան կարևոր է երեխաների մեջ դաստիարակել սեր դեպի այն ամենը, ինչը կենդանի է, որովհետև դա նրանց սովորեցնում է լինել բարի ու հասկանալ գեղեցիկը...»։

Էսթետիկական կուլտուրան և, առաջին հերթին, ճաշակը պայմանավորված են մարդու էսթետիկական պահանջմունքներով։ Վերջիններս դրսևորում են մարդու ձգտումը դեպի որոշակի էսթետիկական իդեալները։ Նրանք կազմակերպում և ուղղություն են տալիս իրականության էսթետիկական որակների ճանաչմանը, նպաստում են մարդու էսթետիկական ճանաչողությանը կամ սահմանափակում այն։ Ահա թե ինչու էսթետիկական պահանջմունքների դաստիարակությունը հանդիսանում է կոմունիզմ կառուցող մարդու էսթետիկական զարգացման կարևոր խնդիրներից մեկը։ Էսթետիկական պահանջմունքների զարգացման կարևոր պայմանը դրանց բավարարումն է, որովհետև բավարարելով իր պահանջմունքները, մարդը ձևավորում է դրանք։ «Միայն,— գրել է Մարքսը,— երաժշտությունն է արթնացնում մարդու երաժշտական զգացմունքը, ոչ երաժշտական ականջի համար իմաստից զուրկ է ամենահիանալի երաժշտությունը»[1], ապա՝ «Այն պահանջմունքը, որ սպառումն զգում է առարկայի նկատմամբ,— առաջ է գալիս առարկայի ընկալմամբ։ Արվեստի առարկան, ինչպես և ամեն մի այլ արգասիք առաջ են բերում արվեստը հասկացող ու գեղեցիկով հրճվելու ընդունակ մարդիկ»[2]։

---

[1] Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, «Արվեստի մասին», հ. I, էջ 168։

[2] Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, «Արվեստի մասին», հատոր I, էջ 171։

Մարդկանց էսթետիկական պահանջմունքներն արտահայտվում են դեպի գեղեցիկը նրանց գիտակցական ձգտման մեջ, գեղեցիկ առարկաները, իրերը ճանաչելու, ձեռք բերելու մեջ։ Էսթետիկական պահանջմունքները անորսալի ուժով մարդուն ստիպում են խորասուզվել գեղեցկի աշխարհը, հարկադրում են հաղթահարել այն դժվարությունները, որոնց նա հանդիպում է գեղեցիկ նկարը, երաժշտական ստեղծագործությունը, քանդակը, ճարտարապետական հուշարձանը, թատերական ներկայացումը ընկալելիս։ Զարգացած էսթետիկական պահանջմունքները վկայում են մարդու բարձր կուլտուրայի մասին և նպաստում են նրա հոգևոր և ֆիզիկական ուժերի բազմակողմանի և ներդաշնակ զարգացմանը։ Խնդիրը կայանում է նրանում, որ մենք հասնենք ժողովրդի էսթետիկական խելացի, առողջ պահանջմունքների բավարարմանը և նրանց հեռու պահենք այլանդակից ու անճաշակությունից ինչպես կյանքում, այնպես էլ արվեստի բնագավառում։

Սակայն որքան էլ զարգացած լինեն մարդու էսթետիկական պատկերացումները, զգացմունքները, ճաշակները և պահանջմունքները, այնուամենայնիվ առավել կարևորը էսթետիկական գործունեության համար անհրաժեշտ ընդունակությունների ձևավորումն է։ Չէ՞ որ այս կամ այն արժեքների ստեղծման հենց բուն պրոցեսում է ձևավորվում անձնավորությունը։

Մարդկային գործունեությունը չափազանց բազմազան է։ Այն կարող է լինել համեմատաբար պարզ, երբ աշխատավորը, ինչպես ասում են, վառոդ չի հայտնագործում, անում է այն, ինչ որ թելադրվում է դրսից։ Դա աշխատանք է ըստ շաբլոնի, այն չի կարող հաճույք պատճառել։ Այլ է ստեղծագործական աշխատանքը, երբ աշխատավորը ազատ կերպով օգտագործելով իր մարդկային ընդունակությունները, գտնում է գործողությունների այնպիսի եղանակ, որը խստորեն թելադրվում է առաջադրված նպատակով, բխում է ստեղծվող առարկայի բնույթից։ Միմիայն այդպիսի ազատ, ստեղծագործական աշխատանքը կարող է մարդուն պատճառել հոգեկան մեծ բերկրանք։ Միայն այդպիսի ճանապարհով է ստեղծվում նորը, լավը, տեղի է ունենում հասարակության, ինչպես և մարդ-գործչի հարստացումը։ Այստեղից ակնհայտ է դառնում ստեղծագործական մակարդակի օբյեկտիվ ցուցանիշը՝ դա վարպետության, աշխատանքի ազատության աստիճանն է, աշխատանքի պրոցեսում օգտագործված օրինաչափությունների գիտակցման աստիճանը։

Այս բոլորը խոսում են այն մասին, որ գործունեության ցանկացած բնագավառում վարպետության բարձր մակարդակը, աշխատանքի կոնկրետ պայմանների առավելագույն ազատությունը ծնում են ստեղծագործություն ըստ գեղեցկության օրենքների։ Այդ պատճառով էլ մենք գնահատում ենք թե վիրտուոզ-քարտաշի աշխատանքը, և՛ թե մեծ գիտնականի մտքի գեղեցկությունը, մեզ հիացնում են բալետի վարպետների շարժումները և ականավոր հռետորի խոսքի գեղեցկությունը։ Հենց դրա վրա է խարսխվում աշխարհի էսթետիկական ճանաչողության ողջ սիստեմը, հենց այստեղ են շաղկապվում նյութական և հոգևոր արտադրությունը, այդ թվում և գեղարվեստական արտադրությունը։

Էսթետիկական ընդունակությունների հատուկ բնագավառը գեղարվեստական օժտվածությունն է, մարդու՝ իր ստացած էսթետիկական տպավորությունները, իրականության իր ընկալումները արվեստի միջոցներով մարմնավորելու և հաղորդելու ընդունակությունների ամբողջությունը։ Գեղարվեստական-ստեղ-



ծագործական օժտվածությունը իր մեջ ներառում է խոր հուզականություն, զարգացած դիտունակություն, պատկերավոր և ասոցիատիվ մտածողություն, որոնք հնարավորություն են տալիս մարդուն ոչ միայն պարզապես ընդօրինակելու, այլև ստեղծելու արվեստի հիասքանչ երկեր։



ՄԱՐԴԿԱՅԻՆ ողջ գործունեությունը, զգայորեն ընկալվող բովանդակ աշխարհը ներգործում են մարդու էսթետիկական գիտակցության վրա։ Իհարկե, կյանքի զանազան կողմեր տարբեր ներգործություն են ունենում։ Մարդու էսթետիկական գիտակցության վրա ազդող, հետևաբար և նրա էսթետիկական զարգացման ուժերը հանդիսանում են աշխատանքը, կենցաղը, բնությունը, արվեստը, էսթետիկան, արվեստագիտությունը և գիտելիքների այլ բնագավառներ, որոնք օգնում են մարդուն՝ հասկանալու և իմաստավորելու գեղեցիկը կյանքում և արվեստում։

Քննարկենք էսթետիկական զարգացման այդ գործոններից մի քանիսը։

Կ. Մարքսը տակավին իր վաղ շրջանի երկերում ցույց է տվել, որ մարդու ստեղծած առարկաները հանդիսանում են նրա հասարակական էության արտահայտությունը, որ որքան լայն է մարդկային աշխատանքի նպատակահարմարությունը, այնքան ազատ է աշխատանքը։ Նման աշխատանքը իրագործվում է ոչ միայն անհրաժեշտության, այլ գեղեցկության օրենքներով։ Մարդը ստեղծելով որևէ գեղեցիկ բան, դրանով իսկ հարստանում է ինքը, քանի որ նա իր ստեղծածի մեջ մարմնավորում է մարդկային բարձր ընդունակությունները։ Գեղեցիկ առարկան իր հերթին հարստացնում է ուրիշ մարդկանց։ Այսպիսով, մարդու ազատ աշխատանքով կյանքի կոչված գեղեցկությունը հանդիսանում է անփոխարինելի միջնորդ հասարակության և անհատի միջև, անձնավորության բազմակողմանի զարգացման անհրաժեշտ միջոց։ Իզուր չի ասվում, որ աշխատանքը և գեղեցկությունը անբաժանելի են և, պատահական չէ, որ ՍՄԿՊ Ծրագիրը պահանջում է դաստիարակչական աշխատանքի կենտրոնում դնել աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի զարգացումը հասարակության բոլոր անդամների մոտ։ Այդ պահանջը առանձնապես ընդգծված է ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշման մեջ. «Պարտիայի, սովետների, կոմսոմոլի գաղափարախոսական աշխատանքների սիրտը պետք է կազմի յուրաքանչյուր մարդու մոտ հասարակական օգտակար աշխատանքի նկատմամբ սիրո և հարգանքի դաստիարակությունը»։ Այստեղից դժվար չի նկատել, որ նոր, բազմակողմանիորեն ու ներդաշնակորեն ձևավորված մարդու զարգացումը ըստ էության համընկնում է ստեղծագործ աշխատանքի ուժով կյանքի կոչված աշխարհի էսթետիկական յուրացման օրենքների հետ։

Կենցաղը իբրև կանոն, շատ խոր ներգործություն է ունենում մարդու էսթետիկական գիտակցության վրա։ Կենցաղի բնույթը զգալիորեն փոխվել է և շարունակում է փոխվել։ Չէ՞ որ հասարակությունը այժմ դյուրացնում և իր վրա է վերցրել ընտանիքի տնտեսական, դաստիարակչական և այլ հոգսերի զգալի մասը։ Հետագայում զգալիորեն կաճեն կենցաղային պահանջմունքների բավարարման հասարակական ձևերը։ Բայց դա մեզ իրավունք չի տալիս կարծելու, թե կոմունիզմի օրոք չի զգացվի հարմարավետ կահավորանքի կարիք։ Ընդհակառակը, ընտանեկան հարաբերությունների հոգևոր հիմունքների ուժեղաց-

ման հետ միասին կմեծանա ընտանեկան օջախը համակողմանիորեն գրավիչ դարձնելու պահանջը։ Դրան կնպաստի նաև ազատ ժամանակի մեծացումը, որի շնորհիվ կմեծանա ընտանիքում մարդկանց անցկացնելիք ժամանակը։

Մարդու կենցաղը դա առաջին հերթին նրա բնակարանն է։ Բնակարանի և՛ արտաքին տեսքը, և՛ ներքին ձևավորումը սովորաբար էսթետիկական ներգործություն են ունենում մարդու ճաշակի վրա, մի հանգամանք, որը չի կարելի անտեսել։ Ներկայումս արդեն բնակարանային շինարարության մեջ սկսում են ուշադրություն դարձնել ոչ միայն քանակի, այլև նրա էսթետիկական կողմերի վրա։ Կոմունիզմի գլխավոր տնտեսական խնդրի՝ նյութա-տեխնիկական բազայի ստեղծմանը զուգահեռ, մենք ամբողջովին կհրաժարվենք միատեսակ, անարտահայտիչ տուն-արկղներ կառուցելու պրակտիկայից, կհասնենք այնպիսի մակարդակի, երբ տառացիորեն յուրաքանչյուր բնակարան կլինի գեղարվեստորեն արտահայտիչ, անկրկնելիորեն գեղեցիկ։ «Մեր բնակեցրած բոլոր շենքերը» վերածել արվեստի երկերի՝ ահա այն տենդենցը, որը ճանապարհ կհարթի իր համար, բայց «բնակարանային քաղցը» հաղթահարելուց հետո միայն։

Այսօր արդեն մեր առջև խնդիր է դրված այնպես անել, որ սովետական մարդկանց ճաշակը հեշտությամբ բավարարվի տնային գործածության առարկաների հարուստ ընտրությամբ, այնպիսի առարկաների, որոնք պատրաստված լինեն ոչ միայն ըստ անհրաժեշտության, այլև ըստ գեղեցկության օրենքների։ Դրա համար անհրաժեշտ է վերացնել ցածրորակ, հակագեղարվեստական «լայն սպառումը»՝ ճանապարհ տալով բարձր որակի կիրառական արվեստին, գեղեցիկ և բազմազան արտադրանքին։ Մենք այժմ արդեն ներկայացնում ենք էսթետիկական խիստ պահանջներ կենցաղային տեխնիկայի առարկաներին և ձգտում ենք այն բանին, որ այդ իրերի ձևերը լինեն էսթետիկորեն բազմազան ու բավարարեն տարբեր ճաշակները։ Դժբախտաբար մեզ մոտ դեռևս բոլոր սառնարանները պարտադիր կերպով սպիտակ գույնի են, իսկ էլեկտրահաշվիչները սև գույնի։ Նման միակերպությունը հետագայում, անշուշտ կվերացվի։

Գոյություն ունի մեզ շրջապատող միջավայրի էսթետիկական ներգործության մի բնագավառ ևս և այն կապված է քաղաքի ու գյուղի միջև եղած կուլտուր-կենցաղային էական տարբերությունների վերացման հետ։ Կարելի է ենթադրել, որ ապագա քաղաք-պարտեզները, որոնք կկառուցվեն ըստ գեղարվեստական գլխավոր պլանի, իբրև ճարտարապետության, պարտեզ-զբոսավայրային արվեստի, մոնումենտալ-քանդակագործական և գեղանկարչական միջոցների սինթեզ, ոչ պակաս էսթետիկական ներգործություն կունենան մարդկանց վրա, քան մեր գեղեցկուհի Լենինգրադը։ Արդեն առկա են առաջին փորձերը՝ գերազանցապես կուրորտային շինարարության բնագավառում։ Չափազանց հետաքրքրական և ուշագրավ է բուլղարական «Արևային ափ» կոչվող կուրորտի գեղարվեստական լուծումը, որը տվել է ճարտարապետների մի խումբ՝ Նիկոլայ Նիկոլովի գլխավորությամբ։ Մեզ մոտ՝ Մասանդրայում, Արտեկում և այլ վայրերում ճարտարապետ-արվեստագետները, հաղթահարելով մի շարք դժվարություններ, իրականացրել են մեծ մասշտաբի մտահղացումներ։

Էսթետիկական դաստիարակության կարևոր գործոն է բնությունը։ Բնությունը, մարդկության օրրանը և արհեստանոցը, նրա գոյության հավերժական



այդ պայմանը միայն այն ժամանակ դարձավ «էսթետիկական դաստիարակ», երբ մարդն ամենազոր աշխատանքով իրեն հպատակեցրեց բնությունը, իր մեջ դաստիարակեց «բնության մարդկային զգացումը» (Մարքս)։ Հենց դրանից հետո մարդու հայացքի առջև բացվեց լեռների ու ծովերի, աստղերի ու հովիտների, անտառների ու դաշտերի անսպառ գեղեցկությունը։ Իզուր չէ, որ անցյալի շատ մտածողներ զգացին բնության վեհացնող ներազդեցությունների ուժը, իսկ նրանցից ոմանք (Ռուսսո, Տոլստոյ և ուրիշներ) կոչ արեցին՝ «ետ դեպի բնությունը», կարծելով, թե դրանով կարող են մարդկությանը փրկել «քաղաքակրթության» արատներից։

Մարքսիզմ-լենինիզմը պսակազերծեց բնության փրկարար դերի վերաբերյալ ուտոպիան և ապացուցեց, որ առանց մարդկությանը ամեն տեսակ սոցիալական անարդարություններից ազատագրելու, բնությունը չի կարող նրա կյանքում խաղալ էսթետիկական լիարժեք դեր։ Միմիայն կոմունիզմը, իրագործելով Գորկու հերոս Բուսլաևի՝ մայր-աշխարհը զարդարելու մասին երազանքը, բնությունը կվերածի մշտապես գործող էսթետիկական գործոնի։

Կոմունիստական հասարակարգի մարդը բնության նկատմամբ կունենա բոլորովին այլ վերաբերմունք, քան մեր ժամանակակիցներից շատերը, մասնավորապես քաղաքաբնակները, որոնց կապը բնության հետ գերազանցապես կրում է «ամառանոցային», իսկ լավագույն դեպքում՝ տուրիզմի բնույթ։

Բնության հետ ամառանոցային կապերի հաղթահարումը, դրանց վերածելը մշտական, որակապես այլ կապերի՝ կապված նոր բնակարանա-կենցաղային («քաղաք-պարտեզներ»), արտադրական («կանաչ» արտադրամասեր), տեխնիկական և այլ պայմանների հետ, յուրաքանչյուր մարդու կմոտեցնեն աշխարհագրական միջավայրին։ Այդ ամենը մեծապես կուժեղացնեն իրական և վերափոխված բնության էսթետիկական ազդեցությունը մարդու վրա։ Մարդու մերձեցումը բնությանը կունենա մի այլ բարերար հետևանք ևս՝ կուժեղանա արվեստի «բնական» ժանրերի ներգործությունը մարդկանց վրա։ Չէ՞ որ բնությունը հասկացող և սիրող մարդը միայն կարող է լիարժեք կերպով ընկալել կերպարվեստի և առավել ևս խոսքի արվեստի բնանկարային և անիմալիստական ժանրերը։ Պրիշվինի ստեղծագործության գրեթե ողջ հմայքն ընթերցողին անմատչելի կմնա, եթե նա չգիտե անտառը, նրա բուսական և կենդանական աշխարհը։ Դա վերաբերում է նաև Րաֆֆու, Մուրացանի, Թումանյանի, Բակունցի, Վ. Անանյանի և բնանկարի այլ վարպետների ստեղծագործություններին։ Թե մեզ մոտ ինչ նշանակություն է տրվում բնությանը որպես էսթետիկական-դաստիարակչական գործոնի, վկայում են այն միջոցառումները, օրենքները, որոնք բնության պահպանման նպատակով ընդունվել են միութենական ռեսպուբլիկաներում։

Էսթետիկական դաստիարակության կարևոր, բայց համեմատաբար քիչ ուսումնասիրված գործոններ են մարդկանց հաղորդակցական զանազան ձևերը, նրանց վարքը, իրենց պահելու մաներան, խոսքը և այլն։ Պարզ է, որ մարդկային ամենօրյա փոխհարաբերությունների էսթետիկական մակարդակը դատարկ բան չէ, որ էսթետիկական պահանջկոտությունը պետք է դրսևորվի թե՛ մեծ և թե՛ փոքր գործերում։ Չէ՞ որ մարդը գեղեցիկ է իր վարքագծի ամբողջականությամբ, իր բարոյա-էսթետիկական սկզբունքների հետևողականությամբ։ Նման մարդու կյանքը չի բաժանվում երկու անկախ՝ «առտնին» և «հանդիսավոր» կողմերի։

Վերջերս մեր մամուլում իրավացիորեն բարձրացվեց «տոնական» զգեստների, «հանդիսավոր» հանդամանքների չափից դուրս պաշտամունքի վերածվելու՝ իբրև ինքնակողոպտման, իրերի քաղքենիական պաշտամունքի մնացուկի հարցը: Մեզ մոտ դեռևս հանդիպում են այնպիսի բնակարաններ, որտեղ ապաշնորհ տանտերերը օրերով, իսկ երբեմն շաբաթներով խաղաղ գոյակցում են փայտոջիլների, կեղտի և անկարգության հետ, իսկ տոներին կամ հյուրընկալության ժամանակ այդ բոլորը վերացվում են, սենյակին տրվում է արտաքին շուք, փռվում են գորգեր, մաքուր անձեռոցիկներ, որոնք հյուրերի գնալուց հետո անմիջապես հավաքվում են: Այդպիսի բնակարանի են նմանվում որոշ մարդիկ, որոնք իրենց հոգևոր տնտեսությունը մաքրում են ի տես, ի ցույց: Կարելի է հանդիպել երիտասարդների, որոնք գրում են հաջողված շարադրություններ սիրանքի մասին, սակայն փողոցում շարժվում են անցորդներին հրելով, աղջիկների ետևից շպրտում են փողոցային հիշոցներ: Նմանօրինակ մարդիկ շատ հաճախ իրենց համարում են կուլտուրական և չեն նկատում իրենց վարքում բուն դրած հակաէսթետիկականը: Քաղաքավարությունն ու բարեկիրթ վարվեցողությունը մարդասիրության դրսևորումներն են: Կուլտուրական մարդը ճաշասեղանի շուրջը չի չպացնի ոչ թե այն պատճառով, որ այդպես չի թույլատրվում, այլ որովհետև դա տհաճ է շրջապատի մարդկանց համար: Նա այդ նույն պատճառով չի աղմկի ուրիշի պատուհանի տակ, ռադիոն չի միացնի այնպես, որ ձայնը լսվի ամբողջ թաղամասում: Ոչ մի կանոնագրքում հնարավոր չէ նախատեսել կյանքի այն բոլոր դեպքերը, երբ հարկավոր է ցուցաբերել քաղաքավարություն, իսկ էսթետիկորեն զգայուն մարդը ցանկացած դեպքում կգտնի ելքը:

Մի քանի բառ խոսքի էսթետիկայի մասին:

Ուրախալի է, որ վերջին շրջանում էսթետիկական դաստիարակության այդ կարևոր միջոցին լուրջ ուշադրություն է դարձվում մեր մամուլում: Մեր լեզուն աստիճանաբար ազատվում է օտարամոլությունից, անհարկի ռուսաբանությունից և «գրասենյակայնությունից»: Վերականգնվում է անարդարացիորեն մոռացության մատնված հռետորական արվեստը: Հրատարակվում են գրքեր խոսքի կուլտուրայի մասին, հումանիտար գիտությունների գծով մասնագիտացող ուսանողների համար մտցվում են ճարտասանության դասընթացներ և այլն: Հավանաբար, այս բնագավառում մենք հասել ենք այնպիսի մի մակարդակի, երբ այլևս անթույլատրելի է անտեսել խոսքի էսթետիկան: «Լեզվաստեղծ-ժողովրդին, խոսքի մեծ արվեստագետին,— գրել է Կ. Չուկովսկին,—քիչ է լեզվի լոկ ռացիոնալիստական կողմը: Նրան հարկավոր է, որ լեզուն լինի հարթ և կանոնավոր, որպեսզի նրանում լինի ռիթմ, երաժշտություն և գլխավորը լինի արտահայտչականություն»:

Ինչքան էլ հարուստ, բազմակողմանի լինի մարդու իրական կենսափորձը, պրակտիկան, այնուամենայնիվ նա միմիայն վերը նշված միջոցներով չի կարող հասնել էսթետիկական կուլտուրայի բարձունքներին: Ուստի նյութական-գործնական փորձի սահմանափակությունը փոխհատուցվում է հոգևոր-գործնական միջոցով՝ արվեստով: Հիրավի, որքան էլ գեղարվեստական սկիզբը թափանցի մարդու կենցաղի մեջ, ինչպիսի էսթետիկական հաճույք էլ նա ստանա իր աշխատանքից, բնությունը դիտելուց, այլ մարդկանց հետ շփվելուց, ֆիզկուլտուրայով ու սպորտով զբաղվելուց և այլն, միևնույն անձի զարգացումը արվեստից կտրված, թերի է, միակողմանի, ոչ լիարժեք:



Արվեստը և գրականությունը լրացնում են այն պակասը, ինչ բացակայում է մարդու անձնական կենսափորձում: Բացի դրանից արվեստը գործ ունի մարդկային գիտակցության և հոգեկանի նուրբ ոլորտների հետ: Արվեստը անձնավորության էսթետիկական զարգացման գլխավոր և անփոխարինելի միջոց է: Այն ազդում է մարդու ոչ միայն մտքերի, այլև զգացմունքների, երևակայության, կամքի, այսինքն՝ նրա հոգեկան բոլոր կողմերի վրա: Արվեստի ներազդեցության հենց այդ ուժի մեջ թաքնված են նրա դերը գերագնահատելու որոշ պատճառներ, որոնք ոմանց հանգեցրին այն մտքին, որ իբրև թե արվեստը հանդիսանում է մարդկությանը բոլոր տառապանքներից փրկելու միակ միջոցը: Սակայն իր զորությամբ հանդերձ, արվեստը մնում է իբրև հոգևոր, իդեալական ուժ և վերնաշենք նյութական իրականության նկատմամբ ու միայն օգնում է աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման պրակտիկային: Արվեստը կոչված է մի կողմից բարելավելու անձնավորության և հասարակության էսթետիկական պահանջմունքները, մյուս կողմից՝ զարգացնելու այդ պահանջմունքները, դրանք բարձրացնելու նոր, առավել բարձր աստիճանի:

Դեպի կոմունիզմ մեր առաջընթացին համեմատ ավելի ու ավելի է մեծանում էսթետիկական գործոնների դերը:

Կարելի է վստահորեն ասել, որ կոմունիզմի օրոք էսթետիկական դաստիարակության բոլոր միջոցները կօգտագործվեն առավել արդյունավետությամբ, կստեղծվի էսթետիկական դաստիարակության խիստ գիտական մի համակարգ, որը թույլ կտա արագորեն ձևավորել հասարակության յուրաքանչյուր անդամի էսթետիկական գիտակցությունը, որը համակողմանիորեն զարգացած մարդու դրսևորումներից մեկն է:



# ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ՈՐԱԿԸ ԵՎ ՆՐԱՆՑ ԳՆԵՐԸ

Ա. ԹՈՒՄԱՍՅԱՆ

Ժողովրդական սպառման ապրանքների որակի բարձրացումը մեր էկոնոմիկայի արդի կարևորագույն պրոբլեմներից մեկն է. այն դարձել է օրակարգի հարց և պահանջում է անհետաձգելի լուծում։ Մեծ չափով ընդլայնվել է ժողովրդական լայն սպառման առարկաների արտադրության ծավալը, իսկ այդ պայմաններում ապրանքի որակը դառնում է իրացման վճռական գործոն։

Այս պրոբլեմի հրատապությունը ցույց է տալիս այն հանգամանքը, որ համապատասխան որակ չունենալու պատճառով մեծ չափերի են հասնում առևտրական ցանցում կուտակված արդյունաբերական ապրանքների պաշարները։ Այսպես, մինչև 1964 թվականի հունվարի 1-ը արդյունաբերական ապրանքների պաշարները Միության մասշտաբով հասել էին 160 շրջանառության օրվա (3 անգամ ավելի, քան 1940 թվականին)։ Ընդ որում առանձին ապրանքային խմբերի պաշարներն ավելի քան շատ էին։ Օրինակ, մետաքսյա և մահուդե գործվածքների ապրանքային պաշարները հասել էին 288—289 ապրանքաշրջանառության օրվա և այլն։

Դրությունն այժմ էլ բարվոք չէ։ Այդ կարելի է ցույց տալ մեր ռեսպուբլիկայի օրինակով։ Հայկական ՍՍՌ-ում միայն պետական առևտրի սիստեմի օբյեկտներում արդյունաբերական ապրանքների պաշարների մնացորդը մինչև 1964 թվականի հոկտեմբերի 1-ը նորմայով սահմանված 57631 հազար ռուբլու փոխարեն կազմել է 69677 հազար ռուբլի. գերնորմատիվային մնացորդը հասել է 12.046 հազարի։ Իսկ որոշ ապրանքային խմբերի գերնորմատիվային մնացորդները հասել են հետևյալ չափերի. բամբակյա գործվածքեղենինը՝ 1014 հազար, մահուդի գործվածքեղենինը և այլ արտադրանքինը՝ 1764, պատրաստի հագուստեղենինը՝ 1100, գալանտերեայի ապրանքներինը՝ 1309 հազար ռուբլի և այլն։ Ահա թե ինչու ՍՍՌՄ Գերագույն սովետի սեսիան ստիպված էր 1965 թվականի պետական բյուջեում նախատեսել հսկայական գումար՝ մոտ 1300 միլիոն ռուբլի, այն ապրանքների գների իջեցման համար, որոնք այլևս չեն համապատասխանում ժամանակակից մոդայի պահանջներին և մասամբ կորցրել են իրենց նախնական որակը։

Ձևն ու սկզբնական որակը կորցնելու հետևանքով ապրանքների գների իջեցումից՝ առևտրական կազմակերպությունների կրած վնասները պատկերաց-



նելու համար բավական է նշել, որ միայն Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրության սիստեմում 1964 թվականին վնասները հասել են 4278 հազար ռուբլու։ Այսպես, օրինակ, 2812 հազար ռուբլու պատրաստի հագուստեղենի ու սպիտակեղենի գներն իջեցվել են 1423 հազար (49,4 տոկոսով), 1968 հազար ռուբլու մահուդի գործվածքեղենինը՝ 1094 հազար (44,4 տոկոսով), 1082 հազար ռուբլու կոշկեղենինը՝ 559 հազար ռուբլով (48,3 տոկոսով) և այլն։

ՀՍՍՌ Առևտրի մինիստրության՝ ապրանքների որակի պետական տեսչության կողմից 1964 թվականին անցկացված ստուգումները ցույց տվին, որ դեռևս ցածր է ռեսպուբլիկայի ձեռնարկություններում թողարկվող արտադրանքի որակը։ Այսպես, ժողտնտխորհի, մինիստրությունների ու գերատեսչությունների արդյունաբերական 114 ձեռնարկություններում և առևտրական մոտ 97 օբյեկտներում կատարված ստուգումներից հետո խոտանվել է 39 ձեռնարկության արտադրանքի մոտ 10 տոկոսը, 37 ձեռնարկության՝ 10—50 և 32 ձեռնարկության արտադրանքի 50 տոկոսից ավելին, որոնք վերադարձվել են արտադրություն՝ համապատասխան վերափոխումների։ Բացի այդ, իջեցվել է ստուգված 252600 ապրանքների 5 տոկոսի տեսակը։

Ցածրորակ արտադրանք թողարկելու պատճառով 1964 թվականի տարբեր ժամանակաշրջանում արգելվել է 25 ձեռնարկության արտադրանքի բացթողումը, այդ թվում՝ 4 ձեռնարկությանը մինչև 1, 11 ձեռնարկությանը՝ 1—1,5 ամսով, իսկ 10 ձեռնարկությանը՝ 1,5 ամսից ավելի ժամանակով։ Ստուգումներից հետո արտադրությունից հանվել է նաև մի շարք այնպիսի ապրանքների թողարկումը, որոնց որակը չի համապատասխանում սպառողների պահանջներին։

Ցավն այն է, որ այդ ձեռնարկությունները զգալի խոտան տալով հանդերձ, մյուս տեխնիկա-տնտեսական ցուցանիշների կատարման ֆոնի վրա երբեմն դասվում են առաջավորների շարքը։ Այդ տեսակետից բնորոշ է, հատկապես, կոշկի արդյունաբերությունը։ Այսպես՝ կոշկի միավորման «Մասիս» ֆիրմայի Լենինականի № 2 ֆիլիալը 1965 թվականի 5 ամսվա ընթացքում ստացել է 11 բողոք։ Ձեռնարկությանը ետ են վերադարձվել 1099 զույգ խոտան կոշկեղեն, իջեցվել է 702 զույգի տեսակը, իջեցված տեսակների գների տարբերության և վճարված տուգանքների գումարը հասել է 1923 ռուբլու։

Չնայած դրան, 5 ամսվա համախառն արտադրանքի պլանը տվյալ ձեռնարկությունը կատարել է 105,6 տոկոսով, բնաձևով՝ 101,9 տոկոսով։ Արտադրըված կոշկեղենի առաջին տեսակը պլանով նախատեսված 75,9 տոկոսի դիմաց կազմել է 78,3 տոկոս։ Մինչդեռ Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրության որակի գծով պետտեսչությունը տեղում ստուգել է ֆիլիալի առաջին տեսակի դրոշմը կրող (դրոշմել է ՏՎԲ-ն տեխնիկական վերահսկողության բաժին) 1550 զույգ կոշկեղեն. պարզվել է, որ դրանք չեն համապատասխանում նախատեսված որակին. իջեցվել է 246 զույգի, կամ 16,0 տոկոսի տեսակը, և խոտանվել է 52 զույգ կամ 3 տոկոսը։ Այնուհետև ստուգումից պարզվել է, որ կոպիտ կերպով խախտվում են նախատեսված 56 տեխնոլոգիական գործողություններից 6-ը։ 1965 թ. առաջին կիսամյակում «Հայկոշիկառը» իր կողմից ստուգված կոշկեղենի մոտավորապես 11 տոկոսը խոտանել կամ տեսակն իջեցրել է։ Վերջերս Հայկական ՍՍՌ Առևտրի մինիստրությունը հատուկ հրամանով (29 հունիսի 1965 թ. № 169) առևտրական բոլոր կազմակերպություններին արգելել է ընդունել «Մասիս» ֆիրմայի Լենինականի № 2 ֆիլիալի արտադրած կոշկեղենը։

Այսպիսին է վիճակը նաև կոշկի մնացած ձեռնարկություններում: «Մասիս» ֆիրմայի Երևանի № 1 ֆիլիալը նույնպես կատարել է 1965 թվականի առաջին կիսամյակի պլանը համախառն արտադրանքի գծով 121,8, բնաձևով 104,9 տոկոսով, սակայն այդ ժամանակամիջոցում առևտրական կազմակերպություններից ստացվել է 38 բողոք, խոտանվել է 7268 զույգ կոշկեղենի տեսակը և թերությունների վերացման համար ետ են վերադարձվել 11000 զույգը: Տեսակների իջեցումից առաջացած վնասը և կիրառված տույժերի գումարը հասել է 15000 ռուբլու: Չնայած դրան, նման արտադրանք թողարկողները դարձյալ վարձատրվել են լիարժեք արտադրանքի դրույքով: Ավելին, պլանը գերակատարողներն էլ ստացել են հավելյալ պրոգրեսիվ վարձատրություն [1]:

Ժողովրդական սպառման ապրանքների որակը պայմանավորված է մի շարք գործոններով՝ արտադրության տեխնիկայով ու տեխնոլոգիայով, հումքի ու նյութերի որակական հատկանիշներով, աշխատողների որակավորման մակարդակով, արտադրության և շրջանառության ոլորտի տեխնիկական ու կազմակերպչական միջոցառումների ամբողջությամբ և այլն: Ժողովրդական լայն սպառման առարկաների որակի բարձրացման առավել խթանող գործոն է նաև գների ճիշտ սահմանումը, որն, իր հերթին, պայմանավորված է մի շարք գործոններով, ինչպես և առաջարկով ու պահանջարկով: Անտարակույս, եթե առևտրական կազմակերպություններում բարձր հիմքերի վրա դրվի ու ճշտորեն ուսումնասիրվի գնորդների սպառողական պահանջարկը, իսկ արտադրությունն ապրանքները թողարկի բացառապես առևտրական կազմակերպությունների պատվերներով, ապա ապրանքների կուտակումները կհասնեն մինիմումի: Սակայն այս միջոցառումների իրականացման դեպքում էլ ճնարավոր չէ խուսափել ապրանքների կուտակումներից, եթե դրանք ցածրորակ են:

Կարելի է համաձայնել այն տնտեսագետների հետ, որոնք առաջարկում են շրջանառության հարկը գանձել ոչ թե մեծածախ առևտրական կազմակերպություններից կամ արդյունաբերական ձեռնարկություններից, այլ մանրածախ առևտրական կազմակերպություններից: Այդ հանգամանքը կհարկադրի ֆինանսական օրգաններին՝ ըստ ամենայնի հետևելու ապրանքների տեղաշարժին՝ ընդհուպ մինչև նրանց վաճառքը: Անկասկած նկատելիորեն կարագացվի ապրանքների իրացումը, ուրեմն և՝ դրամական միջոցների շրջանառությունը: Սակայն նման պարագայում էլ ապրանքների իրացման հիմնական պայմանը դարձյալ նրանց բարձր որակն է:

Այստեղից անհրաժեշտ է լուսաբանել այն հարցը, թե գների սահմանման գործող պրակտիկան որքանով է նպաստում ժողովրդական լայն սպառման առարկաների որակի բարձրացմանը: Հարկ է ասել, որ գների սահմանման այժմյան գործող կարգը լիովին չի խթանում տվյալ տեսակի ապրանքի որակի սիստեմատիկ բարելավմանը, քանի որ ձեռնարկությունը փաստորեն նյութապես շահագրգռված չէ դրանում:

Արտադրանքի որակի բարելավման գործում անժխտելի է աշխատանքի արտադրողականության բարձրացման, ինքնարժեքի սիստեմատիկ իջեցման, տեխնիկայի ու տեխնոլոգիայի կատարելագործման, տեխնիկական պրոգրեսի, ռացիոնալիզատորական առաջարկությունների ու նորարարության փորձի ներդրման, ինչպես նաև բարոյական ու այլ գործոնների վճռական դերը: Այնու-

[1] Տվյալները բերված են ՀՍՍՌ Առևտրի մինիստրության որակի Պետտեսչությունից:



հանդերձ, որակի բարելավումը կապված է որոշ նյութական, հումքային և աշ-
խատանքային ծախսումների հետ, որոնք պահանջում են լրացուցիչ դրամա-
կան միջոցներ: Նյութական շահագրգռվածության բացակայության պայման-
ներում հնարավոր չէ հասնել որակի շոշափելի բարելավման: Արտադրանքի
որակը սիստեմատիկաբար բարելավելու մոդային և գնորդների պահանջներին
համապատասխան ապրանքներ թողարկելու համար ձեռնարկությունները ան-
ընդհատ պետք է փոփոխություններ մտցնեն արտադրության տեխնիկայի և
տեխնոլոգիայի մեջ, բարձրացնեն կադրերի որակավորումը, որոնք լրացուցիչ
ծախսումներ են պահանջում, հետևապես բարձրացնում են արտադրանքի ինքն-
արժեքը: Այդ բոլորի հետևանքով իջնում է ձեռնարկության շահութաբերու-
թյունը և նրա ղեկավարները խարազանվում են տեխնիկա-տնտեսական ցու-
ցանիշների պլանները թերակատարելու համար: Այլ խոսքով, ձեռնարկություն-
ների և նրանցում աշխատողների նյութական շահագրգռվածության գործող
սիստեմը դեռևս օբյեկտիվ պայմաններ չի ստեղծում թողարկվող արտադրան-
քի որակն անընդհատ բարելավելու համար: Բարձրորակ արտադրանք թողար-
կելու համար ձեռնարկությունների և նրանցում աշխատողների նյութական շա-
հագրգռվածության սիստեմի կատարելագործումը մոտակա ժամանակի հրա-
տապ հարց է: Թողարկվող արտադրանքի որակի սիստեմատիկ բարելավման
ելակետային ուղին՝ ձեռնարկությունների ու նրա աշխատողների նյութական
շահագրգռվածությունն է:
Ժողովրդական լայն սպառման առարկաների գների երկար ժամանակ ան-
փոփոխ մնալը բացասաբար է անդրադառնում որակի բարելավման նյութական
խթանման վրա: Ակներև է, որ լոկ կազմակերպական միջոցառումների իրակա-
նացումը հնարավորություն չի տալիս թողարկվող արտադրանքի որակի բարձ-
րացման գործում էական հաջողությունների հասնելու:
Որակի բարելավման ուղղությամբ կատարված ծախսումները փոխհատու-
ցելու համար հաճախ ձեռնարկությունները հարկադրված են լինում փոխել ար-
տադրանքի ասորտիմենտը: Այդ դեպքում կատարվում են չնչին, ոչ որակական,
ավելի շուտ ձևական փոփոխություններ (գույների, զարդերի) և տվյալ ապրան-
քի գինը այլ պիտակի (արտիկուլի) քողի տակ թանկացնում են: Նպատակա-
հարմա՞ր է արդյոք այս քայլին դիմել: Մի՞թե ձեռնարկությունն իրավասու չէ
առանց թողարկվող արտադրանքի անվանումը փոխելու բարելավել նրա որա-
կը: Նման քայլն, ըստ էության, անհրաժեշտ է կատարված «ավելորդ» ծախ-
սերն արդարացնելու, մյուս կողմից էլ՝ համախառն արտադրանքի պլանը կա-
տարելու նպատակով: Իսկ գնորդների համար հանելուկ է մնում այն, թե ինչո՞ւ
են երբեմն փոփոխվում ապրանքի գները: Օրինակ, վերջերս այդ ձևով փոխվել
են Լենինականի գուլպայի ֆաբրիկայում թողարկվող տղամարդու առաձգական
գուլպաների գները: Կարելի է բերել բազմաթիվ նման օրինակներ:
Այս պարսավելի պրակտիկան վերացնելու նպատակով անհրաժեշտ է գնա-
գոյացման հիմնական սկզբունքների հիման վրա որոնել գների սահմանման
առավել ռացիոնալ ձևեր:
Արդյունաբերության կառավարման նոր ձևը և պլանավորման կատարելա-
գործումը արմատական բեկում են մտցնում արդյունաբերական արտադրության
տնտեսական խթանումը ուժեղացնելու գործում: Այժմ ձեռնարկության պլա-
նավորման առանցքը իրացրած արտադրանքի ծավալի և շահութաբերության
ցուցանիշների սահմանումն է, որոնք ուղղված են ուժեղացնելու նրա տնտեսա-

կան խթանումը և ամրապնդելու տնտեսական հաշվառքը: Այս տնտեսական ռեֆորմը նյութապես շահագրգռում է ձեռնարկությանը թողարկելու բարձրորակ արտադրանք, ապահովելու արտադրանքի իրացման և շահութաբերության առաջադրանքը:

ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան (1965) պլենումում Ա. Ն. Կոսիգինը «Արդյունաբերության կառավարումը բարելավելու, պլանավորումը կատարելագործելու և արդյունաբերական արտադրության տնտեսական խթանումը ուժեղացնելու մասին» զեկուցման մեջ նշում է. «Անհրաժեշտ է պլաններում նախատեսել արտադրանքի տեխնիկական մակարդակի ու որակի կարևորագույն ցուցանիշը և դրա համար անհրաժեշտ ֆինանսական, աշխատանքային և նյութական ռեսուրսները»:

Այնուհետև նա ընդգծում է՝

«Արդյունաբերական արտադրության տնտեսական խթանման նոր ձևերին ու մեթոդներին անցնելու համար անհրաժեշտ է բարելավել գնագոյացման սիստեմը: Գները պետք է ավելի ու ավելի մեծ չափով արտացոլեն հանրայնորեն անհրաժեշտ աշխատանքի ծախսումները, ապահովեն արտադրության ու շրջանառության ծախքերի հատուցումը և նորմալ աշխատող յուրաքանչյուր ձեռնարկության շահութաբերությունը»:

Պահպանելով անգամ գների կայունությունը, հնարավոր է խթանել որակի սիստեմատիկ բարելավումը: Նպատակահարմար է տարեկան պլաններում որակի բարելավման նպատակով նախատեսել որոշակի միջոցներ: Այդ ծախքերը կփոխհատուցվեն մասամբ ի հաշիվ ինքնարժեքի իջեցումից առաջացող միջոցների, մասամբ էլ բարձրորակ ապրանքների պտույտի արագացման շնորհիվ ստացված լրացուցիչ եկամուտների հաշվին:

Բայց գլխավորն այդ չէ: Պետք է առավել դիֆերենցիացիայի ենթարկել (շերտավորել) ժողովրդական լայն սպառման առարկաների մանրածախ գները: Այժմ գնացուցակներում նշվում է ապրանքի միայն առաջին տեսակի գինը և մատնանշվում է 2-րդ ու 3-րդ տեսակի ապրանքների համար նախատեսվող զեղչի չափը. վերջիններս գրեթե ձևական բնույթ են կրում: Սովորաբար թողարկվող ապրանքի չնչին մասն է լինում ցածր տեսակի, այն էլ պարզորոշ ու արտահայտիչ դրոշմանիշ չունենալու պատճառով հաճախ դառնում է չարաշահումների առարկա:

Նախ՝ անհրաժեշտ է վերանայել ցածր տեսակի ապրանքների համար նախատեսված զեղչերի չափը այն ավելացնելու իմաստով, այնուհետև՝ ամրապնդել «չտեսակավորված» ապրանքների կատեգորիան, իսկ որ կարևորն է, վերանայել և ըստ էության մշակել համապատասխան պետական ստանդարտներ, խիստ սահմանազատել տեսակների բնորոշ գծերը, սահմանելով ապրանքների դրոշմանիշների առավել պարզեցված ու արտահայտիչ ձև: Որպես կանոն, առաջին տեսակի արտադրանքի թողարկման պլանը նախատեսվում է առավելագույն չափի, այնուհետև թողարկվող արտադրանքը, անկախ նրա որակից, հասցվում է (հարմարեցվում է) պլանային ցուցանիշին: Ժամանակն է, սակայն, պայքարել իրոք կատարյալ առաջին տեսակի արտադրանքի թողարկման համար և տեսակը որոշել ու նշել ըստ էության, որակին համապատասխան:

Ավելին, մեր կարծիքով նպատակահարմար է, բացի տեսակների ստորաբաժանումից, յուրաքանչյուր ապրանքի համար սահմանել առնվազն երկու կատեգորիայի գին, ելնելով նրա սպառողական հատկություններից ու որակական



հատկանիշներից: Եթե թողարկվող արտադրանքը ստորաբաժանվի երկու կատեգորիայի, ձեռնարկությունը սկզբնական շրջանում (առաջին մեկ-երկու տարին) կյուրացնի և կթողարկի 2-րդ կատեգորիայի արտադրանք՝ իր լիարժեք որակական հատկանիշներով: Այնուհետև, ձեռնարկությունը նյութական շահագրգռվածությունից դրդված կձգտի թողարկել այնպիսի արտադրանք, որն իր որակական ցուցանիշներով կհամապատասխանի առաջին կատեգորիայի արտադրանքին, դրա համար կատարած լրացուցիչ ծախքերը կհատուցվեն երկու կատեգորիաների գների տարբերությամբ: Ընդ որում, ոչ ոք չի կարող արգելել հիմնարկությանը՝ առաջին իսկ տարվանից արտադրել բարձրորակ արտադրանք, որն իր սպառողական հատկություններով ու որակական հատկանիշներով համապատասխանի առաջին կատեգորիայի ապրանքին: Առաջարկվող կարգի ներդրման դեպքում նույն ապրանքի երկու կատեգորիաների սպառողական հատկությունների տարբերությունը պետք է լինի պարզորոշ ու ակնառու և այն ցուցադրվի ինչպես հարկն է:

Գների նման դիֆերենցիացիայի առավելությունն այն է, որ որակի բարձրացման համար մղվող համաժողովրդական պայքարը կունենա ամուր նյութական հիմք: Նյութական և բարոյական խթանման ճիշտ զուգակցումը կտա իր որոշակի պտուղները՝ կհանգեցնի շիտակ ճանապարհով տնտեսական արդյունավետության բարձրացման: Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ արտադրությունը պետք է զարգացնել ոչ թե բարոյական խթանմամբ, այլ նրա օգնությամբ՝ նյութական շահագրգռվածության հիման վրա:

Կարող է հարց ծագել. այդ չի՞ նշանակում արդյոք, որ տվյալ ապրանքի գինը այդպիսի դեպքում սիստեմատիկաբար կբարձրանա: Երբեք: Այդ նշանակում է, որ, օրինակ, Մոսկվայի կարի ֆաբրիկայի թողարկած բարձրորակ վերնաշապիկը կգնահատվի ավելի թանկ, քան Երևանի կարի ֆաբրիկայի թողարկած նույն պիտակի (արտիկուլի) համեմատաբար ավելի ցածրորակ վերնաշապիկը: Վերջինս շահագրգռված կլինի որակով հասնել առաջինին:

Հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացումը, ինքնարժեքի սիստեմատիկ իջեցումը որոշ ժամանակ անց հնարավորություն կըստեղծեն հասնելու ապրանքի թողարկման առաջին կատեգորիայի մակարդակին և անցնել նրանց իրացմանը նախկին՝ երկրորդ կատեգորիայի գներով, որը կնշանակի գների իջեցում ամբողջ հասարակության մասշտաբով (չպահանջելով լրացուցիչ ծախքեր նոր գնացուցակների հրատարակման համար):

Պարտիայի ծրագրում նշվում է. «Պետք է շարունակ բարելավել գների սիստեմը, այն համապատասխանեցնելով կոմունիստական շինարարությանը, տեխնիկական առաջադիմությանը, արտադրության և սպառման աճին, արտադրական ծախքերի նվազեցմանը» (ՍՄԿՊ Ծրագիրը, Հայպետհրատ 1961, էջ 107—108): Առաջարկվող դիֆերենցիացիայի դեպքում մանրածախ գինը, հիրավի, կհանդիսանա թողարկվող արտադրանքի որակի սիստեմատիկ բարելավման ու կատարելագործման կարևորագույն խթանը: Ձեռնարկության ողջ կոլեկտիվը նյութապես շահագրգռված կլինի ամենուրեք բարձր պահելու իր ձեռնարկության մարկան, թողարկվող ժողովրդական լայն սպառման առարկաների որակը:

Թողարկվող ապրանքների որակի բարելավման համար անհրաժեշտ է բարձրացնել բանվորների անձնական շահագրգռվածությունը բարձրորակ արտադրանքի թողարկման գործում: Ձեռնարկությունները պետք է մշակեն ու ար-

մատավորեն բանվորների աշխատանքի վարձատրման այնպիսի սիստեմ, որի դեպքում աշխատանքի վարձատրման վճռական գործոնը դառնա ոչ միայն քանակը, այլև որակը:

Արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվի նյութական շահագրգռվածությունն ավելի բարձր հիմքերի վրա դնելու նպատակով հարմար կլինի սահմանել այնպիսի կարգ, որի դեպքում՝ վերատեսակավորման և խոտանի համար առևտրական կազմակերպությունների ներկայացրած տուգանքները մասամբ (10—20 տոկոս) բռնագանձվեն ձեռնարկության խրախուսման ֆոնդից, իսկ բարձրորակ ապրանքների արագ իրացումից ստացվող արտապլանային եկամուտների մի մասը՝ (10—20 տոկոս) ավելացվի ձեռնարկության խրախուսական ֆոնդին:

Գների սահմանման առաջարկվող ձևը կարծես թե հակասում է այն տնտեսագետների տեսակետին, որոնք իրավամբ գտնում են, որ նոր ասորտիմենտի յուրացման ժամանակ արտադրության ծախքերը, բնականաբար, ավելի մեծ են, հետևաբար սկզբում այն պիտի գնահատել ավելի թանկ և միայն հետագայում աստիճանաբար էժանացնել ծախքերի կրճատման հիման վրա: Իրոք, չպետք է անտեսել նշված փաստը, սակայն այն պետք է արտացոլվի ինքնարժեքի մեջ, ուստի այդ նպատակահարմար է հաշվի առնել ձեռնարկության մեծածախ գինը սահմանելիս: Իսկ եթե թողարկվող արտադրանքն սկզբնական շրջանում անշահութաբեր է, ապա այդ դիֆերենցումը պետք է արտահայտվի արդյունաբերության մեծածախ գնի մեջ:

Առավել ձեռնտու է սկզբնական շրջանում նոր յուրացվող ասորտիմենտից ստանալ ավելի փոքր շահույթ, բայց այն ժամանակին իրացնել: Տվյալ ասորտիմենտի հետագա յուրացումը հնարավորություն կտա որակի բարելավմանը զուգընթաց կրճատել արտադրության ծախքերը, իջեցնել ինքնարժեքը, հետևաբար՝ ավելացնել շահութաբերությունը: Որակյալ արտադրանքի իրացման երաշխիքը կկանխի ապրանքների մեծ քանակությամբ կուտակումների առաջացումը, դրանց գների հարկադրական իջեցումը, բացի այդ, զգալի չափով կարագացվի շրջանառության միջոցների շրջապտույտը: Դրանով իսկ կկանխվի օգուտներն ու շահույթները արհեստականորեն ուռցնելու հնարավորությունը: Եվ, իրոք, ստացվում է այնպես, որ, մի կողմից՝ ձեռնարկությունները կատարում են ժողովրդական լայն սպառման առարկաների թողարկման օգուտների պլանը, իսկ մյուս կողմից՝ դրանց զգալի մասի գների հարկադրական իջեցումից հասարակությունը կրում է մեծ վնաս: Անկասկած, գների իջեցումը տվյալ դեպքում միանգամայն տեղին է, այն հնարավորություն է տալիս խուսափել լրիվ վնասից:

Այսպիսով, գների կատարելագործումը դարձել է հրամայողական պահանջ: Տվյալ պրոբլեմի ճիշտ լուծումը հնարավորություն կընձեռի կանխելու մեծ չափերի հասնող ապրանքային կուտակումները, միջոցների սառեցումը, և ապա՝ հասարակության կորուստները՝ նյութական, դրամական և աշխատանքային ռեսուրսների շռայլումները:

Անհրաժեշտ է նշել, որ մեծածախ ու մանրածախ գների կատարելագործման, ինչպես նաև արտադրանքի որակի բարելավումը պլանավորելու անհրաժեշտության հարցերը իրենց ողջ խորությամբ բարձրացվեցին ՍՍՌՄ Գերագույն սովետի հինգերորդ սեսիայում (1964 թ. դեկտեմբեր)՝ և իրենց հետագա



խոր հիմնավորումը գտան պարտիայի Կենտկոմի վերջերս կայացած պլենումի
որոշումներում:

Ակներև է, որ նման հարցադրումը կպահանջի որոշակի կառուցվածքային
փոփոխություններ կատարել վերստուգիչ և տեսչական օրգաններում, վերա-
նայել նրանց ենթարկվածության կարգը և այլն: Նախ, անհրաժեշտ կլինի վե-
րանայել գոյություն ունեցող պետական ստանդարտները, պարզորոշ բնութա-
գրել յուրաքանչյուր ապրանքի սպառողական ու որակական հատկանիշները,
նրանց կատեգորիայի ու տեսակի սահմանման ու պիտակավորման կարգը:
Կպահանջվի որակյալ կադրերով համալրել ձեռնարկությունների ՏՎԲ-ի աշխա-
տողների ու առևտրական կազմակերպությունների ապրանքագետների կազմը:
Այդ աշխատողներին պետք է վերապահել որոշակի իրավունք ոչ միայն խոտա-
նելու ցածրորակ ապրանքները, այլև պատասխանատվության ենթարկելու այն
արտադրողներին ու վաճառողներին: Անհրաժեշտ է նաև ընդլայնել ու կատարե-
լագործել հասարակական հսկողության ձևերն ու մեթոդները:

Հասունացել է ժողովրդական սպառման ապրանքների որակի տեսչության
ենթակայության վերանայման հարցը: Այժմ ապրանքների որակի գծով պետ-
տեսչությունը ենթարկվում է ռեսպուբլիկայի առևտրի մինիստրությանը: Հա-
ճախ, ելնելով ապրանքաշրջանառության պլանների կատարման «շահերից» և
առևտրի ու արտադրության փոխադարձ հարաբերությունները «չվատացնելու»
նկատառումից, պետտեսչության աշխատողները պատշաճ ուշադրություն չեն
նվիրում թողարկվող արտադրանքի որակին (մանավանդ եթե այն տվյալ միջո-
ցին ունի բարձր պահանջարկ): Բացի այդ, պետտեսչությունը ժողովրդական
սպառման ապրանքների զգալի մասը խոտանում է ոչ թե արտադրության ներ-
սում, այլ մանրածախ առևտրական օբյեկտներում, մինչդեռ ցածրորակ ապ-
րանքի թողարկումը պետք է կանխվի տեղում, արտադրության ներսում: Այս
հանգամանքը նպաստում է ցածրորակ ապրանքների կուտակումների առաջաց-
մանը: Մեր կարծիքով ավելի նպատակահարմար է, որ ապրանքների որակի
գծով պետտեսչությունը ենթարկվի ոչ թե ռեսպուբլիկայի առևտրի մինիստրու-
թյանը, այլ ռեսպուբլիկայի Պարտիական ու Պետական վերահսկողության կո-
միտեին, կամ ավելի ճիշտ՝ ՍՍՌՄ Առևտրի մինիստրությանը: Այդ կբարձրաց-
նի ձեռնարկությունների ու առևտրական կազմակերպությունների պատասխա-
նատվությունը՝ ավելի բարձրորակ արտադրանք թողարկելու ու վաճառելու
գործում:

Գների դիֆերենցման, արտադրության և առևտրի համաձայնեցված աշխա-
տանքի, թողարկվող արտադրանքի վերահսկողության ուժեղացման, աշխա-
տանքի վարձատրության սիստեմի կատարելագործման վրա լուրջ ուշադրու-
թյուն դարձրեց ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թվականի) պլենումը:
Պլենումում ընդգծվեց, որ մեր առարկաների որակը չպետք է զիջի համաշխար-
հային լավագույն նմուշներին: Դրա համար մենք պետք է բոլոր ձեռնարկու-
թյուններում բարձրացնենք տեխնոլոգիական և արտադրական կարգապահու-
թյունը, բարձրացնենք արտադրության կուլտուրան, որպեսզի հարկ եղածին
պես բավարարենք մեր ազգաբնակչության աճող պահանջմունքները:

ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ

*ամբիոն*

## ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՏԻ ՄԵՋ ԿՈՒՏԱԿՄԱՆ ԵՎ ՍՊԱՌՄԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման վերաբերյալ ՍՄԿԿ ծրագրով նախատեսված վիթխարի միջոցառումների իրականացումն իր արտահայտությունն է գտնում ազգային եկամտի աճի մեջ, որը արտադրության ընդլայնման և աշխատավորների բարեկեցության բարձրացման նյութական հիմքն է։

Արտահայտելով արտադրության մեջ ներդրված կենդանի աշխատանքի արդյունքները, ազգային եկամուտը հանդիսանում է ինչպես ժողովրդական սպառման աճի, այնպես էլ սոցիալիստական ընդլայնված վերարտադրության աղբյուրը։ Ուստի և ազգային եկամտի գիտականորեն հիմնավորված բաշխումը կուտակման ֆոնդի և սպառման ֆոնդի, պետք է լավագույն կերպով ապահովի սոցիալիստական արտադրության անընդհատ աճը և ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը։

Սպառման ֆոնդը ազգային եկամտի այն մասն է, որն օգտագործվում է աշխատավորների նյութական ու հոգևոր, ինչպես և ամբողջ հասարակության ոչ արտադրական պահանջմունքները բարելավելու համար։ Ազգային եկամտի մյուս մասը կուտակման ֆոնդի ձևով, ուղղվում է արտադրության ընդլայնմանն ու կատարելագործմանը, ժողովրդական տնտեսության հիմնական և շրջանառու ֆոնդերի ավելացմանը և ռեզերվների ստեղծմանը։

Հասարակական վերարտադրության պրոցեսում ազգային եկամտի երկու մասը՝ կուտակումն ու սպառումը, գտնվում են փոխադարձ ներգործության և փոխադարձ կախվածության մեջ, միաժամանակ դրսևորելով հակասություն, քանի որ ազգային եկամտի տվյալ ծավալի դեպքում կուտակման ֆոնդի մեծացումը անխուսափելիորեն կապված է սպառման ֆոնդի պակասեցման հետ և ընդհակառակը։

Կուտակման և սպառման այդ փոխադարձ ներգործությունն անմիջական ազդեցություն է թողնում ընդլայնված վերարտադրության ամբողջ պրոցեսի վրա։ Հայտնի է, որ տնտեսական զարգացման բարձր տեմպերն ամենից առաջ կախված են այն բանից, թե ազգային եկամտի որ մասն է հատկացվում կուտակման ֆոնդի մեծացմանը, այսինքն՝ արտադրության ընդլայնմանը։

Սոցիալիստական պետությունը, ղեկավարվելով տնտեսական օբյեկտիվ օրենքներով, յուրաքանչյուր կոնկրետ դեպքում ապահովում է կուտակման և սպառման ֆոնդերի օպտիմալ, այսինքն՝ ամենանպատակահարմար հարաբերակցություն։ Օպտիմալությունը, որը բխում է սոցիալիզմի բնույթից, սպառման և կուտակման միջև պետք է ապահովի այնպիսի համամասնություններ, որոնք ենթադրում են ինչպես երկրի տնտեսական զարգացման բարձր տեմպեր, այնպես էլ՝ ժողովրդի նյութական բարեկեցության աճի ամենաբարենպաստ պայմաններ։



Ազգային եկամտի բաշխումը կուտակման և սպառման ֆոնդերի, պետք է կատարվի բնական-իրային և արժեքային ձևերով։ Դրամական արտահայտությամբ ազգային եկամտի այդ մասերից յուրաքանչյուրին պետք է համապատասխանի նրա որոշակի իրային բովանդակությունը։ Այսպես, օրինակ, բնակչության դրամական ֆոնդերին, ըստ ծավալի և կառուցվածքի, պետք է համապատասխանեն ապրանքային ֆոնդերը, որոնք իրացվում են պետական և կոոպերատիվ առևտրի, ինչպես նաև բնակչությանը վճարովի ծառայությունների միջոցով։ Սոցիալիստական ձեռնարկությունների եկամուտներին պետք է համապատասխանեն արտադրության միջոցները, որոնք իրենց իրային ձևով կոչված են ապահովելու արտադրական և ոչ արտադրական ֆոնդերի կուտակումը, ինչպես նաև անհրաժեշտ ռեզերվների ստեղծումը։

Նյութական-իրային և արժեքային ձևերի միասնությունն ազգային եկամտի բաշխման համամասնությունների անհրաժեշտ պայմանն է։ Սոցիալիստական հասարակարգում այդ համամասնության բնույթը որոշում է պետությունը՝ ելնելով ժողովրդական տնտեսության զարգացման և աշխատավորների բարեկեցության բարձրացման շահերից։

Կուտակման և սպառման ժողովրդա-տնտեսական օպտիմումը գտնելու կարևոր պայմանն է ժողովրդական տնտեսության զարգացման բարձր տեմպերի առկայությունը, որպիսիք ապահովում են ազգային եկամտի աճի բարձր տեմպերը։ Ազգային եկամտի աճի տեմպերն անմիջականորեն ներգործում են կուտակման և սպառման ֆոնդերի ծավալի ու դինամիկայի վրա։ Որքան մեծ է ազգային եկամտի ծավալը այլ հավասար պայմաններում, այնքան մեծ են ինչպես կուտակման ֆոնդի, այնպես էլ սպառման ֆոնդի միաժամանակյա բարձր տեմպերով աճելու հնարավորությունները։

Կուտակման և սպառման հարաբերակցության մեջ վճռական դերը պատկանում է կուտակմանը։ Կուտակման որոշիչ նշանակությունը, ըստ էության, սպառման նկատմամբ արտադրության որոշիչ դերի արտացոլումն ու դրսևորումն է։ Ընդլայնված վերարտադրության ընթացքում ստեղծվում են որոշակի քանակական կախվածություններ ազգային եկամտի մեծության, կուտակման նորմայի և ժողովրդական սպառման մակարդակի միջև։ Ընդ որում սպառման աճի հնարավորությունը կախված է կուտակման նորմայի աճի ու ամբողջությամբ վերցրած ազգային եկամտի հարաբերակցությունից։

Հայկական ՍՍՌ-ում 1962 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, կուտակման աճը կազմել է 69 միլիոն ռուբլի, մինչդեռ այդ ժամանակաշրջանում ազգային եկամուտն աճել է մոտ 133 միլիոն ռուբլով։ Դրա շնորհիվ աճել է ինչպես կուտակումը, այնպես էլ սպառումը։

Սպառման ստեղծված մակարդակը կախված է ո՛չ միայն կուտակման նորմայից, այլև կուտակման ճյուղային կառուցվածքից։ Կուտակման ճյուղային կառուցվածքի փոփոխություններին, այսինքն՝ նյութական արտադրության տարբեր ճյուղերի միջև ներդրումների և յուրաքանչյուր ճյուղի ներսում ենթաճյուղերի միջև եղած հարաբերակցություններին համապատասխան կարող է փոխվել սպառման մակարդակը՝ նույնպես կուտակման անփոփոխ նորմայի դեպքում։ Բացի դրանից, սպառման աճը կախված է նաև կուտակման արդյունավետությունից։ Տեխնիկական առաջադիմությունը, շինարարության ժամկետների կրճատումը, ֆոնդատարության իջեցումը, ֆոնդերի ավելի ռացիոնալ օգտագործումը կուտակման տվյալ չափերի դեպքում ապահովում են արտադրության ծավալի ավելի մեծ աճ և, հետևաբար հնարավորություններ են ստեղծում սպառման ավելացման համար։

Կուտակման և սպառման միջև օպտիմալ հարաբերակցության հասնելու համար անհրաժեշտ է սահմանել կապիտալ ներդրումների այնպիսի աճ, որը տվյալ ժամանակաշրջանում ուղեկցվի բնակչության աճող վճարունակ պահանջարկին համապատասխան ապրանքաշրջանառության ֆիզիկական ծավալի մեծացմամբ։ Կապիտալ ներդրումները և պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը, համապատասխանաբար, որոշում են ազգային եկամտի կուտակման ֆոնդի և սպառման ֆոնդի

հիմնական մասը։ Ուստի դրանք կարելի է քննարկել որպես կուտակման և սպառման դինամիկան ավելի կամ պակաս ճշտությամբ արտացոլող ցուցանիշներ։

Վերջին տարիներս կուտակման աճը հիմնականում առաջ է անցել ապրանքաշրջանառության ֆիզիկական ծավալի աճից։ Միաժամանակ այդ ժամանակաշրջանում որպես միավոր ընդունված կապիտալ ներդրումների աճի տեմպերի համեմատությամբ արագացել են ապրանքաշրջանառության ֆիզիկական ծավալի աճի տեմպերը։

Կապիտալ ներդրումների և մանրածախ ապրանքաշրջանառության աճի տեմպերի միջև այդպիսի հարաբերակցությունն ապահովում է ազգային եկամտի կուտակվող և սպառվող մասերի սիստեմատիկ ու արագ աճը։

Կուտակման և սպառման հարաբերակցությունը փոխադարձ սերտ կապի մեջ է հասարակական արտադրության I և II ստորաբաժանումների հարաբերակցության հետ, քանի որ կուտակման հնարավորությունները քանակապես որոշվում են հետևյալ կերպ. I ստորաբաժանման զուտ արդյունքի արժեքը գերազանցում է II ստորաբաժանման մեջ կատարվող նյութական ծախսերի արժեքը, իսկ որակապես որոշվում են առաջին ստորաբաժանման զուտ արդյունքի բնական-իրային կառուցվածքով։ Այսպես, արտադրանքի ավելի խնայողաբեր տեսակներ արտադրող առաջադեմ ճյուղերի (քիմիական, գազի արդյունաբերության և այլն) տեսակարար կշռի բարձրացման շնորհիվ արդյունաբերության զարգացման համամասնությունների փոփոխությունը ո՛չ միայն ընդլայնում է կուտակման հնարավորությունները՝ ազգային եկամտի տվյալ արժեքային ծավալի դեպքում, այլև մեծացնում է սպառման ֆոնդի ռեսուրսները։ Մյուս կողմից կուտակման ֆոնդի արտադրական և ոչ արտադրական մասերի մակարդակն ու կառուցվածքը վերարտադրության նոր ցիկլում կանխորոշում է I ստորաբաժանման առաջացման մասշտաբները II-ի նկատմամբ։

ՍՍՌՄ ազգային եկամտի վերջնական օգտագործման կառուցվածքը
(տոկոսներով՝ ամբողջի նկատմամբ)[1]

| | 1950 թ. | 1951 թ. 1960 թ. | 1960 թ. | 1961 թ. | 1962 թ. | 1963 թ. |
|---|---|---|---|---|---|---|
| Ազգային եկամուտ . . . | 100 | 100 | 100 | 100 | 100 | 100 |
| այդ թվում՝ | | | | | | |
| կուտակման ֆոնդ . . . | 27 | 25—26 | 28 | 28,2 | 28,2 | 25,5 |
| սպառման ֆոնդ . . . | 73 | 75—74 | 72 | 71,8 | 71,8 | 74,5 |

ՍՍՌՄ ազգային եկամտի վերջնական օգտագործման կառուցվածքն արմատապես տարբերվում է մինչհեղափոխական Ռուսաստանում ազգային եկամտի օգտագործման կառուցվածքից։ Դրա մեջ արտահայտվում է սոցիալիստական և կապիտալիստական արտադրական հարաբերությունների հակադրությունը։ Մինչհեղափոխական Ռուսաստանում կուտակումը կազմում էր ազգային եկամտի 9 տոկոսը։ Սակայն աշխատավոր ժողովրդի կենսամակարդակը շատ ցածր էր։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո ժողովրդական տնտեսության վերափոխումները պայմանավորեցին ազգային եկամտի մեջ կուտակման ֆոնդի բաժնի բարձրացումը՝ ժողովրդական սպառման միաժամանակյա բացարձակ աճի դեպքում։ ՍՍՌՄ առաջին հնգամյակների ժամանակաշրջանից սկսած մինչև այժմ կուտակման և սպառման միջև հաստատվել է համեմատաբար կայուն

[1] 1961, 1962, 1963 թվականների վերաբերյալ բերված տվյալները հաշվարկվել են մեր կողմից, վիճակագրական տարեգրերի հիման վրա։ Տե՛ս «Народное хозяйство СССР в 1961 году», 1962 г., стр. 599, «Народное хозяйство СССР в 1962 году», 1963 г., стр. 483, «Народное хозяйство СССР в 1963 году», 1965 г., стр. 503.



հարաբերակցություն, ազգային եկամտի մոտ 1/4 մասը իրենից ներկայացնում է կուտակման, 3/4 մասը՝ սպառման ֆոնդ։ Սակայն կուտակման և սպառման միջև այդ համամասնությունն ինչ-որ քարացած, բացարձակորեն անփոփոխ բան չէ, այլ որոշ սահմաններում շարժուն։

ՍՍՌՄ, ինչպես նաև միութենական ռեսպուբլիկաների ազգային եկամտի վերջնական օգտագործման կառուցվածքի վերաբերյալ տվյալները քննարկելիս պետք է նկատի ունենալ, որ դրանց կուտակման և սպառման ֆոնդերի բաժինը բնութագրում են ընթացիկ գներով։ Ուստի, ՍՍՌՄ-ում գնագոյացման առանձնահատկությունների հետևանքով դրանք չեն արտացոլում կուտակման և սպառման միջև ստեղծված իրական համամասնությունները։ Դրա պատճառն այն է, որ կուտակման ֆոնդի հիմնական մասը հանդիսացող արտադրության միջոցների գները, ամբողջությամբ վերցրած, շեղվում են իջնելով արժեքից և հետևաբար, ընթացիկ գներով գնահատելիս ազգային եկամտի մեջ կուտակման ֆոնդի բաժինը որոշ չափով իջնում է, մինչդեռ սպառման ֆոնդի բաժինը, համապատասխանաբար, բարձրանում է։ Սակայն բացարձակ մեծությամբ սպառման և կուտակման ֆոնդերի այդպիսի անհամադրելիությունը նրանց հարաբերակցության դինամիկայի վրա ազդեցություն չի թողնում։ 1959—1965 թթ. եկամտի 62—65 տոկոս աճի դեպքում կուտակման ֆոնդն ավելանալու է 65—68, իսկ սպառման ֆոնդը՝ 60—63 տոկոսով։

Յոթնամյակի ընթացքում կուտակման ֆոնդի տեսակարար կշռի որոշ
բարձրացումը էական փոփոխություններ չի մտցնի ստեղծված 25 : 75 հարա-
բերակցության մեջ, որը ՍՍՌՄ ազգային եկամտի օգտագործման կառուցված-
քում հանդիսանում է գլոբալ համամասնություն։ Ժողովրդական դեմոկրա-
տիայի երկրներում ազգային եկամտի վերջնական օգտագործման կառուց-
վածքն ավելի կամ պակաս չափով մոտ է ՍՍՌՄ-ին, որը վկայում է սոցիա-
լիզմի բոլոր երկրներում ազգային եկամտի վերջնական օգտագործման ընդ-
հանուր օրինաչափության առկայության մասին։ Այսպես, 1960 թվականին
ազգային եկամտի մեջ կուտակման տեսակարար կշիռը Բուլղարիայում կազ-
մել է 27,5 տոկոս, ԳԴՌ-ում՝ 19, Լեհաստանում՝ 25,9, Հունգարիայում՝ 1958—
60 թվականներին՝ 22, ՉԺՌ-ում 1957 թվականին՝ 24,3 տոկոս և այլն։ Ըստ
երևույթին, յոթնամյակի անցած տարիներին Սովետական Միությունում կու-
տակման ֆոնդի և սպառման ֆոնդի ստեղծված հարաբերակցությունը
կպահպանվի նաև գլխավոր հեռանկարում։ Ընդ որում կապիտալ շի-
նարարության հատկացվող միջոցների օգտագործման արդյունավետու-
թյան առավել բարձրացման հետ միաժամանակ վիթխարի չափով կաճի
նաև սպառման ֆոնդը։ Յոթնամյակում և առաջիկա հնգամյակում ազգային
եկամտի ընդհանուր ծավալում կուտակման ֆոնդի տեսակարար կշռի որոշ
բարձրացման օրինաչափությունը պայմանավորված է արտադրության միջոց-
ների արտադրության առավել աճի օրենքի կիրառությամբ և մեր երկրում կո-
մունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման անհրաժեշտությամբ։ Իր
իրային բովանդակությամբ կուտակման ֆոնդի հիմնական մասը բաղկացած
է արտադրության միջոցներից, իսկ սպառման ֆոնդը՝ սպառման առարկա-
ներից։ Հասարակական արտադրության երկրորդ ստորաբաժանման համեմա-
տությամբ առաջին ստորաբաժանման առաջանցիկ տեմպերը այնպիսի պայ-
մաններ են ստեղծում, որի դեպքում կուտակման ֆոնդն աճում է փոքր-ինչ
ավելի արագ, քան սպառման ֆոնդը։ Բացի այդ, կուտակման բարձր տեմ-
պերի օրինաչափությունը բխում է կապիտալ ներդրումների ավելացման գըլ-
խավոր հեռանկարի առաջադրանքներից և մանրածախ ապրանքաշրջանառու-
թյան աճից։

Ամբողջ ժողովրդական տնտեսության մասշտաբով մեկ տարվա ընթաց-
քում արտադրված ազգային եկամտի ծավալը (կորուստները հանած) հավա-
սար է կուտակման և սպառման ֆոնդերի գումարին, յուրաքանչյուր միութե-
նական ռեսպուբլիկայի սահմաններում այդ հավասարությունը բացառվում է,
քանի որ սոցիալիստական պետությունը, ելնելով կոնկրետ քաղաքական, տըն-
տեսական խնդիրներից, իրականացնում է նաև ազգային եկամտի տերիտո-

*րիալ վերաբաշխումը։ Ուստի յուրաքանչյուր ռեսպուբլիկայի առանձնահատ-
կությունն իր կնիքն է դնում տվյալ ռեսպուբլիկայի տերիտորիայում ազգային
եկամտի բաշխման և օգտագործման բնույթի վրա։*

*Մինչև վերջին ժամանակներս պլանային և վիճակագրական օրգանները
սահմանափակվում էին միութենական ռեսպուբլիկաների ազգային եկամտի
արտադրության ծավալի հաշվարկմամբ, իսկ բաշխման և օգտագործման հաշ-
վարկները կատարվում էին միայն ՍՍՌՄ մասշտաբով։ Միայն 1962 թվակա-
նին ռեսպուբլիկական վիճվարչությունները, այդ թվում նաև Հայկական ՍՍՌ-ի
ԿՎՎ-ն, առաջին քայլն արեցին միութենական ռեսպուբլիկաների սահմաննե-
րում ազգային եկամտի օգտագործումը բնութագրող հաշվարկների կատար-
ման ուղղությամբ։ Դրա արդյունքը եղավ այն, որ որոշվեց 1961 թվականին
ռեսպուբլիկայում արտադրված հասարակական ամբողջական արդյունքի ար-
ժեքը, հաշվի առնվեց մյուս ռեսպուբլիկաներին տրված և նրանցից ստացված
միջոցների գումարը (ըստ ռեսպուբլիկաների վերաբաշխման հաշվեմնացոր-
դի), հաշվարկվեցին տվյալ ռեսպուբլիկայում օգտագործվող ազգային եկամտի
մեծությունը, կուտակման և սպառման ֆոնդերը, կորուստների չափը։*

*Միութենական առանձին ռեսպուբլիկաների ազգային եկամտի մեջ կու-
տակման ֆոնդի և սպառման ֆոնդի հարաբերակցությունը միատեսակ լինել
չի կարող։ Ըստ ռեսպուբլիկաների այդ ֆոնդերի հարաբերակցության հայտնի
տարբերությունը որոշվում է յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկայի
տնտեսական զարգացման ուղղությամբ և ճյուղային կառուցվածքով։ Դրանք
ստեղծվում են ամբողջ ժողովրդական տնտեսության՝ որպես մի միասնական
օրգանիզմի տնտեսական զարգացման շնորհիվ և արտացոլում են կարևորա-
գույն տերիտորիալ համամասնություններն ու կապերը։ Դրա համար էլ միու-
թենական ռեսպուբլիկաների ազգային եկամտի կուտակվող և սպառվող մա-
սերի համամասնությունների համահարթման ձգտումը հակասում է արտա-
դրողական ուժերի ռացիոնալ տեղաբաշխման և կապիտալ ներդրումների ար-
դյունավետության բարձրացման քաղաքականությանը։*

Հայկական ՍՍՌ ազգային եկամտի վերջնական օգտագործման
կառուցվածքը *(տոկոսներով)* [1]

| | 1961 *թ.* | 1962 *թ.* | 1963 *թ.* |
|---|---|---|---|
| *Ազգային եկամուտ . .* | 100 | 100 | 100 |
| *այդ թվում՝* | | | |
| *կուտակման ֆոնդ . .* | 30,8 | 33,1 | 29,2 |
| *սպառման ֆոնդ . . .* | 69,2 | 66,9 | 70,8 |

*Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ Հայկական ՍՍՌ ազգային
եկամտի մեջ կուտակման ֆոնդի տեսակարար կշիռը բարձր է այդ տարինե-
րի միջին միութենական համապատասխան ցուցանիշներից։ Հայկական ՍՍՌ
ազգային եկամտի մեջ կուտակման ֆոնդի համեմատաբար բարձր բաժինը
պայմանավորված է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության ճյուղային
կառուցվածքով, որտեղ ազգային եկամտի արտադրության մեջ գերակշռող
դերը պատկանում է արդյունաբերությանը, իսկ վերջինս զարգանում է ար-
դյունաբերական արտադրության միջին միութենական տեմպերը գերազանցող
տեմպերով։ Այսպես, եթե ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրան-
քը 1963 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, ավելացել է 58 տո-
կոսով, ապա նույն ժամանակաշրջանում Հայկական ՍՍՌ արդյունաբերության
համախառն արտադրանքն աճել է 63 տոկոսով։ Բացի այդ, ռեսպուբլիկայի
արդյունաբերության ճյուղային կառուցվածքում մեծ տեսակարար կշիռ ունեն*

---

1 *Աղյուսակը կազմված է Հայկական ՍՍՌ ԿՎՎ տվյալների հիման վրա։*



*կապիտալատար ճյուղերը, ինչպիսիք են՝ էլեկտրաէներգետիկան (գլխավորապես
հիդրոէլեկտրակայանները), քիմիական արդյունաբերությունը, մեքենաշինու-
թյունը և մետաղամշակումը, որոնց, 1964 թվականի հունվարի 1-ի դրությամբ,
բաժին էր ընկնում ռեսպուբլիկայում օգտագործվող արտադրական հիմնա-
կան ֆոնդերի 57,2 տոկոսը։ Արդյունաբերության այդ ճյուղերի, ինչպես նաև
ամբողջությամբ վերցրած ռեսպուբլիկայի արդյունաբերության աճի արագ
տեմպերը, որոնք պահանջում են համապատասխան կապիտալ ներդրումներ,
պայմանավորում են Հայկական ՍՍՌ ազգային եկամտի մեջ կուտակման ֆոն-
դի համեմատաբար բարձր տեսակարար կշիռ։ 1961 թվականի համեմատու-
թյամբ, 1962 թվականին կուտակման ֆոնդի աճը բացատրվում է նրանով, որ
կուտակման ֆոնդի աճի տեմպերը զգալիորեն առաջ անցան սպառման ֆոնդի
աճի տեմպերից։ Եթե 1962 թվականին կուտակման ֆոնդի ծավալը, 1961
թվականի մակարդակի դիմաց, ավելացավ 21 տոկոսով (գլխավորապես հիմ-
նական արտադրական ֆոնդերի աճի հաշվին, որոնք ավելացան 62 տոկոսով),
ապա նույն ժամանակաշրջանում սպառման ֆոնդն ավելացավ 9 տոկոսով։
1963 թվականին, ինչպես ամբողջությամբ վերցրած ՍՍՌՄ-ում, այնպես էլ
Հայկական ՍՍՌ-ում ազգային եկամտի մեջ կուտակման ֆոնդի բաժինը հիմ-
նականում նվազեց՝ այդ տարում կլիմայական անբարենպաստ պայմանների
պատճառով ռեզերվների նվազման հաշվին։*

*Ինչպես ՍՍՌՄ, այնպես էլ միութենական ռեսպուբլիկաների գծով կու-
տակման և սպառման ֆոնդերի համամասնության պլանավորումն ու հաշվա-
ռումը թույլ կտան խոր ու բազմակողմանի վերլուծելու ընդլայնված վերարտա-
դրության պրոցեսը և ժողովրդական սպառման անշեղ աճի հետ մեկտեղ
ապահովելու արտադրության բարձր, կայուն տեմպեր։*

Է. ՄԱԹԵՎՈՍՈՎ

# ԲՆԱ-ԿԼԻՄԱՅԱԿԱՆ ԳՈՐԾՈՆՆԵՐԸ ԵՎ ՔԱՂԱՔԱՇԻՆՈՒԹՅՈՒՆԸ

Մեր ռեսպուբլիկայում արագ տեմպերով զարգանում է քաղաքային շինարարությունը: Այդ կապակցությամբ կարևոր նշանակություն են ստանում արտաքին միջավայրի հետ բնակելի կառուցապատման փոխադարձ կապի հարցերը: Միջավայրի գործոնների ազդեցությունը, թեկուզ և ինտուիտիվորեն, բայց ոչ վատ հաշվի էին առնում շատ երկրների հնագույն ժողովուրդները:

Իրենց կացարաններն ու քաղաքները հմտորեն հարմարեցնելով տեղանքի բնա-կլիմայական պայմաններին՝ մեր նախնիները ձգտում էին բավականին պարզ ու հասարակ միջոցներով փոխհատուցել բնակլիմայական թերությունները և միաժամանակ օգտագործել նրա բարենպաստ կողմերը: Բնակլիմայական գործոնների բազմակողմանի հաշվառումը պարտադիր պայման է արդի բնակելի գոյացումները՝ միկրոշրջաններն ու բնակելի շրջանները պլանավորելիս ու կառուցապատելիս:



Բնակելի լավագույն պայմանների ստեղծումը կախված է ոչ միայն կառուցապատման ձևերից ու տիպերից, այլև տեղական բնա-կլիմայական պայմաններից: Ծովի մակերևույթից բարձր լինելու, օրոգրաֆիայի (լեռնագրական) և տեղանքի բարդ ռելիեֆի պատճառով այդ պայմանները Հայկական ՍՍՌ-ում աչքի են ընկնում բազմազանությամբ ու ինքնատիպ առանձնահատկություններով: Այս առումով Հայկական ՍՍՌ տերիտորիան կարելի է բաժանել երկու հիմնական կլիմայական գոտիների: Առաջին գոտու մեջ մտնում են՝ ծովի մակերևույթից մինչև 1200—1300 մ. բարձրություն ունեցող հովիտները և 700-ից մինչև 1400 մետր նախալեռնային շրջանները (Երևան, Հոկտեմբերյան, Աբովյան, Իջևան, Մեղրի, Ղափան, Ալավերդի և այլն): Շատ շոգ, երկարատև ամառվա դեպքում (20-ից մինչև 27°) այդ շրջանների ձմեռը մեղմ է, սակավաձյուն, 0-ից մինչև —7 միջին ջերմաստիճանով:

Երկրորդ գոտու մեջ կարելի է մտցնել ծովի մակերևույթից 1400 մետրից ավելի բարձր լեռնային շրջանները, որոնք ընդգրկում են ռեսպուբլիկայի կենտրոնական և հյուսիս-արևմտյան մասը (Լուսավան, Հրազդան, Սևան, Կամո, Լենինական, Արթիկ և այլն): Այս շրջանների կլիման չափավոր է, ձմեռը՝ երկարատև է, ձյան կայուն ծածկույթով, ամառը՝ կարճ, չափավոր տաք (ամենացուրտ ամսվա ջերմությունը —6-ից մինչև —13° է, ամենատաք ամսվանը՝ +13-ից մինչև +19° է): Այս գոտու մեջ կարելի է մտցնել նաև ծովի մակերևույթից 1300 մետր և ավելի բարձրության լեռնա-անտառային շրջանները (Կիրովական, Ստեփանավան, Դիլիջան, Գորիս և այլն): Անտառների առկայության և ներփակվածության շնորհիվ այստեղ ձմեռն ավելի մեղմ է, իսկ ամառը՝ չափավոր տաք:

Բնա-կլիմայական պայմաններն ամբողջ բազմազանությամբ հանդերձ



քաղաքաշինարարական նշանակություն ունեն արևը (ինսոլյացիան և ռադիացիան), քամին, խոնավությունը, տեղանքը:

Հանրահայտ է արևի ուղղակի ռադիացիայի (ինսոլյացիայի) սանիտարահիգիենիկ դերը: Սակայն արևի ճառագայթների բարերար ներգործությունը թուլացնում են այնպիսի բնական գործոններ, ինչպիսիք են՝ բարձր ամպամածությունն ու ձմռանը արևի ցածր դիրքը: Հաշվի առնելով այդ, ինսոլյացիայի հաշվարկը պետք է կատարել ըստ ձմեռային ժամանակաշրջանի և հնարավորին չափով երկարաձգել շենքերի ճառագայթահարման տևողությունը:

Ինսոլյացիայի տեսակետից մեծ նշանակություն ունի նաև տեղանքը: Որքան վեր բարձրանանք, այնքան փոքր կլինի օդի խտությունը և այնքան մեծ՝ արևի ուղղակի ռադիացիայի մեծությունը: Հատկապես ներթափանցման մեծ ունակություն ունի լեռնային օդը: Լեռներում ուլտրամանուշակագույն ճառագայթման մեծ հոսանքը անուղղակի օրինակ կարող է ծառայել մարդու մարմնի արևկիզումը ձմռան արևոտ օրերին:

Դժբախտաբար բնության այդ բարեբեր գործոնը դեռևս պատշաճ արտացոլում չի գտել բնակարանային շինարարության պրակտիկայում: Բնակելի շենքերի կողմնորոշումը դեպի հորիզոնի անբարենպաստ սեկտորը (պատուհանների փոքր չափերը) զրկում են մարդկանց այնքան անհրաժեշտ արևի լույսից: Դրական գործոնների առավելագույն օգտագործման հարցերի թվին պետք է դասել նաև տարվա ցուրտ ժամանակաշրջանում արևի ուղղակի ռադիացիայի օգտագործման հնարավորությունը որպես ջերմության աղբյուր, որը կարող է իջեցնել ջեռուցման ծախսերը: Արևի ջերմությունը կարելի է օգտագործել հարավային կողմնամասերում տեղադրված լուսամուտատեղերի ապակեպատ տարածություններն ավելացնելու միջոցով: Հաշվի առնելով լեռնային պայմաններում եղանակի փոփոխականությունը, պատուհանը պետք է դառնա տեխնիկապես կատարյալ մի ագրեգատ, որը թույլ տա առավելագույն չափով օգտագործելու արևի ուղղակի ճառագայթումը, իսկ արև չլինելու դեպքում պակասեցնի ջերմության կորուստը: Արևի ռադիացիայի բարձր ինտենսիվության, ձմռանը պարզ օրերի առատության դեպքում «արևային» տան գաղափարը շատ հետանկարային է Հայաստանի լեռնային շրջանների համար:

Ձմռանը շենքերը արևով տաքացնելը դիտելով իբրև դրական գործոն, հարկավոր է նշել, որ ամռանն այդ նույն գործոնը դառնում է անցանկալի: Արևի ճառագայթների առատության դեպքում շենքերի ներքին ջերմաստիճանը կարող է զգալիորեն գերազանցել արտաքին ջերմաստիճանին, որը բացասաբար կանդրադառնա մարդու ֆիզիոլոգիական վիճակի վրա: Ուստի կառուցապատման մեջ առավելագույն չափով օգտագործելով արևի ճառագայթները, անհրաժեշտ է նաև նախատեսել շենքերի բավարար պաշտպանություն ավելորդ ինսոլյացիայից (հատկապես առաջին գոտում) ամռանը:

Հիգիենիստների տվյալներով (կոմունալ հիգիենայի ինստիտուտ) մարդու համար ջերմային հարմարավետություն է ստեղծվում այն դեպքում, երբ ամռանը շենքում ջերմաստիճանը չի անցնում 25—26°C-ից և 30—60% համեմատական խոնավությունից, իսկ օդի շարժման արագությունը 0,1—0,15 մ/վրկ-ից և պատվածքների մակերեսների միջին ռադիացիոն ջերմաստիճանը 30-ից ավելի չեն: Առաջին գոտում ցերեկվա ժամը 13-ին արտաքին միջին ջերմաստիճանը զգալիորեն գերազանցում է հարմարավետության գոտու վերին սահմանը[1]: Եթե նկատի ունենանք, որ այստեղ առավելագույն ջերմաստիճանը կարող է հասնել 38—40-ի, ապա պարզ կդառնա, թե որքան կարևոր է միջկվարտալային տարածություններն ու շենքերը ավելորդ ինսոլյացիայից և գերտաքացումից պաշտպանելը: Երկրորդ գոտում ցերեկվա ժամը 13-ին միջին ամսական ջերմաստիճանը չի անցնում հարմարավետության գոտու վերին սահմանից: Այստեղ արդեն ամառային կարճ ժամանակաշրջանում շենքերը ավելորդ

---

1 Առանց քամու ազդեցությունը հաշվի առնելու հարմարավետության գոտու վերին սահմանը 40% խոնավության դեպքում համապատասխանում է 25,6°-ի, 50%-ի դեպքում՝ 24,9°-ի և 60% խոնավության դեպքում՝ 24,2°-ի:

Ինչպես ցույց է տալիս հայրենական ու արտասահմանյան պրակտիկան,
տնտեսական և սանիտարա-հիգիենիկ բնույթի առավելությունների հետ միա-
սին այդպիսի կառուցապատումը թույլ է տալիս ստեղծել նաև կենդանագրա-
կան և բազմազան ծավալատարածական կոմպոզիցիաներ նույնիսկ մեկհար-
կանի շենքերի առկայության դեպքում, որը շինարարության տիպայնացման
պայմաններում շատ էական է։ Այս դեպքում ընդհանուր ներդաշնակությունը
ձեռք է բերվում կրկնելով միատեսակ էլեմենտները, որոնք խմբավորված են
շատ ազատ և այնպես, որ դիտողի առաջ շարունակ բացվեն ճարտարապե-
տական անսամբլների ու կանաչապատ տեղամասերի նոր պատկերներ։
Քաղաքի, առավել ևս փոքր կամ միջին քաղաքի կոմպակտության բարձ-
րացումը նպատակահարմար է դարձնում բնակարանային բազմահարկ կա-
ռուցապատման համար յուրացնել այն տեղամասերը, որոնք ունեն բավա-
կանին զառիվայր թեքություններ, բայց մոտ են կենտրոնին։ Այդ տեղամասե-
րի յուրացումը ունի սպեցիֆիկ առանձնահատկություն և մի շարք դեպքերում
վայրի բարդ ռելիեֆը կարող է հանդիսանալ այն ամենաակտիվ բնական գոր-
ծոնը, որը պայմանավորում է ճարտարապետական պլանավորման լուծումը։
Բարդ ռելիեֆ ունեցող լեռնային շրջաններում բնակելի գոյացումների
տեղաբաշխումը կապված է զառիթափերի ուղղության և թեքության հետ։ Ծա-
նապարհների դասավորությունը, կառուցապատման տեղամասի կոնֆիգուրա-
ցիան (համադասավորությունը), տների տեղաբաշխումը գրեթե միշտ կանխ-
որոշվում են ռելիեֆի ձևերով։
Ի տարբերություն դաշտավայրային բնույթի տերիտորիաների՝ լեռնային
տեղանքը աչքի է ընկնում մեծ կտրտվածությամբ և այս պայմաններում շատ
քիչ են հանդիպում հավասարաչափ հանգիստ ռելիեֆ ունեցող բավարար մեծ
հողամասեր։ Ծալքերը, խոռոչները և հողի այլ անհարթությունները անդամա-
հատում են տերիտորիան։ Ուստի այդպիսի «անհարմար» հողամասերը զբա-
ղեցնում են տերիտորիայի մեծ տոկոսը, որի պատճառով զգալիորեն պակա-
սում է «բրուտո» բնակելի ֆոնդի խտությունը։ Տերիտորիայի այդ թերությունը
դեռևս հնագույն ժամանակներից կանխորոշում էր լեռների, հովիտների և
բլուրների լանջերին շատ խիտ, կոմպակտ կառուցապատումը, որը թույլ է
տալիս ռացիոնալ օգտագործել տերիտորիան։ Խիտ կառուցապատումը զգա-
լիորեն պայմանավորված էր նաև հետիոտն դժվարին ու երկար անցումներից
խուսափելու ձգտումով։
Ներկայումս բարդ ռելիեֆի վրա կիրառվում են ազատ կառուցապատման
կոմպլեքս ձևերը, որոնք թույլ են տալիս խնայողություն կատարել ավելորդ
հողային աշխատանքները լրիվին բացառելու և կանաչ բուսականությունը
պահպանելու միջոցով։ Մինչդեռ միկրոշրջանի տերիտորիայում առանձին
չորս-հինգհարկանի շենքերի բաց, առանձնացված տեղավորումը հանգեցնում
է ոչ բարձր խտությունների։ Դրա պատճառով երկարում են անցումները, ին-
ժեներական կոմունիկացիաները, մինչև սպասարկման հիմնարկներն ու մաս-
սայական տրանսպորտի կանգառներն ընկած տարածությունները, ինչպես
նաև դժվարանում է շինարարական տեխնիկայի արդյունավետ օգտագործու-
մը։ Լավ արդյունք կարող է տալ շենքերի այսպես կոչված «ժապավենային»
տեղաբաշխումը (առանձին շենքերը «ժապավենի» մեջ բլոկավորելով, որը
կրկնում է ռելիեֆի գծերը), որը թույլ է տալիս ռացիոնալ օգտագործել տերի-
տորիան և խուսափել կառուցապատման բաց ձևերի վերոհիշյալ թերություն-
ներից։
Հարկավոր է նշել նաև, որ 4—5-հարկանի առանձին կարճ շենքերը
առանձնացված տեղավորելու դեպքում լեռնային ռելիեֆը լրիվին գերիշխում
է կառուցապատման վրա, որի հետևանքով ցրված տները թվում են լանդշաֆ-
տի պատահական էլեմենտներ։ Կառուցապատման և բնության հակադրու-
թյուններ ստեղծելու տեսակետից, ռելիեֆի ոլորապտույտ ուրվագիծը կրկնող
«ժապավենային» ձգվող շենքերն ավելի աչքի կընկնեն։
Բարդ ռելիեֆի պայմաններում շենքի լուսային սովերը, նայած զառի-
թափի ուղղությանն ու թեքությանը, կրճատվում կամ, ընդհակառակը, երկա-



րում է։ Դժվար չէ նկատել, որ շենքերի ճակատի երկու կողմերում հավասար-
արժեք ինսոլյացիայի սկզբունքը հնարավոր է պահպանել նորմատիվ խզում-
ները մեծացնելու պայմանով, որը հանգեցնում է կառուցապատման խտու-
թյան իջեցմանը։ Այս պայմաններում ավելի նպատակահարմար է ազատ
կողմնորոշում ունեցող տների տիպային նախագծերի (սեկցիոն, վերնասրա-
հային) օգտագործումը, որտեղ բոլոր կամ գրեթե բոլոր բնակելի շենքերը լայն
բացվածքներով դուրս են գալիս ճակատի մեկ կողմը, իսկ սպասարկող շի-
նությունների ու սանդղավանդակները՝ մյուս կողմը։ Հարավային և արևմտյան
զառիթափերի կառուցապատումներում բարձր խտություն կարելի է ստանալ
խզումները փոքրացնելով, որը միաժամանակ հնարավորություն կտա ար-
դյունավետ օգտագործել սահմանափակ հողամասերը և պահպանել ինսոլյա-
ցիայի օպտիմալ պայմանները։ Հյուսիսային, հյուսիս-արևելյան և հյուսիս-
արևմտյան կողմնորոշում ունեցող զառիվայրերը, ընդհակառակը, հանգեց-
նում են խզումների ավելացմանը, կառուցապատման խտությունների նվա-
զեցմանը և շինարարության թանկացմանը։ Այդ զառիթափերի զգալի թեքու-
թյան դեպքում հորիզոնականների երկարությամբ տեղաբաշխված կառուցա-
պատումը ձմեռային ժամանակաշրջանում կարող է ընդհանրապես զրկվել արևի
ճառագայթներից։ Ելնելով ինսոլյացիայի և օդաշարժման պահանջներից,
նպատակահարմար է զառիվայրերը կառուցապատել ռելիեֆի լայնական ուղ-
ղությամբ։
Այսպիսով, լեռնային վայրում շենքերի բարենպաստ տեղաբաշխումը
հնարավոր է ցանկալի կողմնորոշում ունեցող ռելիեֆի ուղղության ու աերա-
ցիայի, ինչպես նաև տեսանելի հեռանկարին համընկնելու դեպքում։ Քանի որ
շինարարության համար վայր ընտրելիս այդ պայմանները կարող են և չհամ-
ընկնել, ապա անհրաժեշտ են մեծ մանկրայնությամբ տների տիպային նա-
խագծեր, որոնք թույլ տան կառուցել ինչպես ռելիեֆի երկարությամբ, այն-
պես էլ լայնությամբ։
Տիպային նախագծերի նոմենկլատուրայի ընդլայնումը, դրա մեջ անսահ-
մանափակ կողմնորոշումներով տներ, աշտարակային բարձր շենքեր, հենա-
րանների վրա կառուցված տներ մտցնելը, ինչպես նաև ռելիեֆին համապա-
տասխան աստիճանաձև տներ կառուցելը կբացի բնա-կլիմայական պայման-
ների բազմակողմանի հաշվառման լայն հնարավորություններ և կվերացնի
բնակելի գոյացումների կառուցապատման այն մոնոտոնությունը, որն այժմ
զգացվում է իրականում։

Գ. ՌԱՇԻԴՅԱՆ



## ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՎ ԲԱՆԱՎԵՃ

# ՍՈՎԵՏԱՀԱՅ ՊԱՏՄԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՐԱ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Լ. ԲԱԲԱՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր

Մինչև Հայաստանում Սովետական իշխանության հաստատումը պատմական գիտության բնագավառը խոպան տարածություն չէր։ Կղերա-ֆեոդալական և ազգային բուրժուական պատմագրությունը դարերի ընթացքում ստեղծել էր հարուստ պատմական գրականություն, մշակել էր պատմագիտական կայուն տրադիցիաներ ու կոնցեպցիաներ։ Անհրաժեշտ էր ամբողջապես վերանայել գրական այդ ժառանգությունը, նրանից վերցնել դրականը և տալ միանգամայն նոր, գիտական հիմունքներով մշակված պատմություն։ Հայ պատմաբանների հին սերնդի մի քանի ներկայացուցիչներ, որոնք 1920-ական թվականների սկզբին որոշակի շրջադարձ կատարեցին և կանգնեցին մարքսիստական պատմագրության դիրքերի վրա և գաղափարական պայքարի բովում կոփված, մարքս-լենինյան ռևոլյուցիոն ուսմունքով զինված պատմաբանների նոր սերունդը հաղթահարեցին մեթոդոլոգիական ու աղբյուրագիտական շատ դժվարություններ ու խոչընդոտներ և հասան որոշակի հաջողությունների՝ մեր ժողովրդի պատմության ուսումնասիրության ասպարեզում։ Այսօր սովետահայ պատմական գիտությունը հրապարակի վրա ունի Հայաստանի և հայ ժողովրդի քաղաքական իրադարձություններով հարուստ առանձին դարաշրջանների, տնտեսական ու հոգևոր կյանքի պատմության հիմնական պրոբլեմների լուսաբանմանը նվիրված գիտական շատ մեծ արժեք ներկայացնող աշխատություններ։ Սովետահայ պատմաբանները իրենց ուսումնասիրություններում, հասարակական երևույթների կոնկրետ վերլուծության ճանապարհով, ցույց են տվել պատմական պրոցեսի մարքս-լենինյան ըմբռնման խոր ճշմարտությունն ու կենսունակությունը։

Սովետահայ պատմական գիտության նվաճումները շատ են և դրանց մասին բավական նշվել ու խոսվել է։ Ներկա հոդվածի հիմնական նպատակն է, սակայն, կանգ առնել մի չափազանց կարևոր ու թերևս հրատապ խնդրի վրա։ Խոսքը վերաբերում է մարքսիզմի հիմնադիրների կողմից ճանաչված «միայն մեկ միակ գիտության—պատմության գիտության» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 16) զարգացման պատմության՝ պատմագրության ներկա վիճակին ու նրա խնդիրներին։ Ցավոք սրտի պետք է նշել, որ պատ-



մական գիտության բաղկացուցիչ մասը կազմող, նրա արդյունքները հանրագումարի բերող և, որ կարևորն է, նրա զարգացման խթանող գործոնը հանդիսացող պատմագրության վիճակը մեզ մոտ չափազանց անմխիթարական է։ Դրա հիմնական պատճառն այն է, որ մինչև վերջերս մեզ մոտ նրա դերը թերագնահատված էր, եթե չասենք անտեսված. այն իբրև ինքնուրույն գիտություն ճանաչում չէր ստացել, բացակայում էր հստակ պատկերացումը նրա էության, դերի ու խնդիրների մասին։ Պատմագիտության հարցերին նվիրված աշխատանքները (բացառապես հոդվածներ, որոնց քանակը շատ աննշան է) կամ կրում են ընդարձակ մատենագրական, կամ լավագույն դեպքում պատմական աշխատությունների ծանոթագրությունների բնույթ, գրեթե զուրկ տեսական, մեթոդոլոգիական ու սոցիոլոգիական ընդհանրացումներից ու հետևություններից։

Նկատենք, որ այս խոշոր բացը բնորոշ է ոչ միայն պատմագրական բնույթի աշխատանքներին, այլև պատմական հետազոտությունների գերիշխող մասին։ Այդ բացը արդյունք էր անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում հասարակական գիտությունների բնագավառում գիտահետազոտական աշխատանքներում արմատացած արատավոր մեթոդների։

Պատմագրության նման վիճակի պատճառներից մեկն էլ, մի կողմից, պատմաբան որոշ կադրերի տեսական ցածր պատրաստականությունն է, իսկ մյուս կողմից, կարող ուժերի մոտ՝ անհատի պաշտամունքի ժամանակաշրջանում տիրող մտավախությունը։

ՍՄԿԿ XXII համագումարից հետո ստեղծագործական աշխատանքի համար ստեղծվել են լայն հնարավորություններ։ Պատմության շատ պրոբլեմներ պետք է վերանայվեն և նրանք սպասում են իրենց նոր, գիտական լուսաբանմանը։ Շատ հարցերում անհրաժեշտ է վերականգնել պատմական ճշմարտությունը, վերացնել մարքսիզմ-լենինիզմի պատմագիտական սկզբունքների ու մեթոդոլոգիական աղավաղումները։

Վերջին տարիներս Հայկական ՍՍՌ ԳԱ Պատմության ինստիտուտն այս ուղղությամբ ծավալած աշխատանքներին զուգընթաց միջոցառումներ է մշակել և բարելավել պատմագրության դրվածքը, նախատեսել է ունենալ պատմագրությամբ զբաղվողների առանձին խումբ։ Սակայն դրանք առաջին քայլերն են միայն։ Ժամանակն է գործնական միջոցառումներ ձեռնարկել Հայկական ՍՍՌ ԳԱ հիմնական պրոֆիլներից մեկը հանդիսացող պատմական գիտության այդ բնագավառը գիտական ամուր հիմքերի վրա դնելու, անհրաժեշտ բոլոր հնարավորությունները ստեղծելու և այդ ուղղությամբ տարվող աշխատանքներն արմատապես բարելավելու համար։

***

*Ինչ է պատմագրությունը և որոնք են նրա խնդիրները։*

Պատմագրությունը պատմական գիտության զարգացման պատմությունն է։ Այն իբրև գիտություն ուսումնասիրում է մարդկային հասարակության զարգացման մասին գիտելիքների կուտակման, հասարակական երևույթների մեկնաբանության բնագավառում պատմական տարբեր դպրոցների, ուղղությունների ու հոսանքների պայքարի, որոնք արտացոլում են դասակարգային պայքարը, պատմությունը, պատմական զարգացման օրենքների բացահայտման

պատմությունը (տե՛ս Очерки истории исторической науки в СССР, т. I, М. 1955, стр. 5)։

Հայտնի է, որ յուրաքանչյուր դարաշրջան իր վերաբերմունքն է ստեղծում պատմության, անցյալի նկատմամբ։ Այդ վերաբերմունքը որոշվում է դարաշրջանի սոցիալական ու քաղաքական պայմաններով և ամենից առաջ դասակարգային այն պայքարով, որը բնորոշ է այդ դարաշրջանին։ Պատմագրությունը պետք է տա նախորդ հասարակական-տնտեսական ֆորմացիաներից մեզ հասած պատմական ժառանգության քննադատական ուսումնասիրությունը, պատմական գիտության զարգացման քննադատական շարադրանքը, որոշի թե ինչ չափով է պատմաբանը ներկայացնում ժամանակին իշխող պատմական մտքի այս կամ այն հոսանքը և այդ տեսանկյունից էլ վերլուծի նրա հայացքները, բացահայտի դասակարգային այն զսպանակները, որոնցով իրենց երկրում ղեկավարվել են անցյալի պատմաբանները։ Պատմագրությունը հասարակական մտքի պատմության մի բնագավառն է և այն սերտորեն առնչված է դարաշրջանի քաղաքական ու փիլիսոփայական ընդհանուր հոսանքների հետ և միշտ երանգավորված է քաղաքականությամբ, որոշ դեպքերում բացահայտ, որոշ դեպքերում քողարկված ձևով և այդ իմաստով նա հանդիսանում է քաղաքական ու դասակարգային պայքարի զենք։

Պատմագրությունը պատմական գիտության զարգացումը պետք է ուսումնասիրի հասարակության զարգացման պրոցեսի հետ առնչված, պատմական դպրոցների, ուղղությունների և պատմական պատկերացումների ամբողջ սիստեմի օրինաչափ փոփոխման, հաջորդականության մեջ, վեր հանի պատմական գիտության ազդեցությունն ու դերը կարևորագույն հասարակական գաղափարների մշակման գործում։ Բուրժուական պատմագրությունն, իբրև կանոն, պատմական գիտության պատմությունը կտրում է հասարակության սոցիալ-քաղաքական զարգացումից, նրա մեջ տեսնելով միայն գաղափարների ինքնազարգացման պրոցես։ Այստեղ պատմական դպրոցները հետևողականորեն փոխարինում են մեկը մյուսին, առանց սուր պայքարի և գաղափարական բախումների։ Քողարկվելով «օբյեկտիվության» դիմակով, բուրժուական պատմաբանները անտեսում են առանձին պատմաբանների ու պատմական դպրոցների դասակարգային արմատների ու գաղափարական ուղղությունների հարցը։

Սովետական պատմագրությունը հենվում է մարքս-լենինյան պատմագիտության հիմնական սկզբունքների վրա։ Պատմական գիտությունը մարդկային հասարակության անցյալը ուսումնասիրելով ժողովուրդների ժամանակակից կյանքի հետ անխզելի կապի մեջ, հաստատելով հասարակության զարգացման օրենքները նրա գոյության տարբեր փուլերում և բացահայտելով սաղմի մեջ գտնվող այն երևույթները, որոնք պետք է որոշեն հասարակության զարգացման պրոցեսի հետագա ընթացքը, դրանով իսկ տալիս է արժեքավոր նյութ ապագա պատմական պրոցեսի գիտական կանխատեսության համար։

Անցյալի պատմությունից որոշակի դասեր վերցնելու համար չի կարելի բավարարվել միայն նրա նկարագրությամբ։ Մարքսիստական-լենինյան պատմագրության բնորոշ կողմն այն է, որ նա հայտնաբերում է հասարական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, բացահայտում է հասարակության շարժման ուղղությունները, երևան է հանում բազմապիսությունը։ Նա գտնում է հասարակության բաղկացուցիչ տարրերը, վերականգնում է հա-



սարակության շարժման պատկերը մեզ մատչելի առանձին մանրամասնություններով։

Պատմագրության խնդիրն է ոչ միայն հավաստել պատմական այս կամ այն երևույթը, այլև բացատրել այն՝ որոշակի պատմական պայմանների կոնկրետ միակցության մեջ։ Պատմագրությունը պատմական գիտության պատմությունը դիտում է իբրև դասակարգային պայքարի արտացոլումներից մեկը հասարակական գիտությունների բնագավառում։ Այս իմաստով էլ նա իր գլխավոր խնդիրներից մեկը համարում է պատմական գիտության մեջ պատմական դպրոցների, ուղղությունների, հոսանքների պայքարի դասակարգային բնույթի, գաղափարական ազդեցությունների բարդ հյուսվածքի բացահայտումը։ Նա պետք է պարզի, թե ինչու տարբեր ժամանակաշրջաններում այս կամ այն պրոբլեմն այդ պայքարում դառնում է հիմնական, ինչ ձևով է լուծվում այն զանազան հոսանքների ներկայացուցիչների կողմից և ընդհանրապես ինչպես և ինչ դիրքերից են ներկայացվում կամ արտացոլվում ժամանակակից կյանքը, քաղաքական իրադարձությունները, հասարակական երևույթները։ Պատմագրությունը հատուկ ուշադրություն պետք է դարձնի այն հոսանքներին, որոնք արտացոլում ու արտահայտում են ժողովրդական մասսաների ակնկալությունները։ Նա առաջին հերթին պետք է ներկայացնի առաջադիմական պատմական մտքի զարգացման պատմությունը, պատմական գիտության զարգացման մեջ նրա առաջատար դերի պատմությունը։ Պատմագրության հիմնական խնդիրներից է նաև վեր հանել, առանձնացնել պատմական տարբեր ժամանակաշրջաններում առաջատար, պրոգրեսիվ ուղղությունները, անգամ այն դեպքում, երբ, հատկապես, իրենց զարգացման սկզբնական շրջանում նրանք իրենցից աչքի ընկնող երևույթները չեն ներկայացրել (տե՛ս Очерки истории исторической науки в СССР, стр. 13)։

Սովետական պատմագրությունը երևույթները պետք է դիտի ոչ թե հավաստիացման տեսանկյունով, այլ դրանք դիտի, քննարկի ու վերլուծի մարտնչող և միակ օբյեկտիվ կոմունիստական պարտիականության տեսանկյունով, քանի որ այդ պարտիականությունը ամբողջապես համընկնում է նրա գիտական օբյեկտիվության հետ, հենվում է հասարակական զարգացման գոյություն ունեցող օբյեկտիվ օրենքների վրա։

Պատմագրությունը պատմական գիտության աշխատանքների արդյունքները հանրագումարի բերող իր ֆունկցիայով պետք է նպաստի պատմաբան կադրերի մոտ, ընդհանրապես պատմագիտության մեջ գիտական քննադատական մտքի զարգացմանն ու խորացմանը։

Պատմագրության հիմնական խնդիրներից են և պատմական հետազոտությունների մեթոդների, եղանակների ու տեխնիկայի, ինչպես և պատմական աղբյուրների մեկնաբանման ձևերի զարգացման պատմության ուսումնասիրությունները (նույն տեղը, էջ 14), որոնց միջոցով հեղինակները այս կամ այն չափով ձգտել են հասնել անցյալի օբյեկտիվ իմացությանը։

Պատմագրության զարգացման հետ տեղի է ունենում և պատմական հետազոտության մեթոդիկայի ճշտում ու կատարելագործում, կիրառվում են ավելի ճշգրիտ եղանակներ, ընդլայնվում է աղբյուրների ուսումնասիրության բնագավառը, ընդգրկվում են նոր նյութեր, պատմական աղբյուրները սկսում են նոր տեսանկյունով ուսումնասիրվել։ Պատմագրության զարգացման զուգ-

ընթաց ուժեղանում է քննադատական մոտեցումը աղբյուրների նկատմամբ, նրանց ուսումնասիրության համար մտցվում են նոր մեթոդներ ու ձևեր:

Պատմագրության հիմնական խնդիրներից են և աղբյուրագիտական բազայի ընդլայնման պրոցեսի ուսումնասիրությունը, աղբյուրների քննադատական մեթոդների կատարելագործումը:

Պատմագրության խնդիրները բարդ են ու բազմակողմանի: Պատմական գիտության ներկա մակարդակը անհետաձգելիորեն պահանջում է լուրջ ուշադրություն դարձնել և արմատապես բարելավել նրա զարգացման ամենակարևոր մղիչ ուժի՝ պատմագրության՝ իբրև գիտության դրվածքը, ուժեղացնել պատմական գիտության գիտական, գաղափարական ու մեթոդոլոգիական մակարդակի բարձրացման ասպարեզում նրա խթանող դերը: Հասնել այն բանին, որ պատմագրությունը իսկապես կատարի պատմական գիտության զարգացման հայելու դերը, ընդհանրացնի, ամփոփի ու արտացոլի պատմագիտության նվաճումները, ինչպես պատմական անցյալի, այնպես և ժամանակակից իրականության պատմության ուսումնասիրության ու լուսաբանման ուղղությամբ: Ընդհանրացնելով ու հանրագումարի բերելով ֆորմացիաները, դարաշրջաններ, փուլեր ընդգրկող ժամանակաշրջաններին, ինչպես և խոշոր պրոբլեմներին վերաբերող պատմական աշխատությունների նվաճումները, պատմագրությունը միաժամանակ պարտավոր է վեր հանել պատմական ուսումնասիրությունների գիտական, գաղափարական ու մեթոդոլոգիական թույլ կողմերը, սխալներն ու թերությունները, նշել պատճառները, տալ դրանց խոր վերլուծությունը և վերացման ուղիները:

Տալով պատմական հետազոտությունների մարքսիստական-լենինյան վերլուծությունը, պատմագրությունը միաժամանակ պետք է կարողանա պատմաբանների ուշադրությունը կենտրոնացնել հասարակության զարգացման յուրաքանչյուր փուլը բնորոշող, նրա առանձնահատկությունը կազմող հասարակական երևույթների, նրանց ծնող և նրանց զարգացման պրոցեսը պայմանավորող տնտեսական, քաղաքական ու գաղափարական գործոնների պատմությունը բացահայտող ու լուսաբանող պրոբլեմների ու հարցերի վրա, որոնց անտեսումը, թերի կամ ոչ անհրաժեշտ չափով ուսումնասիրությունը հանդիսանում են պատմության առանձին դարաշրջանների, տնտեսական ֆորմացիաների ու շատ կարևոր պրոբլեմների մակերեսային, հաճախ սխալ լուսաբանման պատճառը:

Մեր պայմաններում երկար ժամանակ, թերևս և առանձին մասնագետների մոտ մինչև այսօր էլ, տեղ են գտել սխալներ և վերջ չունեցող վեճեր այնպիսի կարևոր պրոբլեմների շուրջ, ինչպիսիք են՝ Հայաստանում ստրկատիրական ֆորմացիայի առկայության, նրա և ֆեոդալիզմի ծագման ու տևողության, հայ ժողովրդի պատմության պերիոդիզացիայի, գյուղացիության ճորտացման պրոցեսի ժամանակաշրջանի, հայկական վերածննդի, ազգային ազատագրական շարժումների ու հայ ժողովրդի քաղաքական օրիենտացիայի, քաղաքական-հասարակական հոսանքների և պարտիաների ու նրանց գործունեության բնութագրման ու գնահատականների և մի շարք այլ պրոբլեմները:

Հանրագումարի բերելով անցյալի ու ժամանակակից պատմաբանների ստեղծագործական աշխատանքի արդյունքները, պատմագրությունը պետք է կողմնորոշի պատմագիտության բնագավառի աշխատողներին պրոբլեմատի-



կայի ընտրության գործում, ելնելով պատմական գիտությունը հարստացնելու շահերից և, որ կարևորն է, կոմունիստական շինարարության առաջադրած խնդիրների կենսագործման անհրաժեշտությունից:

Մեր առաջընթացի յուրաքանչյուր փուլում հանրագումարի բերելով պատմական գիտության նախորդ շրջանի արդյունքները, պատմագրությունը պետք է օժանդակի պատմաբան կադրերին ոչ միայն ճիշտ, խոր ու բազմակողմանի լուսաբանելու մեր ժողովրդի ստեղծագործական, հերոսական սխրանքների բազմահարուստ առօրյան, այլև հստակ ու ճշգրիտ կատարի ժամանակի ու պրոբլեմատիկայի հարաբերակցության հարցում ծանրաչափի (բարոմետրի) իր դերը, նշի այժմեականության կարևորագույն պրոբլեմները, հիմնական ուշադրություն բևեռի պատմության այն պրոբլեմների վրա, որոնք գտնվում են գաղափարական պայքարի կենտրոնում:

Մեր ժամանակաշրջանի պատմությանը նվիրված ուսումնասիրությունները չեն կարող չլինել պրոբլեմատիկ ու ակտուալ: Դեպքերի հստակ, բարեխիղճ նկարագրությունը իրենց հետևողականությամբ, այն էլ ժամանակի և տարածության համեմատաբար սահմանափակ նյութի հիման վրա, կարող է լինել դեպքերի մասնակցի հիշողությունների տարեգրություն և ոչ պատմական ուսումնասիրություն: Չկա պրոբլեմ, չկա և ուսումնասիրություն:

Պրոբլեմատիկ և ակտուալ պետք է լինեն նաև մյուս բոլոր դարաշրջանների պատմության լուսաբանմանը նվիրված աշխատանքները: Ընդհանրապես պատմական ուսումնասիրությունը չպետք է լինի ինքնանպատակ, այն պետք է ծառայի պատմական գիտության հարստացմանն ամբողջությամբ վերցրած, հնարավորություն տա կատարելու լուրջ և հիմնավոր եզրակացություններ, ամրապնդի մեր աշխարհայացքի հիմքերը: Դժբախտաբար կան աշխատություններ, որոնք ակտուալ են միայն իրենց խորագրով, սակայն իրականում կրում են նկարագրական բնույթ, կամ փաստերի և իրադարձությունների թվարկումներ են, որոնք թույլ չեն տալիս անելու և ոչ մի լուրջ հետևություն ու ընդհանրացում: Շատ հին ժամանակների պատմությանը նվիրված աշխատությունները կարող են լինել ակտուալ, եթե նրանցում կան լայն և հիմնավորված գիտական եզրակացություններ (տե՛ս «Вопросы истории», 1965, № 6, стр. 140—141), որոնք հարստացնում են պատմական փորձի մեր գիտելիքները: Ի դեպ, նկատենք, որ մեզ մոտ հրատարակչական որոշ օղակներում թեմատիկայի ակտուալության հարցում հստակ պատկերացում չկա: Ցուցաբերելով չմտածված, մեխանիկական մոտեցում, նրանք ակտուալ են համարում հիմնականում միայն այն թեմատիկան, որ վերաբերում է ետհոկտեմբերյան շրջանին, իսկ վերջերս ավելի առաջ են գնացել, այդ սահմանազատումը հասցրել են մինչ ետպատերազմյան (հայրենական) ժամանակաշրջանը: Կարծում ենք, պետք է վերջ տալ նման սխալ մոտեցմանը և թեմատիկայի ակտուալության հարցը որոշել ելնելով պատմագիտության ընդհանուր շահերից:

Փոքր չէ պատմագրության դերը ինչպես պատմաբան կադրերի ուժերի ճիշտ տեղաբաշխման ու օգտագործման, այնպես և երիտասարդ մասնագետներին մարքս-լենինյան պատմագիտության սկզբունքներով ու տրադիցիաներով դաստիարակելու գործում:

Ժամանակին առաջադրելով այս կամ այն պրոբլեմատիկայի մշակման անհրաժեշտությունը, դրանով իսկ պատմագրությունը կնպաստի պատմագիտության բնագավառում կադրերի ընտրության ու պատրաստման ճիշտ պլա-

նավորմանը։ Ընդհանրացնելով ու հանրագումարի բերելով պատմական ուսումնասիրությունների արդյունքները, տալով նրանց գիտա-գաղափարական ու մեթոդոլոգիական խոր վերլուծությունը, ցույց տալով նրանց դրականն ու բացասականը, դրանով իսկ նա կնպաստի կադրերի ստեղծագործական աճին ու ավելի նպատակասլաց կդարձնի նրանց գործունեությունը։

Պատմագրությունը գիտական ամուր հիմքերի վրա դնելու և նրա ու, ընդհանրապես, պատմական գիտության հետագա զարգացումն ապահովելու գործում, մեր կարծիքով, չափազանց կարևոր նշանակություն ունի ՍՍՌՄ ԳԱ հասարակական գիտությունների բաժանմունքի կողմից 1964 թվականի հունվարի սկզբին կազմակերպված պատմական գիտության մեթոդոլոգիական հարցերի քննարկումը։ Պատմագիտության հետագա գիտական-գաղափարական ու, հատկապես, մեթոդոլոգիական բարձր մակարդակի ապահովումը պատմության բնագավառի գիտահետազոտական հիմնարկներին ու մասնագետներին պարտավորեցնում է խոր կերպով ուսումնասիրել այդ քննարկման նյութերը, քննադատաբար վերանայել իրենց աշխատանքները և, որ կարևորն է, կոնկրետ միջոցառումներ մշակել այնտեղ նշված սխալներն ու աղավաղումները վերացնելու, հաղթահարելու համար։

Տարօրինակ է, սակայն, որ Հայկական ՍՍՌ ԳԱ Հասարակական գիտությունների բաժանմունքի բյուրոն, նրա համապատասխան գիտահետազոտական հիմնարկները ձևական մոտեցում ցուցաբերեցին այդ նյութերի քննարկման գործում, կոնկրետ և ոչ մի միջոցառում չմշակվեց, բավարարվեցին միայն մեկ-երկու ընդհանուր բնույթի զեկուցումներ կազմակերպելով։ Մինչդեռ անհրաժեշտ էր միութենական ակադեմիայի օրինակով տեղում ուսումնասիրել հայ պատմագիտության գիտահետազոտական աշխատանքների արդյունքները և նույն տեսանկյունով վեր հանել կոնկրետ մեր պայմաններում տեղ գտած սխալները, աղավաղումներն ու բացերը և ձեռնարկել գործնական միջոցառումներ դրանք վերացնելու ուղղությամբ։

Տարիներ շարունակ հայ ընթերցողը սպասում է իր ժողովրդի ամբողջական պատմության լուսաբանմանը նվիրված լիարժեք, խոր գիտական հետազոտության։ Այդ կենսական պահանջը իրականացնելու համար հայ պատմաբանները դեռ շատ ու շատ անելիքներ ունեն։ Մեր ժողովրդի պատմությունը դեռ շատ չմշակված կամ թերի ու մակերեսային մշակված, վեճերի առարկա հանդիսացող պրոբլեմներ ու հանգուցային հարցեր ունի։ Դրանց գիտական, խոր ու բազմակողմանի մշակումը պահանջում է հետևողական, ստեղծագործական աշխատանք։

Անհրաժեշտ է նշել, որ մեր պատմագրության մեջ տեղ են գտել մի շարք կոպիտ աղավաղումներ ու բացեր, սխալներ, որոնց մասին հանգամանորեն խոսվեց պատմական գիտության մեթոդոլոգիական հարցերին նվիրված խորհրդակցությունում։ Մինչև վերջերս աղավաղվում էր հատկապես մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրների այն դրույթը, որ հասարակության ամբողջ պատմությունը, բացառությամբ նախնադարյան ժամանակների, դասակարգային պայքարի պատմություն է, որ պատմության գլխավոր շարժիչ ուժը դասակարգային պայքարն է։ Պատմական գիտության առարկան հասկացվում էր նեղացված, միակողմանի, հասարակության պատմությունը սահմանվում էր իբրև արտադրության զարգացման պատմություն, արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների պատմություն։ Պատմական գիտության



առարկայի նման սահմանափակ, միակողմանի տնտեսական հասկացությունը հանգեցրել էր ընդհանրապես պատմական գիտության մեթոդոլոգիական սկզբունքների դերի նվազեցման, էմպիրիզմի և նկարագրականի ուժեղացման։ Իսկ մեթոդոլոգիական հարցերից հեռանալը դեպի նկարագրականը, նշանակում էր նահանջ գիտության պարտիականությունից, քանի որ չի կարող պահպանվել պարտիականության սկզբունքը, եթե անհրաժեշտ ուշադրություն չի դարձվում աշխարհայացքի, մեթոդոլոգիայի պրոբլեմներին։ Պատմության մեթոդոլոգիական պրոբլեմների ճիշտ լուծումը կարևոր նշանակություն ունի և պատմագրության մշակման համար։

Անհրաժեշտ խորությամբ չէին հետազոտվում պատմական պրոցեսի բոլոր հանգամանքների փոխազդեցությունները (դասակարգային պայքարի քաղաքական ձևերը և նրա արդյունքները, իրավական ձևերը, քաղաքական, իրավաբանական, փիլիսոփայական տեսությունները, կրոնական հայացքները և այլն), չէր բացահայտվում այդ պրոցեսի դիալեկտիկան։

XIX—XX դարերի դասակարգային պայքարի պատմության հարցերը լուսաբանելիս անտեսվում էր կամ անհրաժեշտ խորությամբ չէր ուսումնասիրվում քաղաքական պարտիաների պատմությունը, մինչդեռ հայտնի է, որ պայքարի տնտեսական, քաղաքական ու գաղափարական ձևերի զարգացման, քաղաքական իրադարձությունների ընթացքի վրա տարբեր պարտիաներ մեծ ազդեցություն են ունեցել։

Հետազոտություններում անբավարար ուշադրություն է դարձվում նաև հասարակական մտքի պատմության ուսումնասիրությանը, որը հանդիսանում է դասակարգային պայքարի զենք։

Ժամանակին Մ. Ն. Պոկրովսկու կոնցեպցիայի քննադատության կապակցությամբ, պատմության և սոցիոլոգիայի հարաբերակցության հարցը խիստ խճճվել էր, պատմական հետազոտություններում այդ քննադատությունը վեր էր ածվել այսպես ասած սոցիոլոգիզմի դեմ պայքարի։ Այսօր պատմական պրոբլեմների մեթոդոլոգիական ճիշտ և խոր մշակումը պահանջում է վերանայել սոցիոլոգիայի նկատմամբ այդ սխալ մոտեցումը, նոր ձևով դնել և լուծել պատմության և սոցիոլոգիայի հարաբերակցությունը։ «Վուլգար սոցիոլոգիզմի» հասկացության շատ ընդարձակ մեկնաբանումը հանգեցրել էր այն բանին, որ պատմական հետազոտություններում դուրս էին մղվել սոցիոլոգիական ընդհանրացումները։

Առանձին դեպքերում պատմական աշխատության մեջ տեսական ընդհանրացումների դերը հանգեցվում էր մասնագետի կողմից ընդհանուր սոցիոլոգիական օրենքների կրկնությանը և ուսումնասիրության մեջ կոնկրետ պատմական փաստերը դառնում էին միայն վաղուց հայտնի օրենքների կամ ուրիշների առաջադրած ներգործության օրինակի իլյուստրացիա։ Նման դեպքերում պատմաբանը ստանձնում է արդեն հայտնի դրույթների իլյուստրացիայի համար նոր օրինակներ, փաստեր որոնողի դեր, որը իհարկե, շատ հեռու է նրա իսկական կոչումից։ Փաստագրությունը և տեսական ընդհանրացումները այն երկու հիմքերն են, որոնց վրա կանգնում է պատմական գիտությունը։

Ընդհանուր սոցիոլոգիական օրենքների ուսումնասիրության ժամանակ պատմաբանը չպետք է դրանք իլյուստրացիայի ենթարկի օրինակներով, այլ պետք է պարզաբանի կոնկրետ պայմաններում (որոշակի երկրում և որոշակի ժամանակաշրջանում) այդ օրենքների ներգործության առանձնահատկություն-

ներն ու մեխանիզմը։ Պատմաբանից չի պահանջվում միևնույն օրինաչափությունների վիճակագրական հաստատում։ Պատմաբանի կողմից պատմական գիտության մեջ նոր նյութի ներմուծումը պետք է տա պատմական պրոցեսի նոր ասպեկտներ, բացահայտի զարգացման օրինաչափությունները։ Դրա հետ մեկտեղ պատմաբանը պետք է պարզի պատահական երևույթների դերը, որոնք ամենուր և բոլոր ժամանակներում զգալի տեղ են գրավում հասարակության կյանքում, քանի որ առանց դրանց դերի բացահայտման պատմությունը կունենա միստիկական տեսք։ Այլ խոսքով, պետք է ցույց տրվի, թե ինչպես անհրաժեշտությունն իր համար ճանապարհ է բացում պատահականությունների բազմության միջոցով։ Անհրաժեշտ ուշադրություն պետք է դարձնել պատմական իրականության մեջ թաքնված հնարավորությունների, այլ տենդենցների բացահայտմանը, որոնք ճնշվել են, լայն ասպարեզ չեն ստացել իրենց դրսևորման համար։ Սրանց չբացահայտման դեպքում պատմության պրոցեսի մեր հասկացությունը կմնա մակերեսային, ոչ խոր։

Սոցիոլոգիական օրենքների ներգործության մեխանիզմի ուսումնասիրությունը կոնկրետ պայմաններում նշանակում է պատմական պրոցեսում տալ սուբյեկտիվ գործոնի դերի, մարդկանց գիտակից, նպատակասլաց գործունեության հստակ վերլուծությունը։ Պատմական հետազոտության կարևոր պրոբլեմներից մեկը պետք է հանդիսանա ժողովրդական մասսաների և նրանց գիտակցականության կազմակերպումը, ձևը և աստիճանը։

Պատմաբանը պարտավոր է առանձնահատուկ պատմական օրինաչափությունները բացահայտել, ուսումնասիրելով հասարակական կյանքում տնտեսական, քաղաքական և գաղափարական պրոցեսների փոխազդեցությունը։ Ընդհանուր սոցիոլոգիական օրենքները բացահայտում են այդ փոխազդեցության նյութական հիմքը, ցույց են տալիս այն դերը, որ կատարում են էկոնոմիկան, քաղաքականությունը, գաղափարախոսությունը պատմական զարգացման մեջ։ Սակայն որոշակի կոնկրետ պայմաններում այդ պրոցեսների օրինաչափություններն իրենց փոխազդեցություններում ուսումնասիրելը պատմաբանի առաջնահերթ խնդիրն է։

Մեր պատմաբանները պետք է հետազոտական աշխատանքներում խուսափեն պատմական համանմանության (անալոգիա) մեթոդից։ Այդ բուրժուական զուգահեռականության մակերեսային մեթոդ է, որը ժխտում է պատմական պրոցեսի օրինաչափությունը, արգելակում է երևույթների մեջ իրական ընդհանրության բացահայտումը։ Պետք է բացատրել պատմական երևույթի էությունը և միայն այդ ճանապարհով բացահայտել տարբեր երևույթների մեջ ընդհանրությունը, որոշել այդ ընդհանրության սահմանները, պարզել, հատկապես, այդ երևույթին բնորոշ առանձնահատկությունը։ Պատմական գիտության մեջ տվյալ փաստի մեկնաբանումը և գնահատումը ըստ էության նշանակում է բացահայտել տվյալ երևույթի օբյեկտիվ գոյությունն իր բազմապիսի կապերի մեջ։ Հենց դրանում էլ կայանում է հասարակական կյանքի երևույթների նկատմամբ գիտական մոտեցման էությունը։ Երբ պատմաբանը առաջադրում է փաստերը և բացահայտելով նրանց բնույթը հանգում է հասարակության զարգացման մեջ այս կամ այն հակամարտ տենդենցների առկայության մասին եզրակացության, նա դրանով բացահայտում է ռեալ պրոցեսները։ Փաստերը պետք է ծառայեն իբրև միջոց պատմական օրինաչափության իմացության համար։ Փաստի գնահատումը իրական, օբյեկտիվ



կապի բացահայտումն է, որ գոյություն ունի այս կամ այն փաստի և պատմական իրականության զարգացման տենդենցներում։ Գիտական մոտեցումը պահանջում է, որպեսզի փաստերը և երևույթները դիտվեն մեկը մյուսի հետ կապի մեջ, առնչվեն պատմության զարգացման ընդհանուր տենդենցների հետ։ Պատմական գիտության մեջ գաղափարական պայքարը ներկայումս գլխավորապես գնում է փաստերի մեկնաբանման, այսինքն՝ ընդհանրացման շուրջը, փաստերի ըմբռնումն ու բացատրումը որոշող պատմական կոնցեպցիաների շուրջը։

Պատմաբանը պարտավոր է գիտականորեն որոշել դարաշրջանի տիպիկական երևույթները։ Տվյալ դարաշրջանի երևույթների բազմապիսությունն ընդգրկել կարողանալը, տարբեր պրոցեսներում նրա տիպիկական և ոչ տիպիկական գծերը տեսնելը նշանակում է զբաղվել դարաշրջանի կոնկրետ պատմական վերլուծությամբ։ «Դարաշրջան» հասկացողության առանձնահատկությունները, օրինաչափությունները մեզ մոտ անբավարար են ուսումնասիրված, մինչդեռ դրանց վերլուծությունը գիտականորեն կհիմնավորի այդ հասկացողության ճիշտ կիրառումը։ Ընդհանրապես պետք է նկատել, որ դարաշրջանները, իբրև պատմական պրոցեսի զարգացման կարևոր աստիճաններ որոշակի հասարակական-տնտեսական ֆորմացիաների շրջանակներում, անհրաժեշտ խորությամբ չեն ուսումնասիրված, մինչդեռ պատմական պրոցեսի գիտական պերիոդիզացիայի հարցերն առանց դարաշրջանի վերլուծության անհնարին է լուծել։ «Ֆորմացիա» և «պատմական դարաշրջան» հասկացությունների ճիշտ հարաբերակցության հաստատումը պատմական պրոցեսի պերիոդիզացիայի շատ հարցերի լուծման բանալին է։ Իսկ պերիոդիզացիան կոչված է ոչ միայն արտացոլելու նոր հասարակական-տնտեսական ֆորմացիայի հաստատման օբյեկտիվ պրոցեսը, այլև այդ պրոցեսի առանձնահատկությունները։

Մեզ մոտ հատկապես թույլ են մշակված մեկ ֆորմացիայից մյուսին անցման հարցերը, այսինքն այն դարաշրջանների, որոնցում արտադրության նոր եղանակը չի դարձել անբաժանելիորեն գերիշխող, բայց և նախկին, հնացող արտադրաեղանակը արդեն չի որոշում պատմական պրոցեսի ընթացքը։ Այստեղ հատկապես անհրաժեշտ են կոնկրետ պատմական նյութի սոցիոլոգիական ընդհանրացումները։ Թույլ է ուսումնասիրվում և հասարակական-տնտեսական ֆորմացիաներում բազիսի և վերնաշենքի զարգացման ռևոլյուցիոն ու էվոլյուցիոն բնույթը։

Վ. Ի. Լենինը նշել է, որ դարաշրջանի վերլուծության համար կարևոր է հաստատել, թե որ դասակարգն է գտնվում տվյալ դարաշրջանի կենտրոնում և որոշում պատմական զարգացման ընթացքը։ Հայտնի է, որ յուրաքանչյուր հասարակական-տնտեսական ֆորմացիա ունի իր ծագման, գործուն և բարձր ձևի անցման հատուկ օրենքները, հետևապես ուսումնասիրության պետք է ենթակա լինեն յուրաքանչյուր ֆորմացիայի նշված երեք շրջաններում հասարակական կյանքը կառավարող հատուկ օրենքների ներգործությունը։ Սակայն պետք է նշել, որ միջին շրջանի օրենքների ներգործության ուսումնասիրությունը գրեթե անտեսված է և փաստորեն ստացվում է երկփուլանի ֆորմացիա՝ սկզբնավորվում և անկում կամ նորի հաստատում։ Նման մոտեցումը լուրջ կերպով խանգարում է տվյալ ֆորմացիայի կյանքը կառավարող օրենքների ներգործության պրոցեսը ուսումնասիրելուն։

***

ՍՄԿԿ ծրագրում նշված է, որ հասարակական գիտությունները հանդիսանում են հասարակական կյանքի ղեկավարման գիտական հիմքը։ Ըստ էության հասարակության մասին մարքսիստական գիտության դարավոր զարգացման մեջ նոր փուլ է սկսվել։ Պարտիայի ծրագիրը կոնկրետ խնդիրներ է առաջադրել ու որոշել հասարակական գիտությունների դերը կոմունիստական շինարարության մեջ, նշել է սովետական պատմաբանների գիտահետազոտական աշխատանքների գլխավոր ուղղությունները։

Պետք է հուսալ, որ մեր՝ Հայկական ՍՍՌ ԳԱ Պատմության ինստիտուտի պատմաբանների մի մեծ խմբի ուժերով պատրաստվող հայ ժողովրդի պատմության բազմահատոր աշխատությունը կամփոփի և կարտացոլի մեր պատմաբանների վերջին տարիների ծավալած գիտահետազոտական աշխատանքների արդյունքներն ու նվաճումները, որը և խթան կհանդիսանա հայ ժողովրդի բազմահարուստ պատմության հետագա էլ ավելի խոր ու բազմակողմանի լուսաբանման գործին։

Կոմունիստական շինարարության և գաղափարական պայքարի ներկա փուլում սովետահայ պատմաբանների առաջ լուրջ ու պատասխանատու խնդիրներ են դրված։

Այդ ամենը իրականացնելու և ընդհանրապես ռեսպուբլիկայում պատմագիտությունը անհրաժեշտ բարձրության վրա դնելու համար, կարծում ենք, ժամանակն է մեզ մոտ ստեղծել պատմաբանների ստեղծագործական մի կազմակերպություն՝ պատմաբանների ընկերություն կամ միություն։

Ցանկության կարգով արված մեր այս առաջարկը հեշտ իրականացվող, բայց և միաժամանակ չափազանց կարևոր ու անհրաժեշտ միջոցառում է։ Այդ կազմակերպությունը, կարծում ենք, պետք է ստեղծվի և գործի հասարակական հիմունքներով, ունենա իր համապատասխան սեկցիաները։ Պատմագիտության ընդհանուր գիտական, գաղափարական, մեթոդական ու մեթոդոլոգիական հանգուցային հարցերի քննարկման նպատակով, ըստ անհրաժեշտության, տարվա ընթացքում այն պետք է ունենա ընդհանուր հավաքներ, 2 կամ 3 տարին մեկ անգամ իր համագումարը և այլն։

Պատմաբանների ստեղծագործական նման կազմակերպություն, կարծում ենք, պետք է ստեղծվի և Միության մասշտաբով։



# ՆՅՈՒԹԱԿԱՆ ՇԱՀԱԳՐԳՌՎԱԾՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԻ ԱՌԹԻՎ

Արձանագրելով, որ երկրի գյուղատնտեսության ետ մնալու հիմնական պատճառներից մեկը հանրային տնտեսության վերելքի, հանրային և անձնական շահերի ճիշտ զուգակցման գործում կոլտնտեսականների ու սովխոզների բանվորների նյութական շահագրգռվածության սկզբունքների խախտումն է, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մարտյան (1965 թ.) պլենումը արմատական միջոցառումներ մշակեց դրան խսպառ վերջ տալու և սոցիալիստական տնտեսության մեջ աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացման լենինյան ցուցումներն անշեղորեն կենսագործելու համար։

Հանրահայտ է, թե պարտիայի Կենտկոմի մշակած միջոցառումները, որոնք խարսխված են սոցիալիստական արտադրության զարգացման տնտեսական օրենքների վրա, ինչպիսի ջերմ ընդունելություն գտան գյուղատնտեսության աշխատողների, սովետական ողջ ժողովրդի կողմից։ Հանրահայտ է նաև այն, թե ինչպես այդ միջոցառումներն արդեն իրականացվում են կյանքում ու մեծապես նպաստում կոլտնտեսությունների և սովխոզների տնտեսապես ու կազմակերպչորեն առավել ամրապնդմանը, նրանց էկոնոմիկայի համակողմանի զարգացմանն ու գյուղի աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացմանը։

Պրակտիկան անհերքելիորեն ցույց է տալիս, թե սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման գործում, ի թիվս մյուս միջոցառումների, որքան կարևոր նշանակություն ունեն հանրային ու անձնական շահերի ճիշտ զուգակցումը, գյուղատնտեսության բոլոր աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումը, դրանց ձևերի ու մեթոդների կատարելագործումը։ Հենց դա էլ նկատի ունենալով է, որ կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարներից, պարտիական ու սովետական աշխատողներից, տնտեսագետներից և գիտության մյուս գործիչներից մի շարք ընկերներ մամուլում հանդես են գալիս այդ հարցի շուրջը և տարբեր բնույթի առաջարկություններ անում հանրային տնտեսությունների ու նրանց աշխատողների նյութական շահագրգռվածության ձևերն ու մեթոդները կատարելագործելու և այդ ուղղությամբ եղած առաջավոր փորձը լայնորեն արմատավորելու համար։

Տվյալ հարցի առթիվ «Լենինյան ուղիով» ամսագրում բանավեճի կարգով հանդես է եկել պատմական գիտությունների թեկնածու ընկ. Վ. Բաղդագուլյանը*։ Հանգամանորեն անդրադառնալով գյուղատնտեսական արտադրության մեջ նյութական շահագրգռվածության բարձրացմանը, նա շոշա-

* Վ. Բաղդագուլյան. «Գյուղատնտեսական արտադրության մեջ նյութական շահագրգռվածության հարցի շուրջը», «Լենինյան ուղիով», № 8, 1965 թ., էջ 85—95։

փում է մի շարք կարևոր հարցեր ու անում համապատասխան առաջարկություններ, որոնցից մի քանիսի առթիվ ցանկանում ենք հայտնել մեր նկատառումները։

Իրավացի է ընկ. Բաղդագուլյանը, երբ գրում է, որ «Հասարակական արտադրության մեջ անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքը հաջող կենսագործելու համար պետք է համապատասխանորեն կազմակերպել արտադրությունը և կանոնավորել բաշխման հարաբերությունները։ «Այս երկու կողմերից որևէ մեկի անտեսումը խոչընդոտում է նշված սկզբունքի կիրառումը, իսկ երբեմն էլ այն դարձնում անհնարին» (էջ 85)։ Խոսելով կոլտընտեսային արտադրության կազմակերպման մասին, նա նշում է, որ անհրաժեշտ է պարզել, թե տվյալ արտադրությունը կազմակերպելու ո՞ր ձևերն են առանձնապես նպաստում կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Վերլուծելով դրա վերաբերյալ եղած տարբեր կարծիքները, ընկ. Բաղդագուլյանը միանգամայն հիմնավոր կերպով անընդունելի է համարում հողը առանձին կոլտնտեսականներին կամ կոլտնտեսային ընտանիքներին ամրացնելու և նրանց պլան տալու ու դրա համապատասխան արտադրանք պահանջելու, ինչպես նաև հողի համայնական սեփականության վրա խարսխված առանձին գյուղացիական տնտեսություններ ստեղծելու վերաբերյալ եղած տեսակետները, որոնք իրոք քննադատության չեն դիմանում և չեն համապատասխանում տնտեսավարման սոցիալիստական առաջավոր սիստեմին։

Ընկ. Բաղդագուլյանն անընդունելի է համարում նաև մյուս ընկերների այն տեսակետը, ըստ որի նրանք խորհուրդ են տալիս ստեղծել դաշտավարական-տրակտորային կամ կոմպլեքսային մեքենայացված խոշոր բրիգադներ և դրանց միջոցով բարձրացնել արտադրության մակարդակը։ Գտնելով, որ նման բրիգադների ստեղծումն անհարիր է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության արտադրապայմաններին, արտադրության կազմակերպման նման ձևը նա համարում է արատավոր, որովհետև այն ենթադրում է՝ առաջին. համատարած մեքենահարմար հողատարածություններ, որտեղ դաշտավարական բոլոր աշխատանքները կատարվեն բացառապես մեքենաների միջոցով, մինչդեռ հանրահայտ է, որ մեր ռեսպուբլիկայի հողատարածությունները այդպիսին չեն։ Երկրորդ. կոմպլեքսային բրիգադները հիմնականում պիտանի են մասնագիտացված տնտեսություններում, որպիսիք մեզ մոտ համարյա չկան։ Երրորդ. կոմպլեքսային բրիգադների կազմակերպումը ենթադրում է մանր բրիգադների խոշորացում, որոնք անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման համար նվազ պիտանի են։ Չորրորդ. մեքենայացված կոմպլեքսային բրիգադները մերժվել են կյանքի, պրակտիկայի կողմից (էջ 86—87)։

Այդ բոլորից հետո ընկ. Բաղդագուլյանը գտնում է, որ ներկա էտապում գյուղատնտեսական արտադրության կազմակերպման նպատակահարմար ու արդյունավետ ձևը կոլտնտեսություններում և սովխոզներում փոքր արտադրական բրիգադների (մինչև 25 հոգուց բաղկացած) ստեղծումն է և դրանցում ըստ արտադրանքի վարձատրության կազմակերպումը (էջ 87)։

Այս հարցում ընկ. Բաղդագուլյանի մոտեցումը հիմնավոր չէ, և մենք չենք կարող համաձայնել նրա կարծիքի հետ։ Նախ՝ բրիգադների կազմակերպման գործում երբեք նպատակահարմար չէ բոլոր կոլտնտեսություններին միատե-



սակ դեղատոմս առաջարկել և նույնիսկ որոշել, թե յուրաքանչյուր բրիգադն քանի հոգուց պետք է բաղկացած լինի։ Չխոսելով այն մասին, որ դա կոլտընտեսությունների ներքին գործն է, ասենք, որ ամեն մի կոլտնտեսություն բրիգադների մեծությունն ու տիպը որոշում է՝ ելնելով իր ուրույն արտադրապայմաններից, տնտեսության մասնագիտացման բնույթից և ունեցած հնարավորությունների ռացիոնալ օգտագործման նպատակահարմարությունից։ Այս ուղղությամբ մեր կոլտնտեսություններն ու սովխոզները դրական քիչ փորձ չունեն, որը մենք չենք կարող անտեսել։

Ծանոթանալով Բասարգեչարի, Կամոյի, Մարտունու, Արտաշատի, Սևանի, Ստեփանավանի, Գորիսի և մյուս շրջանների կոլտնտեսային արտադրության կազմակերպման պրակտիկային, տեսնում ենք, թե ինչպես տարբեր շրջանների և նույնիսկ մեկ, առանձին վերցրած շրջանի տարբեր կոլտնտեսությունների դաշտավարական բրիգադներն իրենց ամրացված արտադրամիջոցներով, այդ թվում և աշխատող ձեռքերով, միևնույն մեծությունը չունեն։ Կան մինչև 120 և նույնիսկ ավելի հոգուց բաղկացած դաշտավարական խոշոր բրիգադներ, որոնք գյուղատնտեսական առանձին կուլտուրաների մշակությունն ընդարձակ տարածությունների վրա բացառապես կատարում են մեքենաների միջոցով։ Ավելին, ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները հասկավոր կուլտուրաների դաշտերում վարը, ցանքը և բերքահավաքը գրեթե լրիվ կերպով կատարում են մեքենաների միջոցով։ Մեքենայացման մակարդակը բարձր է նաև բամբակի և շաքարի ճակնդեղի վարի, ցանքի ու մշակության բնագավառներում։

Այսքանից հետո միթե կարելի է պնդել, թե խոշոր (կամ ինչպես ընկ. Բաղդագուլյանն է ասում կոմպլեքսային ու դաշտավարական տրակտորային) բրիգադներ չպետք է կազմակերպել, որովհետև մեր ռեսպուբլիկայի հողատարածություններն այնպիսին չեն, որ դաշտավարական բոլոր աշխատանքները կատարվեն բացառապես մեքենաների միջոցով։ Վերը բերված փաստերը մեզ հիմք են տալիս ասելու, որ նման պնդումը ոչ միայն հիմնավոր չէ, այլ հակասում է իրերի ռեալ վիճակին, անտեսում պրակտիկայում իրեն արդարացրած փորձը։ Մեր ռեսպուբլիկայում կան տասնյակ հազարավոր հեկտար մեքենահարմար վարելահողեր և տեխնիկայի օգնությամբ այդպիսիք հետզհետե ավելի են ընդարձակվում։ Իհարկե, կան նաև այնպիսի վարելահողեր, որոնք իրենց ռելիեֆի պատճառով դեռևս մեքենահարմար չեն։ Բայց այդպիսիք շատ չեն և չի կարելի դրանց հիման վրա ընդհանրացում կատարել և բռնել խոշոր բրիգադները փոքրացնելու ուղին։ Դա ոչ միայն կվնասի, այլև կարգելակի դաշտավարական աշխատանքների լայնորեն մեքենայացմանը։ Մինչդեռ գյուղատնտեսության զարգացման ներկա էտապում, երբ պարտիան վերցրել է գյուղատնտեսության ինտենսիվացման կուրսը, կոլտնտեսային ու սովխոզային արտադրության մեքենայացումը և այդ ուղղությամբ եղած միջոցների ռացիոնալ օգտագործումը բացառիկ կարևոր նշանակություն են ստանում։ Առանց դրա մենք չենք կարող հաջողությամբ լուծել գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցը։

Դաշտավարական փոքր բրիգադները, մանավանդ խոշոր կոլտնտեսություններում ու սովխոզներում, ձեռնտու չեն նաև այլ նկատառումներով։ Ունենալով մեծ թվով արտադրական փոքր բրիգադներ, տնտեսությունների ղեկավարներն ու գյուղատնտեսության մասնագետները ինչպես հարկն է չեն կարող

զբաղվել նրանց աշխատանքներով և օպերատիվ կերպով լուծել օրվա հարցե-
րը։ Բերենք այսպիսի մեկ օրինակ. Գորիսի շրջանի Տեղ գյուղի կոլտնտեսու-
թյունն ունի 2000 հեկտար վարելահող, որը մշակվում է 4 դաշտավարական և
նրանց սպասարկող մեկ տրակտորային բրիգադների միջոցով։ Այդ բրիգա-
դաներում ընդգրկված են մոտ 800 աշխատող կոլտնտեսականներ և եթե եղած
բրիգադաները վերակառուցվեն և նրանցից յուրաքանչյուրում ընդգրկվեն 25
հոգի, ապա կոլտնտեսությունը կունենա 32 արտադրական բրիգադա, այդքան էլ
բրիգադավարներ, գործիքների պահեստներ, աշխօրերի հաշվառման ու գրանց-
ման տեղեկագրեր, հաշվետվություններ, հաշվապահական գործեր և այլն,
որոնց համար զգալի միջոցներ կծախսվեն ու կստեղծվի ոչնչով չհիմնավորված
վարչա-կառավարչական մեծ ապարատ։ Այդ դեռ բոլորը չէ։ Արտադրական
այդպիսի փոքր բրիգադաների դեպքում, բնականաբար, խիստ կփոքրանան
նրանց ամրացվող հողատարածությունները և արհեստական դժվարություններ
կստեղծվեն ցանքաշրջանառության անցկացման ու մեքենայական պարկի
ռացիոնալ օգտագործման համար։ Ինչպես տեսնում ենք, հարցի թեկուզ պրակ-
տիկ կողմի վերլուծությունը բացառում է արտադրական այդպիսի փոքր բրի-
գադաներ ունենալու անհրաժեշտությունը։

Բազմաթիվ կոլտնտեսություններ, կոմպլեքսային մեքենայացված բրիգա-
դաների կազմակերպման համար առայժմ չունենալով համապատասխան հնա-
րավորություններ, ստեղծում են դաշտավարական և տրակտորային առանձին
բրիգադաներ։ Օրինակ, Բասարգեչարի Մեծ Մազրայի խոշոր կոլտնտեսությու-
նում կազմակերպված է դաշտավարական 5 և տրակտորային մեկ բրիգադա։
Վերջինս իր տրամադրության տակ ունեցած տեխնիկայով և մեխանիզատորա-
կան կադրերով հավասարապես սպասարկում է դաշտավարական բոլոր բրի-
գադաներին։ Արտադրության կազմակերպման այս ձևը (ներկա պայմաննե-
րում) կոլտնտեսություններում իրեն արդարացնում է։ Հարց է առաջանում,
արդյո՞ք կոլտնտեսությունը չէր կարող կազմակերպել կոմպլեքսային կամ դաշ-
տավարական-տրակտորային բրիգադաներ։ Ո՛չ, չէր կարող։ Դրա համար կոլ-
տնտեսությունն այժմ չունի բավարար քանակությամբ համապատասխան կադ-
րեր (ինժեներներ, մեխանիկներ), տեխնիկայի նորոգման, սպասարկման և այլ
անհրաժեշտ պայմաններ։

Ինչ խոսք, որ կոմպլեքսային բրիգադաներ առաջին հերթին նպատակա-
հարմար է ունենալ մասնագիտացված տնտեսություններում։ Տնտեսություն-
ների մասնագիտացման ուղղությամբ վերջին տարիներս որոշակի քայլեր են
կատարված և այդ պրոցեսը շարունակվում է։ Մենք արդեն ունենք մասնագի-
տացված մի շարք սովխոզներ և այնպիսի կոլտնտեսություններ, որոնց տնտե-
սության առաջատար առանձին ճյուղեր նույնպես մասնագիտացված են։ Այդ-
պիսի ճյուղերից են բուսաբուծությունը և, առանձնապես, հասկավոր կուլտու-
րաների մշակությունը, որոնց համար, մեր կարծիքով, նպատակահարմար է ու-
նենալ խոշոր բրիգադաներ։ Իսկ թե դրանք ինչ տիպի պետք է լինեն (կոմպ-
լեքսային, դաշտավարական-տրակտորային, բուսաբուծական և այլն), կորոշեն
կոլտնտեսությունները՝ ելնելով իրենց յուրահատուկ արտադրապայմաններից։

Մենք չենք կարող համաձայնել այն մտքի հետ, թե «մեքենայացված
կոմպլեքսային բրիգադաները մերժվել են կյանքի, պրակտիկայի կողմից»։ Այդ
հարցում չի կարելի ընդհանուր մոտեցում ունենալ և, իրոք առանձին տեղերում
քննություն չբռնած կոմպլեքսային բրիգադաների պրակտիկայից եզրակացնել,



թե արտադրության կազմակերպման այդ ձևը առհասարակ պիտանի չէ բոլոր
տնտեսությունների համար։ Մինչդեռ պրակտիկան առանձին շրջանում կամ
առանձին տնտեսությունում մի բան է ասում, մեկ ուրիշ տեղ՝ այլ բան, և դա
հասկանալի է։

Եթե Իջևանի շրջանի Աչաջրի, Գորիսի շրջանի Խնձորեսկի և մի շարք այլ
գյուղերի կոլտնտեսություններում 1958—1959 թվականներին ստեղծված կոմպ-
լեքսային մեքենայացված բրիգադաները իրոք իրենց չեն արդարացրել, և տըն-
տեսությունները հրաժարվել են դրանցից, ապա Արարատյան դաշտավայրի
առանձին տնտեսություններում, ուր արտադրապայմաններն այլ են, այդպիսի
բրիգադաները տվել ու տալիս են դրական արդյունք։ «Հայաստանի գյուղա-
տնտեսություն» ամսագրի 1965 թվականի փետրվարի համարում այդ մա-
սին է խոսում Հոկտեմբերյանի շրջանի Այգեշատ գյուղի կոլտնտեսության
նախագահ ընկ. Մ. Մկրտչյանը։ Նա պատմում է, որ տեխնիկան կոլտնտեսու-
թյուններին վաճառելուց հետո իրենց կոլտնտեսությունում ստեղծվեց բուսա-
բուծական կոմպլեքսային երեք բրիգադա, որոնց միջև հավասարապես բաժան-
վեցին այգիները, վարելահողը, տեխնիկան ու բանվորական ուժը։ Դա թույլ
տվեց կրճատել վարչա-սպասարկու անձնակազմի վեց հաստիք։ Միայն այդ
ճանապարհով մեկ տարում խնայվեց 3000 աշխօր, որով գործողության մեջ
դրվեց արտադրանքի ինքնարժեքի իջեցման մի նոր ռեզերվ։ Մյուս կողմից,
արտադրությունը կենտրոնացվեց և հիանալի հնարավորություններ ստեղծ-
վեցին եղած ռեզերվների արդյունավետ օգտագործման համար։ Ավելին, բարձ-
րացավ կոլտնտեսականների անձնական շահագրգռվածությունը՝ արտա-
դրության բոլոր ճյուղերում խնայողության ռեժիմը կիրառելու, շահութաբերու-
թյունը բարձրացնելու և հանձնարարված գործի նկատմամբ պատասխանա-
տվությունն ուժեղացնելու համար։ Դրան մեծապես նպաստեց նաև աշխատան-
քի վարձատրության ձևերի կատարելագործումը, որի շնորհիվ ամեն ոք ձգտում
է շատ արտադրանք տալ ու դրա համեմատ էլ լավ վարձատրվել։

Սակայն աշխատանքի կազմակերպման այդ ձևն էլ ուներ թերություններ,
որոնց առկայությունը թույլ չէր տալիս որակյալ կեր կուտակելու և անասնա-
բուծական մթերքների ինքնարժեքն իջեցնելու։ Հաշվի առնելով այդ, 1963 թվա-
կանին կոլտնտեսությունում կազմակերպվեցին բուսաբուծական-անասնաբու-
ծական կոմպլեքսային բրիգադաներ, որոնց հսկայական առավելությունները
դրսևորվեցին առաջին իսկ տարում։ Նրանք 1963 թվականին 100 հեկտար հողա-
տարածության հաշվով մսի արտադրությունը հասցրին 96, կաթինը՝ 560,
բրդինը՝ 7 ցենտների, որոնց ինքնարժեքը նախորդ տարվա համեմատությամբ
զգալիորեն ցածր էր։

Գոհացուցիչ են նաև բուսաբուծության արդյունքները։ Անցյալ տարի,
նախորդ տարվա համեմատությամբ, կոլտնտեսությունում բանջարեղենի ար-
տադրությունն ավելացավ 1,5, բամբակինն ու եգիպտացորենինը՝ 2, հացա-
հատիկինը՝ 2,4 անգամ։ Վերջին մեկ տարվա ընթացքում, չնայած որոշ կուլ-
տուրաների համար անբարենպաստ կլիմայական պայմաններին, տնտեսու-
թյան դրամական եկամուտն ավելացավ 15 տոկոսով, որի շնորհիվ աշխօրի հա-
սույթը կազմեց 3 ռ. դրամ, 2,8 կգ ցորեն և ուրիշ այլ մթերքներ։

Այս ամենը, իրավացիորեն նշում է ընկ. Մկրտչյանը, իհարկե, «չի նշա-
նակում, որ կոմպլեքսային բրիգադաներում աշխատանքի կազմակերպման
ձևերը հետագա կատարելագործման կարիք չեն զգում։ Կոլտնտեսային բազմա-

ճյուղ և բարդ արտադրությունն ինտենսիվ վարելու շահերը պահանջում են սիստեմատիկաբար որոնել և արմատավորել առավել առաջադիմական եղանակներ, անընդհատ կատարելագործել դրանք»։

Այժմ անդրադառնանք բրիգադաների հետ կապված մյուս հարցին։ Ճիշտ է, որ կոմպլեքսային բրիգադաների կազմակերպման դեպքում տեղի է ունենում մանր բրիգադաների խոշորացում, բայց որ խոշոր բրիգադաները անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման համար նվազ պիտանի են, քան փոքրերը, ճիշտ համարել չենք կարող։ Ընկ. Բաղդագուլյանն իր հոդվածում գրում է, որ արտադրական փոքր բրիգադաների «առավելությունը խոշորների նկատմամբ այն է, որ այստեղ համեմատաբար պարզորոշ է հանդես գալիս բրիգադայի յուրաքանչյուր անդամի աշխատանքի արդյունքի կախվածությունը քանակական ու որակական ցուցանիշներից։ Այսպիսով, բրիգադայի ներսում տնտհաշվարկային սկզբունքով աշխատանքի վարձատրության կիրառումը զգալիորեն նպաստում է բրիգադայի անդամների նյութական շահագրգռվածության բարձրացմանը» (էջ 87)։ Սակայն դա տեղի է ունենում նաև խոշոր բրիգադաներում։ Այստեղ կարևորը վարձատրության սկզբունքն է, որը թե՛ մեծ և թե փոքր բրիգադաների համար միևնույն է, մնում է, որ այն ճիշտ կիրառել։

Բայց ընկ. Բաղդագուլյանն այդպես չի մոտենում հարցին և իր տեսակետը հիմնավորում է նրանով, որ «...կոլտնտեսականը լավագույն դեպքում կարող է շատ աշխատել և շատ աշխօր վաստակել, բայց փոխել իր աշխօրի դիմաց տրվող եկամտի չափը, չի կարող, որովհետև վերջինս պայմանավորված է տնտեսության արտադրական գործունեության ընդհանուր արդյունքով։ Այսպիսով, որքան մեծ է կոլեկտիվը, որի շրջանակներում կատարվում է հանրային արդյունքից անհատական աշխատանքի վարձատրությունը, այնքան շատ են տատանումները այդ աշխատանքի և նրա դիմաց տրվելիք վարձատրության միջև, այնքան դժվար է այդ երկուսի համապատասխանեցումը։ Մինչդեռ փոքր բրիգադաներում նման համապատասխանությունն ստեղծվում է ինքնին, շնորհիվ այն բանի, որ այստեղ աշխատանքի ընդհանուր արդյունքը գոյանում է նեղ շրջանակներում և բաժանվում է համապատասխանաբար քիչ աշխատողների միջև» (էջ 87—88)։

Այս հարցում անհրաժեշտ է երկու պարզեցում մտցնել.

Առաջին. առանձին կոլտնտեսականը, իհարկե, չի կարող փոխել իր աշխօրի դիմաց տրվող եկամտի չափը։ Դա կախված է կոլտնտեսության տվյալ տնտեսական տարվա ընդհանուր արդյունքից, որից ելնելով, կոլտնտեսության ընդհանուր ժողովը կատարում է եկամուտների բաշխում և որոշում աշխօրի դիմաց տրվող եկամտի չափը։ Որքան շատ է հանրային տնտեսության եկամուտը, այնքան էլ բարձր կլինի աշխօրի դիմաց տրվող վարձատրությունը։ Այստեղ կոլեկտիվի մեծությունը բնավ չի կարող պատճառ հանդիսանալ հանրային աշխատանքի արդյունքի և դրանից անհատական աշխատանքի վարձատրության միջև տատանումների և անհամապատասխանությունների առաջացման, մանավանդ երբ գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրության համաձայն հավասար աշխատանքի դիմաց տրվում է հավասար վարձատրություն։

Երկրորդ. յուրաքանչյուր բրիգադայի գյուղատնտեսական տարվա սկզբից տրվում է արտադրա-ֆինանսական պլան և, եթե տվյալ բրիգադան լավ է աշխատել, քիչ ծախսերի միջոցով գերակատարել է պլանը և տվել որակյալ արտադրանք, նա ավելի բարձր վարձատրություն է ստանում, քան այն բրիգադան, որը թերակատարել է արտադրական պլանը և իր ցուցանիշներով ետ է մնում։ Այստեղ կարող է խոսք լինել միայն վարձատրության չափի մասին։ Մենք գտնում ենք, որ պլանից ավելի տրված արտադրանքի 35—40 տոկոսը, որպես լրացուցիչ վարձատրություն, պետք է տալ բրիգադայի անդամներին՝ ըստ նրանց կատարած աշխատանքի։ Իսկ համանման պայմաններում գտնվող այն բրիգադաները, որոնք իրենց վատ աշխատանքի հետևանքով թերակատարել են արտադրական պլանը, կոլտնտեսության հիմնական միջին վարձատրությունից պետք է պակաս ստանան մինչև 15 տոկոսի չափով։

Բրիգադայի և նրա անդամների միջև նյութական շահագրգռվածությունն իր բոլոր կողմերով երևան կգա միայն տնտհաշվարկի հիման վրա։ Առանց տնտհաշվարկի մենք չենք կարող լրջորեն խոսել նյութական շահագրգռվածության սկզբունքների ճիշտ կիրառման և գյուղի աշխատավորների ստեղծագործական ակտիվության բարձրացման մասին։ Ուստի ժամանակն է, վաղուց ժամանակն է, որ կոլտնտեսությունների ու սովխոզների բոլոր բրիգադաներում կիրառել տնտհաշվարկը և ամենուրեք արմատավորել այդ ուղղությամբ եղած դրական փորձը։

Նշելով, որ գյուղի աշխատավորների նյութական շահագրգռվածության գործում կարևոր նշանակություն ունեն գյուղատնտեսական մթերքների պետական գնման գների ճիշտ որոշումն ու իրականացումը, ընկ. Բաղդագուլյանը գտնում է, որ պետության կողմից գնվելիք մթերքների պլանավորման գործող սիստեմը քիչ է նպաստում նյութական շահագրգռվածության բարձրացմանը։ Այսպես. եթե տնտեսությունից պահանջվում է պետությանը վաճառել որոշակի քանակությամբ մթերքներ (հացահատիկ, միս և այլն), դա արդեն ենթադրում է, որ տվյալ տնտեսությունն իր հնարավորությունները պետք է օգտագործի այդ խնդրին համապատասխան։ «Ստացվում է,— գրում է նա,— որ գյուղատնտեսության պլանավորման ասպարեզում մենք նախկինում գոյություն ունեցող ամեն ինչ վերևից սահմանելու պրակտիկայից այնքան էլ շատ չենք հեռացել...», որ «նշված և նման հարցերում գյուղատնտեսության բնագավառի անմիջական արտադրողները հանդես են գալիս համարյա թե կատարողի դերում» (էջ 92—93)։

Այսքանից հետո ընկ. Բաղդագուլյանը վկայակոչում է ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումը, ըստ որի կոլտնտեսականները պետք է լայնորեն մասնակցեն կոլտնտեսային արտադրության հիմնական հարցերի լուծմանը, որ պետք է հրաժարվել վարչարարության, հրամաններ տալու, կոլտնտեսային ու սովխոզային ղեկավարներին փոխարինելու պրակտիկայից, որ տնտեսություններին պետք է տալ արտադրական հարցերի լուծման լիակատար իրավասություն և այլն։ Մեջբերելով պարտիայի Կենտկոմի այդ ճիշտ պահանջը, ընկ. Բաղդագուլյանը, սակայն, գյուղատնտեսության պլանավորման նկատմամբ այլ մոտեցում է ցուցաբերում և հասկացնել է տալիս, որ կոլտնտեսությունների տնտեսական-արտադրական ինքնուրույնությունը չխախտելու համար պետության կողմից նրանց բնամթերման պլան չպետք է տրվի։

Արդյո՞ք այդ այդպես է։ Արդյո՞ք բնամթերման պլանը խախտում է կոլտնտեսականների ինքնուրույնությունը։ Ո՛չ, չի խախտում. ահա թե ինչու։ Գյուղատնտեսության պլանավորման նոր կարգը յուրաքանչյուր տնտեսության կա-

տարյալ հնարավորություն է տալիս ինքնուրույնաբար պլանավորելու իր արտադրությունը և, ելնելով տեղական պայմաններից, այնպես օգտագործելու իր հնարավորությունները, որպեսզի խոշոր չափով բարձրանա գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը։ Այդ ուղղությամբ պարտիայի Կենտկոմի մարտյան պլենումի որոշումը կոլտնտեսությունների և սովխոզների համար նպաստավոր պայմաններ է ստեղծում և նրանց հնարավորություն տալիս գյուղատնտեսական արտադրությունը մասնագիտացնելու ու նրա յուրաքանչյուր ճյուղ շահութաբեր դարձնելու համար։ Եթե պետությունը պլանավորում է կոլտնտեսությունից, ասենք, 100 տոննա հացահատիկ մթերել, դրա հետ ցանքի պլան չի տալիս։ Դա արդեն թողնում է տվյալ կոլտնտեսության հայեցողությանը, որը, հաշվի առնելով իր պայմանները, հացահատիկային կուլտուրաների ցանքի այնպիսի պլան է սահմանում, որը լիուլի ապահովի և՛ պետության, և՛ իր բոլոր պահանջները։ Նույն կարգով է պլանավորվում նաև գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունը։ Պլանավորման այս կարգը պետության շահերը ճշտորեն զուգակցում է հանրային տնտեսության շահերի հետ և այդ գործում վերջ դնում այն կամայականություններին, որ կար մինչև այդ։

Հաշվի չառնելով այս կարևոր մոմենտը և զարգացնելով իր տեսակետը, ընկ. Բաղդագուլյանն այնուհետև գրում է. «Որպեսզի հնարավոր լինի պետգնման գների միջոցով առավելապես խրախուսել հանրային տնտեսություններին, նպաստել ամիջապես արտադրողների նյութական շահագրգռվածության բարձրացմանը, անհրաժեշտ է գյուղատնտեսական մթերքների պետգնումները սահմանել ոչ թե բնամթերային ձևով, ինչպես արվում է այժմ, այլ դրամական արտահայտությամբ... առանց վերևից կոնկրետ մթերքների, կոնկրետ քանակի սահմանման։ Այսինքն՝ յուրաքանչյուր տնտեսություն, համաձայն պետական պլանի, պարտավոր կլինի վաճառել պետությանը, ասենք, հարյուր հազար ռուբլու արժեքով գյուղատնտեսական մթերքներ, իսկ թե յուրաքանչյուր մթերատեսակից նա ինչքան կվաճառի, այդ արդեն թողնել տնտեսության իրավասությանը» (էջ 93)։

Այսպիսի հարցադրման հետ նույնպես համաձայնել չի կարելի։ Ընկ. Բաղդագուլյանը բանն այնպես է պատկերացնում, որ գյուղատնտեսական մթերքների անհրաժեշտ համամասնությունը հասարակության մասշտաբով «հեշտությամբ կարելի է ստեղծել պետգնման գների համապատասխան քաղաքականության միջոցով» (նույն տեղը)։ Բայց թե ինչպես պետք է անցկացնել այդ քաղաքականությունը և այն էլ «հեշտությամբ» հասարակության մասշտաբով գյուղատնտեսական մթերքների անհրաժեշտ համամասնություն ստեղծել, անպատասխան է մնում։

Ի՞նչ կստացվի, եթե գյուղատնտեսական մթերքների պետական գնումները կատարվեն ընկ. Բաղդագուլյանի առաջարկած թեզի համաձայն։ Այն, որ երկրի բնակչությանը պարենով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով ապահովելու գործում կստեղծվի քաոս՝ իր վտանգավոր հետևանքներով հանդերձ։ Երբ Սովետական մեծ Միությունում ամբողջ ժողովրդական տնտեսությունը վարվում է գիտականորեն հիմնավորված պլանով (և այլ կերպ էլ լինել չի կարող), ինչպե՞ս կարելի է չպլանավորել հացահատիկի, մսի, կաթի, ձվի, բամբակի, շաքարի ճակնդեղի և գյուղատնտեսական մյուս մթերքների կենտրոնացված գնումը, ինչպե՞ս կարելի է ապահովել դրանց անխափան մատակարարումը։



Մյուս կողմից, գյուղատնտեսական մթերքների վաճառքը (միայն դրամական ընդհանուր արտահայտությամբ) թողնելով կոլտնտեսությունների իրավասությանը, արդյո՞ք կարող ենք երաշխիք ունենալ, որ նրանք պետության կողմից իրականացվող գների քաղաքականության օգնությամբ կկարողանան ինքնուրույնաբար հաշվի առնել քաղաքային բնակչության պահանջը և արտադրել տարբեր տեսակի այնքան մթերքներ, որքան անհրաժեշտ է։ Կարծում եմ, որ այդ գործում մենք կայուն երաշխիք ունենալ չենք կարող։ Բացառված չէ նաև այն, որ կոլտնտեսությունները չստանալով բնամթերման կոնկրետ առաջադրանք, արտադրությունը պլանավորելիս կամա թե ակամա կարող են ինչպես հարկն է հաշվի չառնել համապետական շահը և տարբեր տեսակներից չարտադրել այնքան մթերքներ, որքան անհրաժեշտ է տվյալ ժամանակաշրջանի համար։ Այլ կերպ ասած, կթագավորի ինքնահոսը, որը ոչ մի ընդհանուր բան չունի սոցիալիստական տնտեսության պլանաչափ զարգացման հետ։

Բացահայտելով գյուղատնտեսական մթերքների մթերումների սիստեմի թերությունները, ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումը արմատական միջոցառումներ մշակեց այդ սիստեմը բարելավելու և կատարելագործելու համար։ Պլենումի որոշման համաձայն սահմանվեց գյուղատնտեսական մթերքների մթերումների մի շարք տարիների (1965—1970 թվականների) հաստատուն պլաններ, որոնցում ներդաշնակորեն զուգակցվում են համապետական և ներտնտեսային շահերը։ Մթերման նոր կարգը բխում է կյանքի հրամայական պահանջից և ապահովելու է գյուղատնտեսության արտադրողական ուժերի արագընթաց զարգացումը, ավելի է ուժեղացնելու և ամրապնդելու բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղացիության դաշինքը՝ սովետական պետության քաղաքական հիմքը։ Զուր չէ, որ պարտիան և ժողովուրդը միահամուռ հավանություն տվին ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան պլենումի մշակած միջոցառումներին, որոնք առաջին իսկ տարում տալիս են իրենց գոհացուցիչ արդյունքը։ Անտեսել այս ամենը և առաջադրել մթերումների դրամական արտահայտությամբ ինչ-որ անորոշ ձև, կնշանակի հեռանալ ռեալ իրականությունից և խճճվածություն ստեղծել պլանավորման գործում։

Ընկ. Բաղդագուլյանն իր հոդվածում հանգամանորեն խոսում է նաև կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման գործում նրանց աշխատանքի վարձատրության ձևերի հետագա կատարելագործման անհրաժեշտության մասին և անում արժեքավոր դիտողություններ ու առաջարկություններ, որոնք գործին կարող են միայն օգուտ բերել։ Նա նպատակահարմար է գտնում բոլոր կոլտնտեսություններում անցնելու դրամական վարձատրության սիստեմին, որն անհամեմատ առաջադիմական է գոյություն ունեցող մյուս ձևերից։ Սակայն վարձատրության այդ ձևը և, առանձնապես երաշխավորված մինիմումով վարձատրության ձևը, հնարավոր է կիրառել միայն առաջավոր կոլտնտեսություններում, որոնք կարող են համապատասխան ֆոնդեր ստեղծել՝ նույնիսկ անբարենպաստ տարում երաշխավորված մինիմումով կոլտնտեսականների աշխատանքը վարձատրելու համար։ Դա, իհարկե, կախված է աշխատանքի արտադրողականության բարձրացումից, միավոր արտադրանքի ինքնարժեքի իջեցումից և հանրային տնտեսության եկամուտը այնպիսի չափով ավելացնելուց, որը հնարավորություն կտա նախատեսված բոլոր ծախսերը, պետության հանդեպ ունեցած պարտավորությունները կատա-

բելուց հետո անհրաժեշտ ֆոնդեր առանձնացնել նաև մյուս տարվա համար։

Միանգամայն ճիշտ են վարվում այն կոլտնտեսությունները, որոնք կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրությունը կապում են աշխատանքի դիմաց ստացվող երաշխավորված արդյունքի հետ, և դա հասկանալի է։ Առանց երաշխավորված արդյունքի, առանց կայուն եկամտի, երաշխավորված վարձատրություն լինել չի կարող։

Այսքանից հետո, սակայն, մնում է պարզել, թե վերջիվերջո երաշխավորված վարձատրությունը, կամ առհասարակ աշխօրի դիմաց տրվող եկամուտը կոլտնտեսականի տված արտադրանքի որ մասը պետք է կազմի։ Նախքան այդ հարցին կոնկրետ պատասխան տալը, ցանկանում ենք բերել ամենամսյա դրամական վարձատրության անցած երկրի առաջավոր կոլտնտեսություններից մեկի՝ Մոլդավական ՍՍՌ-ի Ստրաշենսկու շրջանի Միչուրինի անվան կոլտնտեսության օրինակը։ Այս տնտեսության ընդհանուր եկամուտները 1964 թվականին կազմել են ավելի քան 5 միլիոն ռուբլի, որից 2 միլիոն 543 հազարը, կամ մոտ 50 տոկոսը, հատկացվել է աշխատավարձի ֆոնդին, որն յուրաքանչյուր ամիս կանոնավոր կերպով բաշխվել է կոլտնտեսականներին։ Այստեղ յուրաքանչյուր մարդ-օրվա համար վճարվել է 3 ռուբլի 84 կոպեկ։ Բացի այդ, սահմանված արտադրական պլանը գերակատարելու շնորհիվ, որպես լրացուցիչ վարձատրություն, կոլտնտեսականներին տրվել է նաև հացահատիկ, արևածաղիկ, յուղ և այլ մթերքներ։

Ելնելով վերոհիշյալ և նման այլ օրինակներից ու նկատի ունենալով կոլտնտեսականների կենսամինիմումի ապահովումը, մենք գտնում ենք, որ Հայաստանի պայմաններում կոլտնտեսականների հիմնական վարձատրությունը նպատակահարմար է սահմանել (միջին հաշվով) նրանց տված արտադրանքի հիսուն տոկոսի չափով*։ Ներկա շրջանում վարձատրությունը մեկ կոլտնտե-

* 1964 թվականին ռեսպուբլիկայում կոլտնտեսականների կատարած աշխատանքի դիմաց վճարվել է հանրային տնտեսությունների ընդհանուր արդյունքի 62,5 տոկոսը։ Եթե դրանից դուրս գանք լրացուցիչ վարձատրությունը, որը կազմում է 4,7 տոկոս, ապա ստացվում է, որ կոլտնտեսականների հիմնական վարձատրությանը հատկացված է հանրային տնտեսությունների մեկ տարվա ընդհանուր արդյունքի 57,8 տոկոսը։ Դրա դիմաց մենք առաջարկում ենք հիսուն տոկոս, որը, ինչպես տեսնում ենք, տոկոսային հարաբերությամբ 1964 թվականի համեմատությամբ որոշ չափով ցածր է։

Նայելով բացարձակ թվերին, առերևույթ թվում է, որ մենք առաջարկում ենք կոլտնտեսականներին ավելի քիչ վարձատրություն տալ, քան նրանք ստացել են 1964 թվականին։ Բայց երբ վերլուծում ենք բացարձակ թվերը և պարզում, թե ինչ է թաքնված նրանց յուրաքանչյուր տոկոսի տակ, տեսնում ենք, որ բանն այդպես չէ։

Պարզենք մեր միտքը.

Գյուղատնտեսական հիմնական մթերքների գնման գների բարձրացման շնորհիվ 1965 թվականին, նախորդ տարվա համեմատությամբ, ռեսպուբլիկայի հանրային տնտեսությունների (ներառյալ նաև սովխոզների) միայն դրամական եկամուտը ավելանում է մոտ 23 միլիոն ռուբլով։ Եթե դրան ավելացնենք այն, որ գյուղատնտեսության ինտենսիվացման հետ կապված միջոցառումները իրականացնելու, կադրերի ընտրությունն ու աշխատանքի կազմակերպումը բարելավելու, գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը արմատավորելու, ինչպես նաև տնտեսությունների ղեկավարությունն ուժեղացնելու շնորհիվ նշանակալիորեն կավելանա հանրային տնտեսությունների համախառն արտադրանքը, պարզ կլինի, որ տվյալ դեպքում աշխօրի դիմաց տրվող եկամտի չափը զգալիորեն կբարձրանա և նրա մեկ տոկոսը, նախորդ տարվա համեմատությամբ, իր մեջ ավելի շատ արժեք կպարունակի և կոլտնտեսականների հիմնական վարձատրությունը ոչ թե կպակասի, այլ կավելանա։ Ուրեմն, կարևորը ոչ թե տոկոսների բացարձակ մեծությունն է, այլ նրանց դիմաց տրվող դրամի և բնամթերքի չափը։



սությունում կարող է լինել դրամական, մյուսում՝ բնամթերային, երրորդում՝ մթերային-դրամային և այլն։ Վարձատրության ձևերը պետք է սահմանեն կոլտնտեսությունները՝ իրենց ունեցած հնարավորությունների ու պայմանների համեմատ։ Բայց ինչպիսին էլ լինի վարձատրության ձևը, այն չպետք է փոփոխություն մտցնի վարձատրության վերը նշված չափի մեջ։ Դա բոլոր կոլտնտեսականներին նյութապես կշահագրգռի ամեն կերպ ավելացնելու հանրային տնտեսության համախառն արտադրանքը ու դրանից ստացվող եկամուտը։ Իսկ որքան բարձր լինի հանրային տնտեսության եկամուտը, այնքան էլ բարձր կլինի կոլտնտեսականների հիմնական վարձատրությունը։

Այստեղից հետևում է, որ կոլտնտեսային աշխատավորների նյութական շահագրգռվածության բարձրացման գլխավոր միջոցը նրանց տրվող հիմնական վարձատրության ավելացումն է ու դրա կայուն չափի սահմանումը, որը պետք է նախատեսվի գյուղատնտեսական արտելի օրինակելի կանոնադրությամբ և ստանա օրենքի ուժ։



Գլխավոր շեշտը դնելով հիմնական վարձատրության վրա, մենք բնավ չենք ուզում անտեսել լրացուցիչ վարձատրության անհրաժեշտությունը։ Սակայն ճիշտ է նկատում ընկ. Բաղդագուլյանը, երբ նշում է, որ գյուղատնտեսության որոշ մասնագետներ և ղեկավար աշխատողներ վերջին ժամանակներս չափազանց հրապուրվում են լրացուցիչ վարձատրությամբ և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում անհարկի մեծացնում նրա դերը։ Դա օժանդակ միջոցառում է և դրա համար էլ կոչվում է լրացուցիչ վարձատրություն, որը չի կարող գլխավոր դեր խաղալ կոլտնտեսականներին նյութապես ապահովելու գործում։ Բայց, չնայած դրան, վարձատրության այդ ձևի ճիշտ կենսագործումը բարերար ազդեցություն է թողնում ինչպես հանրային, այնպես էլ առանձին կոլտնտեսականների եկամուտների բարձրացման վրա։ Մեր բազմաթիվ առաջավոր կոլտնտեսություններ բավականին արժեքավոր փորձ են կուտակել այդ ուղղությամբ, որը պետք է լայնորեն տարածել ու արմատավորել բոլոր տնտեսություններում։

Ամփոփելով կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության վերաբերյալ մեր ասածը, հարկ ենք համարում ընդգծել, որ պետք է հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կոլտնտեսությունում աշխատողները ստանան երաշխավորված անհրաժեշտ վարձատրություն, իսկ արտադրական պլանի գերակատարումից՝ նաև լրացուցիչ վարձատրություն։

Մեկ հարցի մասին ևս։

Որոշ ընկերներ խոսելով կոլտնտեսություններում նյութական շահագրգռվածության բարձրացման մասին, այն գլխավորապես հանգեցնում են միայն անձնական նյութական շահագրգռվածության։ Սակայն դա հարցի մեկ կողմն է։ Մեզ մոտ անհատն ու կոլեկտիվն աշխատում են սերտ համագործակցությամբ և մաքառում «մեկը բոլորի, բոլորը մեկի համար» վեհ սկզբունքով։ Արտադրության պրոցեսում նրանց շահերը դրսևորվում են միասնաբար, որոնք իրենց հերթին համընկնում են ամբողջ հասարակության շահերի հետ։ Ուստի արտադրության ոլորտում նյութական շահագրգռվածությունը պետք է դիտել իր երեք հիմնական ձևերի, այսինքն՝ հասարակական, կոլեկտիվ և անձնական

ձևերի սերտ միասնության մեջ։ Դրանք սոցիալիստական հասարակարգում օրգանապես կապված են միմյանց հետ, որոնց հիմքը արտադրության միջոցների համաժողովրդական ու հանրային սեփականությունն է։ Այստեղից էլ միանգամայն բնական է, որ պայքարելով երկրի արտադրողական ուժերի զարգացման համար, սովետական մարդիկ դրա մեջ տեսնում են ոչ միայն առանձին անհատների, կոլեկտիվների, այլև ամբողջ հասարակության կենսական շահը, մեր ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման գրավականը։

Այդ տեսանկյունից մոտենալով հարցին և ուղեցույց ունենալով ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումները, գյուղատնտեսության բնագավառի աշխատողները պարտիական կազմակերպությունների հետ միասին հոգ են տանում, որպեսզի պրակտիկայում ճշտորեն զուգակցվեն նյութական շահագրգռվածության վերը նշված երեք հիմնական ձևերը։ Դա արտահայտվում է այն բանում, որ գյուղատնտեսական մթերքների պետական գնման գների բարձրացումից ստացված լրացուցիչ եկամուտը նրանք հատկացնում են ոչ միայն կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ավելացմանը, այլև արտադրության ընդլայնմանը, տնտեսության էկոնոմիկայի ամրապնդմանն ու համակողմանի զարգացմանը։

Կասկածից վեր է, որ այդ ճանապարհով ռեալ հնարավորություն է ստեղծվում հանրային յուրաքանչյուր տնտեսությունում արտադրությունն ընդլայնելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնաբուծության մթերատվությունը ավելի ու ավելի բարձրացնելու։ Հենց դա էլ այն կարևոր պայմանն է, որով ապահովվում է ինչպես տվյալ տնտեսության առանձին անդամների ու կոլեկտիվի, այնպես էլ մեր երկրի բոլոր աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացումը։

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

---

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԾԻԼԵՐՆ ԱՐՄԱՏԱՎՈՐՎՈՒՄ ԵՆ

Փայլակ Հաչիբաբի Զատիկյանի դիմումը մի քանի բառից էր կազմված. «Խնդրում եմ թույլ տաք մեկնելու Մոսկվա մեկ ամիս ժամանակով»։ Դիմումը հասցեագրված էր ՀԿՊ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Գ. Ղարիբջանյանին։

— Ի՞նչ է պատահել։

— Թոռնիկ եմ ունեցել,— ժպտալով ասում է Զատիկյանը — հեռագիր հեռագրի հետևից եմ ստանում՝ «Եկ, պապիկ, թոռնիկդ քեզ է ուզում»։

Թույլատրելու բան չկա։ Զատիկյանը վաղուց է նվաճել այդ թույլտվությունը։ Չէ՛ որ նա այժմ ռեսպուբլիկական թոշակառու է և որևէ տեղ չի աշխատում։ Բայց քաղկոմի քարտուղարը գոհունակությամբ ժպտում է Փայլակ Հաչիբաբովիչին։

— Իսկ չլուծված հարցեր կա՞ն...

— Միշտ էլ լինում։ Տեղակալս կզբաղվի։

...Երեք տարի առաջ էր։ Առաջարկություն եղավ Լենինականի երկաթուղու ձեռնարկություններ պարտիական կազմակերպությունների աշխատանքը կոորդինացնելու նպատակով ստեղծել հանգուցային պարտիական կոմիտե։ Կոմիտեի քարտուղարի թեկնածուի հարցը ոչ մի մտահոգություն չպատճառեց քաղաքային կոմիտեին։ Բոլորն էլ միաբերան առաջարկեցին Փայլակ Զատիկյանի թեկնածությունը։

— Հին բոլշևիկ է, երկար տարիներ եղել է վագոնային դեպոյի պետ, լավ էլ իմանում է պարտիական աշխատանքը։

Ընտրվեց և սկսեց աշխատել հասարակական հիմունքներով։

Լույսը նոր բացված Զատիկյանն արդեն երկաթուղում է։ Ձեռնարկությունները շատ, լուծման կարիք ունեցող հարցերը՝ առավել։ Լոկոմոտիվային դեպոյում միայն 400 կոմունիստ են աշխատում։ Մեծ են նաև վագոնային դեպոյի, կայարանի պարտիական կազմակերպությունները։ Հարկավոր է լինել բոլորի մոտ, լսել նրանց և երբ կնճռոտ հարց կա՝ քննության դնել հանգուցային կոմիտեի նիստում։

Կարևոր ու հետաքրքրական շատ հարցեր է քննել ու լուծել պարտիական կոմիտեն։ Եվ միշտ հաշվի են առնվել ընկերների կարծիքը, նրանց արժեքավոր առաջարկությունները։

Կոմիտեն ահազանգ ստացավ, որ երկաթուղու շինարարության վարչությունը քիչ ուշադրություն է նվիրում կառույցների որակին, անգամ բնակելի շենքերից մեկը փլվել էր։ Հարցը մանրամասն ստուգման ենթարկվեց, աշխատանքներում թերացողները պարտիական պատասխանատվության կանչվեցին։ Արդեն անցել է մի քանի ամիս և շինարարների աշխատանքներում որոշակի բարեփոխություն է նկատվում։

Հանգուցային կոմիտեն քննարկել է նաև պետական առաջադրանքների կատարման ընթացքը հանգույցի ձեռնարկություններում և կոնկրետ միջոցառումներ մշակել հետ մնացողներին օգնելու համար։ Կիսամյակի պլանը երկաթուղայինները գերակատարեցին։

Սակայն հանգուցային կոմիտեին միայն արտադրական հարցերը չեն, որ հուզում են։ Կոմիտեն իր հիմնական խնդիրներից մեկը համարում է նաև գաղափարական-դաստիարակչական աշխատանքը։ Նա անդրադարձել է քաղուսուցման ցանցի գործունեությանը, քննարկել գաղափարական աշխատանքների վիճակը հանգույցում, հետաքրքրվել հասարակական կազմակերպությունների աշխատանքով և այլն։ Բոլոր դեպքերում կոմիտեի ուշադրության կենտրոնում են եղել կոմունիստների ահազանգումները, երկաթուղային տրանսպորտի աշխատանքների ճկունացման հարցերը։ Երբ կոմիտեն քննարկում էր լոկոմոտիվային դեպոյում աշխատանքի կազմա-

կերպման փորձն ու մեթոդները, հետապնդում էր մի նպատակ՝ մյուս ձեռնարկություններին հասցնել կոմունիստականի կոչմանն արժանացած կոլեկտիվի ուսանելի փորձը:

Ընկ. Զատիկյանի առաջարկությամբ կոմիտեն լուրջ ուշադրություն նվիրեց նաև երկաթուղային հանգույցի շրջակայքում և հասարակական վայրերում օրինակելի կարգ ու կանոն հաստատելու գործին: Քննարկելով դրուժիննիկների աշխատանքի դրվածքը՝ կոմիտեն լուրջ թերություններ բացահայտեց և վերանայվեց դրուժիննիկների կազմը: Ինքը՝ Փայլակ Զատիկյանը, երեկոները դուրս է գալիս ստուգելու դրուժիննիկների աշխատանքը, օգնելու նրանց:

Նրան հաճախ են հանձնարարություններ տալիս նաև պարտիայի քաղաքային կոմիտեի բաժինները և պարտիական-պետական վերահսկողության կոմիտեն, և դա հասկանալի է: Չէ որ ընկ. Զատիկյանը բարեխիղճ է, սկզբունքային, համեստ և որ կարևոր է՝ սիրում է մտնել կյանքի մեջ, կապված լինել քաղաքի հասարակական կյանքին: Իհարկե, լինում է, որ նա սխալվում էլ է և դրա համար քննադատվում: Ինչ կա, գործը սիրողը քննադատությունը հաշվի կառնի:

Հանգուցային կոմիտեն իր հերթին խրախուսելի աշխատանք է կատարում հասարակական հիմունքները ներքին օղակներում լայնորեն արմատավորելու համար: Հանգուցային կոմիտեն ունի արտահաստիքային քաղլուսկաբինետ, որի վարիչն է ուսուցիչ Վաղինակ Գրիգորյանը: Կաբինետն իր մեթոդական խորհրդի միջոցով մշտական օգնություն է ցույց տալիս պրոպագանդիստներին և ունկնդիրներին, նրանց համար կազմակերպում տեսական սեմինարներ, գիտական կոնֆերանսներ, դասախոսություններ, երբեմն էլ գեղարվեստական գրքերի, կինոնկարների քննարկումներ: Այս տարի պրոպագանդիստների ու ագիտատորների մասնակցությամբ լոկոմոտիվային դեպոյի և քաղլուսկաբինետի նախաձեռնությամբ քննարկվեց Նախագահը ժամանակակից կինոնկարը, որն առաջ բերեց սուր բանավեճեր, մտքերի անկաշկանդ փոխանակում: Քաղլուսկաբինետը հանգուցային կոմիտեի հանձնարարությամբ պարտլուսցանցի ուսումնական տարվա ընթացքում մի քանի անգամ լսել է պարապմունքներ, կազմակերպել նրանց քննարկումներ, ինչպես նաև բաց պարապմունքներ՝ փորձի փոխանակման նպատակով:

Արդյունավետ է աշխատում նաև երկաթուղայինների մշտական գործող ագիտկետը, որի վարիչն է վաստակավոր ուսուցիչ Պարթև Ալեքսանդրյանը: Ագիտկետը, որ տեղավորված է Սևյանի անվան կուլտուրայի պալատում, բնակչության համար կազմակերպում է զրույցներ, դասախոսություններ, հարց ու պատասխանի երեկոներ, հանդիպումներ հին բոլշևիկների, արտադրության վետերանների հետ:

Առայժմ խոսքը միայն երկաթուղային հանգույցի հասարակական հիմունքներով գործող կոմիտեի մասին է: Լենինականում, սակայն երկաթուղայինները բացառություն չեն: ՀԿՊ Քաղաքային կոմիտեն ուղենիշ ունենալով ՍՄԿՊ XXII համագումարի որոշումները, վերջին 4—5 տարիների ընթացքում զգալի աշխատանք է կատարել հասարակական հիմունքները քաղաքի պարտիական կազմակերպություններում լայնորեն արմատավորելու ասպարեզում:

Թվում է, թե հասարակական հիմունքներով աշխատանքում չկա անձնական շահագրգռվածություն և մարդիկ ոչ մի նյութական օգուտ չստանալով, իրենց ազատ ժամերը տրամադրում են հանրօգուտ աշխատանք կատարելու համար: Ասում ենք թվում է, որովհետև նրանք հասարակության հետ միասին, ի վերջո օգտվում են իրենց իսկ ստեղծած այդ բարիքներից: Բայց հասարակական հիմունքներն այն ժամանակ կարող են սպասված արդյունքը տալ, երբ նրանում կընդգրկվեն ոչ թե առանձին անհատներ, այլ հասարակության ավելի մեծ թվով անդամներ: Այդ դեպքում միայն կստացվի ցանկալի արդյունք՝ կոմունիստական գաղափարների ձևավորման գործում:

Պարտիայի Լենինականի քաղաքային կոմիտեն, այդ նպատակը հետապնդելով, հասարակական աշխատանքներում ներգրավել և ներգրավում է մեծ թվով մարդկանց՝ պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական ղեկավար աշխատողների, մտավորականության ներկայացուցիչների, առաջավոր բանվորների և այլոց: Նրանց ուժերի օգտագործման հնարավորություններն ու ասպարեզը բազմազան են, ընդարձակ: Ոմանք մասնակցում են քաղկոմի բյուրոյում և բաժիններում քննարկման նախատեսված հարցերի նախապատրաստմանը, ուրիշները գործնական նշանակություն ունեցող հանձնաժողովների անդամներ են, առանձին ընկերներ էլ ժողովրդական համալսարանների ռեկտորներ, ղեկավարներ և այլն: Հենց քաղաքային կոմիտեն մեր մարդկանց ուժերը հասարակական կարգով օգտագործելու ուսանելի օրինակ է տալիս: Նախ ամեն ոք չէ, որ ստանում է հասարակական հանձնարարություններ: Ուսումնասիրվում և հաշվի են առնվում յուրաքանչյուրի անձնական կարողությունները, ունակությունները: Չի կարելի հասարակական լրացուցիչ պարտականություն դնել մեկի վրա, որն իր հաստիքային աշխատանքում գլուխ չի հանում կամ ցուցաբերում է անբարեխղճություն: Հասարակական լրացուցիչ հանձնարարություն են ստանում



նրանք, ովքեր վայելում են հեղինակություն, գիտակ են իրենց գործին:

Պարտիայի քաղաքային կոմիտեի արտահաստիքային քարտուղար է ընտրված մանկավարժական ինստիտուտի Լենինականի ֆիլիալի դիրեկտոր, փիլիսոփայական գիտությունների թեկնածու Կարո Հովսեփյանը: Սկզբից ևեթ ինքնաքննադատաբար խոստովանենք, որ քաղկոմը և մյուս կազմակերպությունները երբեմն նրան շատ են լրացուցիչ հանձնարարություններ տալիս: Բայց «մեղավորը» ինքն է՝ ընկ. Հովսեփյանը: Հաջողությամբ կատարելով դիրեկտորի իր պարտականությունները, նա համազոր բարեխղճությամբ կատարում է նաև բոլոր հասարակական հանձնարարությունները: Սահմանված օրերին քաղկոմի իր կաբինետում ընդունում է կոմունիստներին և մյուս այցելուներին, ամեն կերպ ձգտում լուծել նրանց հարցերը: Նույնպիսի բարեխղճությամբ էլ նա մասնակցում է քաղկոմի բյուրոների նիստերին: Ընկ. Հովսեփյանը միևնույն ժամանակ հաճախ է հանդես գալիս դասախոսություններով ու զեկուցումներով:

Հասարակական հանձնարարությունները մարդկանց համար չեն անցնում աննկատ և շատ բանով են օգնում նրանց աշխատանքային ունակությունների զարգացմանը: Դեռ երեք տարի առաջ քաղկոմի արտահաստիքային քարտուղար էր անվանի մեքենավար Սուրեն Մատնիշյանը: Նա քաղկոմում ձեռք բերեց ղեկավար աշխատանք կատարելու փորձ ու հմտություն և կրթված, իր գործի մեջ հմտացած, աշխատավորների շրջանում հեղինակություն վաստակած բանվորն առաջադրվեց քաղաքային սովետի գործկոմի նախագահ: Ու ահա ավելի քան 3 տարի է, ինչ նա քաղսովետի նախագահ է: Ընդհանրապես քաղաքային կոմիտեն մեծ ուշադրություն է նվիրում այն բանին, թե ինչպես են առանձին կոմունիստներ կատարում հասարակական հանձնարարությունները: Վերջերս քաղկոմը դպրոցի դիրեկտոր հաստատեց կոմունիստ, վաստակավոր ուսուցիչ Պ. Ալեքսանդրյանին: Շարքային ուսուցիչը դարձավ դպրոցի դիրեկտոր, ղեկավար աշխատող: Երբ առաջադրվում էր նրա թեկնածությունը, բացի մանկավարժական փորձից, նկատի առնվեց նաև Ալեքսանդրյանի արդյունավետ աշխատանքը՝ որպես ագիտկետի վարիչ և պրոպագանդիստ: Նույնը կարելի է ասել նաև Լևոն Հուրիխանյանի մասին, որը բանվորական դպրոցի ուսմասվարից առաջ քաշվեց որպես դպրոցի դիրեկտոր: Նա վագոնային դեպոյի օրինակելի պրոպագանդիստներից մեկն է, որի փորձն անցյալ ուսումնական տարում մասսայականացվեց քաղաքի պրոպագանդիստների շրջանում:

Մեկ ուրիշ ոչ պակաս դիպուկ օրինակ. միս-պահածոների կոմբինատում քաղլուսկաբինետի արտահաստիքային վարիչ էր առաջադրվել երիտասարդ կոմունիստ Ջուլիետա Մամիկոնյանը: Նա ցուցաբերեց քաղաքական-կազմակերպական աշխատանքի լուրջ ձիրք ու սեր: Նրա ղեկավարած կաբինետը օրինակելի էր, և Մամիկոնյանը գործուղվեց Օդեսա՝ փորձի փոխանակման: Վերջերս Ջուլիետան ընտրվեց նույն կոմբինատի պարտբյուրոյի ազատված քարտուղար: Նրա թեկնածությունն առաջադրելիս, քաղկոմը նորից աչքի առաջ ուներ այն հասարակական աշխատանքը, որ կատարել էր Մամիկոնյանը քաղլուսկաբինետում:

Այո, հասարակական աշխատանքում աչքի ընկած ընկերներին պետք է խրախուսել, դրվատել: Մեզ մոտ նրանցից ոմանք ընտրվել են նաև քաղկոմի անդամներ, քաղաքային սովետի դեպուտատներ: Արդեն չորրորդ տարին է, որ ՀԿՊ քաղկոմի գաղափարական աշխատանքի բաժնում դպրոցների և կուլտուր-լուսավորական հիմնարկների արտահաստիքային բաժնի վարիչ է վաստակավոր ուսուցիչ Եղիշե Բարսեղյանը: Նա ունի իր աշխատանքային պլանը, որի համաձայն հարցեր էր մտցնում քաղկոմի բյուրոյի և բաժնի քննարկմանը: Նրա նախաձեռնությամբ լսվել և քննարկվել է «Գեղարվեստական ինքնագործունեության վիճակը քաղաքի ակումբներում ու կուլտուրայի տներում», «Մանկապարտեզների կադրերի ընտրության ու տեղաբաշխման վիճակը» և դպրոցների աշխատանքին վերաբերող մի քանի հարցեր: Արտահաստիքային այս բաժինն ունի նաև իր արտահաստիքային հրահանգիչները, որոնք ակտիվ մասնակցում են մեր ընդհանուր աշխատանքներին, լինում սկզբնական կազմակերպություններում, տեղերում ցույց տալիս անհրաժեշտ օգնություն:

Արտահաստիքային հրահանգիչներ ընտրելիս, քաղկոմը նկատի է ունենում ոչ միայն նրանց քաղաքական հատկանիշները, այլև մասնագիտությունը, որպեսզի բոլոր բնագավառներում հնարավոր լինի ճիշտ կողմնորոշվել, թույլ չտալ մասնագիտական վրիպումներ: Այդ ելակետով են ընտրություն կատարում նաև քաղկոմի մյուս բաժինները, որոնք ևս ունեն իրենց արտահաստիքային բաժիններն ու հրահանգիչները: Կազմակերպչական բաժնին կից գործում են ՍՄԿՊ շարքերի ընդունելության գործերը նախապատրաստող և կոմունիստների անձնական գործերը քննարկող արտահաստիքային հանձնաժողովներ, որոնց նախագահները և անդամների մեծ մասը հին կոմունիստներ են՝ արդեն ծերության թոշակի անցած ընկերներ: Նրանք ամեն շաբաթ, նշանակված օրը, գումարում են նիստեր և մեծ բարեխղճությամբ կատարում իրենց վրա դրված պարտականությունները: Այդ հանձնաժողովնե-

րի նախագահներն են հին կոմունիստներ Կ. Պետրոսյանը և Մ. Աբրահամյանը։ Արդյունաբերության բաժնին կից գործում է շինարարության և բարեկարգման բաժինը (վարիչ ճարտարապետ Մ. Գևորգյան)։

Մասսայականությունը հասարակական հիմունքներում թերևս ամենից կարևորն է։ Դա կոմունիստական հոգեբանության մշակման մայրուղիներից մեկն է։ Եվ պատահական չէ, որ մեր քաղաքում, հատկապես գաղափարական աշխատանքներում, սևեռուն ուշադրություն է նվիրվում այդ բանին։ Մոտ 70 կոմունիստներ քաղկոմի արտահաստիքային դասախոսներ են, որոնք ամեն տարի հարյուրավոր դասախոսություններ են կարդում աշխատավորության համար։ Գրեթե նույնքան կոմունիստներ ընդգրկված են քաղկոմի քաղլուսկաբինետին կից հասարակական հիմունքներով գործող մեթոդ-խորհրդում, որի աշխատանքը չորրորդ տարին է, ինչ հաջողությամբ գլխավորում է քաղսովետի ժողկրթբաժնի վարիչ Ա. Ցայրոյանը։ Մեթոդ-խորհուրդը պլանավորված կերպով նիստեր է գումարում, զբաղվում քաղուսուցման հարցերով, պրոպագանդիստների համար կազմակերպում սեմինարներ և տեսական կոնֆերանսներ։ Ուշագրավ է, որ տեսական կոնֆերանսներում, սեմինարներում կարդացվելիք զեկուցումները նախապես քննության են առնվում մեթոդ-խորհրդի նիստում։

Վերջին երեք տարիներին մեր քաղաքում լայն տարածում են ստացել ժողովրդական համալսարանները, ուր ամբողջ աշխատանքը տարվում է հասարակական հիմունքներով։ Բավական է ասել, որ մենք այժմ ունենք տասնից ավելի ժողովրդական համալսարաններ և ինստիտուտներ, որոնցում ընդգրկված են ավելի քան 2700 կոմունիստներ ու անպարտիականներ։ Մեր նպատակը չէ պատմել Լենինականի ժողովրդական համալսարանների փորձի և աշխատանքների մասին։ Սակայն նկատենք, որ աշխատավորները սիրով են հաճախում այդ համալսարանները, որովհետև նրանց գործունեությունն անխափան է և որ կարևորն է՝ հետաքրքիր ու բովանդակալից։ Մեր ռեսպուբլիկայում առաջինը Լենինականում ստեղծվեց կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի երկամյա համալսարանը, որի ռեկտորն է քաղկոմի առաջին քարտուղար Գ. Ղարիբջանյանը։ Համալսարանում ընդգրկված են 200 ղեկավար աշխատողներ և արտադրության հրամանատարներ։ Այստեղ դասախոսություններով հանդես են եկել ակադեմիկոսներ Վիկտոր Համբարձումյանը, Կիմը, ՀԿՊ Կենտկոմի երկրորդ քարտուղար Հ. Բաղդասարյանը, Մոսկվայի և Թբիլիսիի մի քանի անվանի դասախոսներ։ Այս տարի համալսարանը տվեց իր առաջին շրջանավարտները։

Մեծ թվով դասախոսներ են ընդգրկվել իրավաբանական (ռեկտոր՝ միլիցիայի փոխգնդապետ Ս. Պողոսյան) և մանկավարժական (ռեկտոր՝ վաստակավոր ուսուցչուհի, կենսաթոշակառու Հր. Արզարյան) համալսարանները։ Մեր ռեսպուբլիկայում եզակի են ժողովրդական վերահսկողության (ռեկտոր՝ ՀԿՊ քաղկոմի հրահանգիչ՝ Մ. Մելքոնյան) և բանթղթակիցների (ռեկտոր՝ Բանվոր թերթի խմբագիր՝ Գ. Ասրյան) համալսարանները, որոնք օգտագործում են ոչ միայն մեր քաղաքի, այլև Երևանի դասախոսական ուժերը։ Իսկ երիտասարդության համար ստեղծվել է հասարակական կարծիքի ինստիտուտը (ռեկտոր՝ փիլիսոփայական գիտությունների թեկնածու՝ Կ. Հովսեփյան)։ Այստեղ արդեն առաջադրվող հարցերին պատասխանելու համար հրավիրվում են ոչ միայն դասախոսներ, այլ նաև առաջավոր բանվորներ, արտադրության հրամանատարներ և ուրիշներ, որոնք ամենայն բարեխղճությամբ են կատարում իրենց տրված հասարակական այդ հանձնարարությունները։

Հասարակական հիմունքների մասսայականության հիմնական օղակները մնում են սկզբնական պարտիական կազմակերպությունները, որոնք ներկայացնում են հազարավոր կոմունիստների և անմիջական կապի մեջ են աշխատավորության հոծ զանգվածների հետ։ Պարտիայի քաղաքային կոմիտեն և նրա բաժինները մշտապես հետևում են, որ պարտկազմակերպություններն ավելի ու ավելի մեծ թվով կոմունիստների և անպարտիականների ներգրավեն հասարակական աշխատանքում, ուշադրություն դարձնեն տրված հանձնարարությունների կատարմանը։

Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատում հասարակական հիմունքներով գործում է քաղլուս կաբինետ (վարիչ՝ Շուշիկ Գալստյան), դասախոսական մի պատկառելի խումբ, պարտիական-պետական վերահսկողության կոմիտեին աջակցող խմբեր, մեթոդ-խորհուրդ, բազմաթիվ կոմունիստներ առաջադրված են պրոպագանդիստներ և ագիտատորներ։ Այդ տեսակետից ուսանելի փորձ են կուտակել նաև գուլպայի և կարի ֆաբրիկաների, հղկող հաստոցների, դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանների, ժողովրդական կրթության ցանցի, № 6 շինարարական տրեստի և ուրիշ պարտիական կազմակերպություններ։ Հասարակական հիմունքները ոչ միայն չեն խանգարում, այլև օգնում են աշխատանքների ավելի լավ կազմակերպմանը, պետական առաջադրանքների կատարմանը։ Այսպես է, որովհետև տվյալ կազմակերպություններում հասարակական հիմունքները նպաստում են մարդկանց գիտակցական մակարդակի բարձրացմանը, հասարակական պարտքի ավելի խոր ընկալմանը։ Իսկ այնտեղ, ուր կա գիտակցական վերաբերմունք դեպի աշխատանքը և նպատակի որոշակիություն, միշտ էլ կլինեն արտադրական, պրակտիկ հաջողություններ։

Հասարակական հիմունքների արմատավորման լավ օջախներ են նաև ստեղծագործական մի շարք կազմակերպություններ։ Խոսքը նկարիչների, ժուռնալիստների, երգչախմբերի միությունների բաժանմունքների մասին է, որոնք գործում են հասարակական հիմունքներով։ Ճիշտ է, նրանք դեռևս լայն ակտիվ չեն ներգրավել իրենց շուրջը և միշտ չէ, որ կազմակերպում են հետաքրքրական միջոցառումներ, սակայն այստեղ ևս որոշակի գնահատելի գործեր են կատարվում աշխատավորության գեղարվեստական դաստիարակության ուղղությամբ։

Բավական խոսվեց հաջողությունների մասին։ Իսկ թերություննե՞րը։ Իհարկե, կան նաև թերություններ, վրիպումներ։ Մի առիթով արդեն նշեցինք, որ առանձին կոմունիստների տրվում են չափազանց շատ հասարակական հանձնարարություններ։ Դա ճիշտ չէ երկու իմաստով։ Նախ, որ մարդը, երբ ունենում է մի քանի հանձնարարություն, կամա թե ակամա, թեկուզ չնչին չափով, վնասվում է նրա հիմնական աշխատանքը։ Եվ երկրորդ, մեկին ծանրաբեռնելով բազմաթիվ հանձնարարություններով, մենք փաստորեն սահմանափակում ենք ավելի շատ ընկերների հասարակական աշխատանքում ընդգրկելու հնարավորությունները։

Կա մի թերություն ևս, որին պետք է ավելի մեծ ուշադրություն նվիրել։ Հասարակական հանձնարարությունն այն ժամանակ է իր բովանդակությամբ և էությամբ դառնում այդպիսին, երբ այն կատարվում է հիմնական աշխատանքից դուրս։ Սակայն երբեմն պատահում է այնպես, որ մենք կոմունիստներին, անպարտիականներին օգտագործում ենք և այն ժամին, երբ նրանք պետք է լինեն իրենց հիմնական աշխատավայրերում։ Անշուշտ, խիստ անհրաժեշտության դեպքում, պետք է գնալ և այդ զոհաբերությանը, սակայն աշխատանքին չվնասելու պայմանով։ Հիմնականում հասարակական հիմունքները մեր քաղաքում լավ, կենսունակ արմատներ են ձգել, գտնվում են քաղաքային կոմիտեի և պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում։ Հազարավոր մարդիկ՝ կոմունիստներ, անպարտիականներ, սիրով և ոգևորությամբ կատարում են իրենց տրված հանձնարարություններն ու ամբողջ ուժով ծառայում կոմունիզմի կառուցման մեծ գործին։ Նրանց այդ գործունեությունը մեր մարդկանց կոմունիստական գիտակցության ու հոգեբանության դրսևորման լավագույն արտահայտությունն է։

Լավ է ասված. մարդը դաստիարակվում է աշխատանքում։ Հասարակական աշխատանքում էլ դաստիարակվում է կոմունիստական հասարակության մարդը։

Ռ. ՄԱԴՈՅԱՆ
ՀԿՊ Լենինականի քաղաքային կոմիտեի
գաղափարական աշխատանքի բաժնի վարիչ

# ՄԵՐ ԱՌՕՐՅԱՆ ԵՎ ՀՈԳՍԵՐԸ

Դեռևս ոչ շատ հեռու ժամանակներում դատելով այս կամ այն քաղաքի կուլտուրայի մասին, ասում էին. «դա համալսարանական քաղաք է»։ Տարօրինակ է, բայց փաստ է, որ հիմա էլ դըպրոցական աշխարհագրության այժմյան դասագրքերում էլ ընդունված է կուլտուրական կենտրոններ համարել այն բնակավայրերը, որտեղ բարձրագույն ուսումնական հաստատություններ կան։ Բայց չէ՛ որ քաղաքի, և ինչո՞ւ միայն քաղաքի, այլև մեր գյուղի ու բանավանի կուլտուրական հարստությունը կրթված ու բազմակողմանիորեն զարգացած մարդիկ են։ Իսկ այդպիսի մարդիկ կան ամենուրեք։ Ուրեմն, այսօր բնակավայրի կուլտուրան բնորոշողը նրանում ապրող կուլտուրական մարդկանց առկայությունն է։

Հայտնի է, որ Իջևանի շրջանային կենտրոնը սովետական իշխանության տարիներին լիովին վերակառուցվել, կերպարանափոխվել ու գեղեցիկ քաղաք է դարձել։ Բայց հազիվ թե շատերը գիտենան այն մասին, որ այն բալետի, երաժշտական ու թատերական արվեստի սիրահարների քաղաք է։ Չնայած այստեղ պրոֆեսիոնալ արտիստներ չկան, բայց հաջողությամբ գործում են շրջանային կուլտուրայի տանը կից բալետի ինքնագործ խմբակը, ժողովրդական թատրոնը, երգի-պարի և ժողգործիքների անսամբլները։ Այդ ամենը ստեղծել են տեղի մարդիկ։ Կամ՝ վերցնենք Կիրովականը. այստեղ, ինչպես հայտնի է, չկա կոնսերվատորիա, չկան նաև արվեստի պետական հիմնարկներ, այնուամենայնիվ, մենք համարձակորեն կարող ենք մեծ քիմիայի այդ քաղաքը անվանել երաժշտական քաղաք։ Պատահականությո՞ւն է այս, թե՞ դարերի խորքից եկող սովորույթ. ոչ մեկը և ոչ էլ մյուսը։

Քաղաքի կուլտուր-լուսավորական հիմնարկները տարիներ շարունակ իրենց շուրջը համախմբելով բնածին «արվեստագետներին», մտածված կերպով և հետևողականորեն կազմակերպում են կուլտուրական կյանքը։ Բավական է ասել, որ միայն քաղաքային կուլտուրայի տանը կից հասարակական հիմունքներով գործում է ժողովրդական ֆիլհարմոնիան, որի կազմում են՝ ժողգործիքների և երգի-պարի անսամբլները, սիմֆոնիկ և փողային նվագախմբերը։

Մամուլում բազմիցս հաղորդվել է Ստեփանավանի շրջանային կուլտուրայի տան ժողովրդական թատրոնի հաջողությունների մասին, որ նա ձեռք է բերել Գուրգեն Բորյանի «Նույն հարկի տակ» պատմա-ռևոլյուցիոն պիեսը բեմադրելով Կրեմլյան ու Մոսկվայի գեղարվեստական թատրոններում։ Հատկանշական է, որ այդ թատրոնը Ստեփանավանում ունի բազմահազար երկրպագուներ։ Եվ դա շնորհիվ այն բանի, որ երբ նըստած ես դահլիճում, բոլորովին չի զգացվում՝ բեմի վրա պրոֆեսիոնալ դերասաններ են, թե՞ սոսկ սիրողներ։ Բեմահարթակը հարստացնում ու գեղեցկացնում է ոչ միայն կատարողների, այլև նրանց կյանքը, ովքեր որպես հանդիսատես գալիս են թատրոն։

Մեր օրերում կուլտուրայի տներն ու գյուղական ակումբները դարձել են մարդկանց կուլտուրական շփման, ուսման, կոլեկտիվ հանգստի կենտրոններ, գեղարվեստական ինքնագործունեության, սպորտի տարածման ամենամասսայական օջախներ։ Փորձը ցույց է տալիս, որ այդ ուղղությամբ իրենց առջև դրված խնդիրը հաջողությամբ լուծում են այն կուլտուրայի տներն ու ակումբները, որոնց կից ակտիվորեն գործում են հասարակական խորհուրդները, կուլտուր-լուսավորական աշխատանքներում ներգրավվում են գյուղական ինտելիգենցիան, երիտասարդությունը։ Կարելի է վկայակոչել Արտաշատի շրջանի Այգեզարդ գյուղի կուլտուրայի տան օրինակը (դիրեկտոր՝ Հակոբ Մանուկյան)։ Այստեղ, աշխատանքների լավ կազմակերպմանը մեծապես օգնում են կուլտուրայի տանը կից ստեղծված խորհուրդը, գյուղի միջնակարգ դպրոցի ուսուցիչները, բարձր դասարանների աշակերտները, կոլտնտեսության գյուղատնտեսը, անասնաբույժն ու զոոտեխնիկը։



Այգեզարդի կուլտուրայի տանը կանոնավոր կերպով գործում են ուսուցողական և գեղարվեստական ինքնագործունեության խմբակները, կուլտուրայի և աթեիստական հարցերով ժողովրդական համալսարանները։ Կուլտուրայի տունը խոշոր աշխատանք է կատարում արտադրության առաջավորների փորձը պրոպագանդելու ուղղությամբ։ Այս օրերին նրա աշխատանքների մի զգալի մասը կազմակերպվում է անմիջապես արտադրական տեղամասերում ստեղծված կարմիր անկյուններում։ Կուլտուրայի այդ օջախը ճաշակով կահավորված է, բովանդակալից է ցուցադըրական ագիտացիան։ Կուլտուրայի տանը գործում է պատմության թանգարանը, որի էքսպոզիցիայում մեծ տեղ է հատկացված կոլտնտեսության պատմությանը, նրա նվաճումներին։

Ռեսպուբլիկայի գրեթե բոլոր քաղաքներում ու գյուղական շրջաններում այսօր կարելի է հանդիպել կուլտուրայի տների և ակումբների, որոնք իրենց ամենօրյա աշխատանքներում ներգրավելով տեղական ինտելիգենցիայի կարող ուժերին, բովանդակալից ու նպատակասլաց քաղաքականդաստիարակչական գործ են կատարում։ Բայց իրականություն է նաև այն, որ այդ կարգի ակումբային հիմնարկները մեր ռեսպուբլիկայի քաղաքներում ու շրջաններում մեծ թիվ չեն կազմում։ Մեր ժամանակներում կյանքն ակումբային աշխատանքի նկատմամբ այնպիսի պահանջներ է ներկայացնում, որ այդպիսի վիճակը գոհացուցիչ համարել չի կարելի։

Կալինինոյի, Ալավերդու, Սպիտակի, Մարտունու և Թալինի շրջաններում վերջերս կատարված ուսումնասիրությունը ցույց տվեց, որ մի շարք գյուղական ակումբներում գործերը այնքան էլ լավ չեն գնում։ Նրանց զգալի մասում անգործության են մատնված գեղարվեստական ինքնագործ խմբերը, դասախոսություններ դեպքից-դեպք են կազմակերպվում, մինչդեռ ակումբների մատյաններում յուրաքանչյուր օր գրանցումներ են արվում զրույց, բարձրաձայն ընթերցանություն, երբեմն էլ դասախոսություն կամ կինոցուցադրում կազմակերպելու մասին։ Ընդ որում այդ «զրույցի» և «ընթերցանության» հեղինակները անպայմանորեն իրենք՝ ակումբի վարիչներն են։

Ներկայումս ռեսպուբլիկայի քաղաքներում և գյուղերում բոլոր տիպի ակումբային հիմնարկների թիվը հասնում է 1028-ի, որոնց միայն դահլիճներն ունեն ավելի քան 176 հազար տեղ։

Շատ կուլտուրայի տներում և ակումբներում կան ընթերցասրահներ և սենյակներ՝ խմբակային աշխատանքների համար։ Կուլտուրայի այդ օջախները իրենց տրամադրության տակ ունեն ռադիո-ընդունիչներ, հեռուստացույցներ և երաժըշտական գործիքներ։ Միայն մնում է գործերն այնպես կազմակերպել, որ այդ հնարավորությունները օգտագործվեն առավելագույն չափով։

Այս տարի անցկացվել է գեղարվեստական ինքնագործունեության և ժողովրդական ստեղծագործության ռեսպուբլիկական օլիմպիադա՝ նվիրված Հայաստանում սովետական կարգերի հաստատման 45-ամյակին։ Հոբելյանական օլիմպիադայի նպատակը, մի կողմից՝ ժողովրդական տաղանդների վերհանումն է, մյուս կողմից՝ աշխատավորների էսթետիկական և կուլտուրական սպասարկումը։

Մեր ռեսպուբլիկայում բարելավվում է գրադարանային գործը։ Ներկայումս բոլոր տիպի գրադարաններից օգտվող ընթերցողների թիվը հասնում է 600 հազար մարդու, որոնք յուրաքանչյուր տարի կարդում են ավելի քան 10 միլիոն գիրք։

1963—1964 թվականներին առավել աչքի ընկած 26 մասսայական գրադարաններին շնորհվել է «Գերազանց աշխատանքի գրադարան» պատվավոր կոչումը։ Այդ նույն ժամանակամիջոցում 24 գրադարանային աշխատողներ և գրքի հասարակական պրոպագանդիստներ պարգևատրվել են Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պատվոգրերով։ 1964 թվականին հայտարարված մանկական գրադարանների ռեսպուբլիկական ստուգատեսում իրենց լավ դրսևորեցին Ստեփանավանի, Իջևանի, Ալավերդու շրջանային, ինչպես նաև Երևանի № 9, Լենինականի № 1 քաղաքային և ուրիշ այլ մանկական գրադարաններ։

Միաժամանակ պետք է նշել, որ ռեսպուբլիկայի գրադարանների մի զգալի մասը դեռևս չի գտնվում իր բարձրության վրա։ Քաղաքային և, առանձնապես, գյուղական շատ գրադարանների գրքային ֆոնդերը վատ են պահպանվում, որի հետևանքով ժողովրդական այդ հարստությունը փչանում է։ Որոշ տեղերում գրադարանավարների ուղղակի մեղքով գրքային ֆոնդերը ժամանակին չեն ենթարկվում անհրաժեշտ դասակարգման։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ գրադարանային սպասարկումը վատ է հենց այն գրադարանում, որտեղ գրադարանավարը չի տիրապետում իր գործին, չունի համապատասխան կրթություն, անհրաժեշտ գիտելիքներ։ Մեր օրերում անհանդուրժելի է, երբ ռեսպուբլիկայի 2.860 գրադարանային աշխատողներից միայն 1.375-ը ունեն բարձրագույն, թերի բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն։ Եվ դա այն դեպքում, երբ ռեսպուբլիկայի բուհերի և, առանձնապես, մանկավարժական բուհերի շրջանավարտների մի զգալի մասը հնարավորություն չունի տեղավորվելու աշխատանքի։

Անցյալ տարի Էջմիածնի շրջանային կուլտուրայի տան երեք մեծ դահլիճներում բացվեց Արարատյան դաշտավայրի գավառագիտական

թանգարանը, որն ունի նախառևոլյուցիոն, սովետական շրջանի պատմության և բնության բաժիններ։ Վերակառուցվեց Խաչատուր Աբովյանի տուն-թանգարանը և հիմնովին բարեկարգվեցին նրա բակն ու շրջապատը։ Այժմ այն դարձել է մեր աշխատավորության ամենահետաքրքրական այցելավայրերից մեկը։ Սովետական շրջանի պատմության բաժինները հարստացրել են Երևանի պատմության, Կիրովականի և Գորիսի գավառագիտական թանգարանները։ Սակայն, դեռևս թույլ են պրոպագանդվում հարուստ ցուցանմուշները, քիչ են սեփական նախաձեռնությամբ կազմակերպվող մասսայական միջոցառումները։ Մինչդեռ աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում թանգարանների դերի բարձրացման համար անհրաժեշտ է, որպեսզի նրանք ավելի շատ կազմակերպեն շրջիկ ցուցահանդեսներ, ըստ ամենայնի պրոպագանդեն մեր ժողովրդի ռևոլյուցիոն և աշխատանքային փառապանծ տրադիցիաները, ռեսպուբլիկայի աշխատավորների ձեռք բերած նվաճումները՝ նյութական ու հոգևոր կուլտուրայի բարձրացման, հայրենի երկրի բնական ռեսուրսների օգտագործման բնագավառներում։

Ներկայումս ռեսպուբլիկայի քաղաքներում ու գյուղերում բոլոր տիպի կուլտուր-լուսավորական հիմնարկների թիվը հասնում է 3.686-ի, որոնցում աշխատում են ավելի քան 8.000 մարդ։ Սակայն, շատ տեղերում, կուլտլուս աշխատողների մեղքով, նրանց տրամադրության տակ եղած կուլտուրայի նյութական միջոցները լրիվ չեն ծառայեցվում աշխատավորության գաղափարական, կուլտուրական դաստիարակությանը։ Կուլտուրայի տների և ակումբների աշխատանքում դեռևս արմատախիլ չի արված ֆորմալիզմը, միապաղաղությունը։ Արտադրական փորձի պրոպագանդումը հաճախ կրում է ընդհանուր, դեկլարատիվ բնույթ։

Վերջին ժամանակներում ռեսպուբլիկայի պարտիական և սովետական կազմակերպությունները որոշակի աշխատանք են կատարել կուլտուր-լուսավորական հիմնարկների նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղղությամբ։ Պետության և կոլտնտեսությունների միջոցների հաշվին քաղաքներում, շրջկենտրոններում և գյուղերում կառուցվել են բազմաթիվ ակումբա-գրադարանային նոր շենքեր, որոնք իրենց արտաքին տեսքով, դահլիճների տարողությամբ, խմբակային աշխատանքների համար օժանդակ սենյակների քանակությամբ և կահավորմամբ հիացմունք են պատճառում։ Այդպիսիների թվում են, օրինակ, Արտաշատի շրջանի Վ. Արտաշատ, Վ. Դվին, Մխչյան, Հոկտեմբերյանի շրջանի Հոկտեմբեր, Արմավիր, Ս. Կիրովի անվան սովխոզի, Էջմիածնի շրջանի Արշալույս, Աղավնատուն, Վեդու շրջանի Ավշար գյուղերի ակումբա-գրադարանային շենքերը։ Ակումբների և գրադարանների հարմարավետ շենքեր են կառուցվել նաև Կամոյի, Եղեգնաձորի, Արթիկի, Անիի, Ղափանի, Ստեփանավանի և այլ շրջանների գյուղերում ու բանվորական ավաններում։ Չնայած դրան, մեր ռեսպուբլիկայում կուլտուր-լուսավորական հիմնարկների նյութա-տեխնիկական բազան ետ է մնում բնակչության աճող կուլտուրական պահանջմունքներից։ Ցավոք, շատ ակումբներ, գրադարաններ, թանգարաններ դեռևս տեղավորված են տարրական հարմարություններից զուրկ շենքերում։ Արդյոք այդ բանի հետևանքով չէ, որ Ալ. Մյասնիկյանի անվան ռեսպուբլիկական գրադարանի հինգ ու կես միլիոն գրքերից մոտ չորս միլիոնը չի տրամադրվում ընթերցողներին, որովհետև տասնյակ տարիներ դրանք պահվում են քաղաքի տարբեր շենքերի նկուղներում։ Այդ նույն պատճառով ցուցադրության չի ներկայացվում Հայաստանի պատմության, գրականության և արվեստի պետական թանգարանների արժեքավոր ցուցանմուշների մի զգալի մասը։ Շենք չլինելու հետևանքով ավելի քան երեք տարի է, ինչ չի գործում Լենինականի գավառագիտական թանգարանը։ Անմխիթար պայմաններում են աշխատում Խնկո-Ապոր անվան մանկական ռեսպուբլիկական և Երևանի Ավ. Իսահակյանի անվան կենտրոնական գրադարանները, Հայաստանի բնության պետական ու Երևանի պատմության թանգարանները։

Ովքեր անցել են Սևանի շրջանի Ծովագյուղով, անշուշտ նկատած կլինեն, թե ինչպես այն բարեփոխվել է վերջին տարիներին։ Կառուցվել են գեղեցիկ ու հարմարավետ բնակելի տներ, բարեկարգվել են բակերն ու փողոցները։ Բայց, ցավոք, գյուղի ակումբն ու գրադարանը չեն վերափոխվել։ Ակումբը, օրինակ, տեղավորված է միսենյականոց խարխուլ տնակում, ուր միաժամանակ կարող են տեղավորվել 30—35 մարդ։ Ձմռանն այն չի տաքացվում։ Նման վիճակում են գտնվում մեր ռեսպուբլիկայի գյուղական շատ գրադարաններ ու ակումբներ։ Ժամանակն է, որպեսզի ռեսպուբլիկայի պետպլանը, քաղաքային ու շրջանային սովետների գործկոմները լրջորեն զբաղվեն այդ հարցով։

Կուլտուրայի օբյեկտների շինարարությանը խոչընդոտում է նաև տիպային նախագծերի բացակայությունը։ Հայպետշինը և ռեսպուբլիկայի նախագծային կազմակերպություններն անհրաժեշտ նախաձեռնություն հանդես չեն բերում ակումբային ու գրադարանային հարմարավետ շենքերի տիպային նախագծեր մշակելու և եղած պատվերները ժամանակին կատարելու ուղղությամբ։ Վերցնենք մի այսպիսի օրինակ. մեր ռեսպուբլիկայի բնակլիմայական պայմաններին միանգամայն ձեռնտու է ունենալ ամառային բաց էստրադաներ, որոնց կառուցումը կարելի է իրականացնել անհամեմատ կարճ ժամկետներում և նվազ միջոցներով (եթե 600 տեղանոց կուլտուրայի տան շինարարության համար պահանջվում է մոտ 200 հազար ռուբլի, բաց էստրադայի համար՝ 12—15 հազար ռուբլի), իսկ վերջինիս առավելությունը չափազանց մեծ է, այն կարող է միանգամից տեղավորել 2—3 հազար մարդ։ Վերջերս հնարավորություն էր ստեղծվել Ստեփանավանի, Իջևանի և Գորիսի շրջկենտրոններում իրականացնելու բաց էստրադաների շինարարություն, բայց ոչ Հայպետշինում, և ոչ էլ նախագծային ինստիտուտներում այդպիսի նախագիծ չգտնվեց։

Հաճախ պարտիական ակտիվներում, ռեսպուբլիկական խորհրդակցություններում և մամուլում քննադատական խոսքեր են ասվում կուլտուրայի ռեսպուբլիկական օրգանների հասցեին՝ գյուղական վայրերը արվեստի պրոֆեսիոնալ խմբեր քիչ ուղարկելու մասին։ Կարծես թե ճիշտ են անում։ Իրոք, պրոֆեսիոնալ խմբերը պետք է հաճախակի մեկնեն շրջանները, հանդես գան մեր գյուղական բնակչության առջև։ Բայց երբ փոքր-ինչ խորամուխ ես լինում, պարզվում է, որ այդ հնարավոր չէ զուտ տեխնիկական պատճառներով։ Այդ մասին է վկայում Կամոյի շրջանում այս տարվա հուլիսին կազմակերպված արվեստի ու գրականության շաբաթը։ Շրջանի շատ գյուղերի բնակիչներ հնարավորություն չունեցան վայելելու պրոֆեսիոնալ արվեստի բարիքները՝ դահլիճների պակասության և բեմական անհարմարության պատճառով։

Մեզ համար անլուծելի պրոբլեմ է դարձել նաև ձմռանը գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկներին վառելիքով ապահովելը։ Բացառությամբ Գորիսի, Ղափանի, Նոյեմբերյանի և մի քանի այլ շրջանների, ուր տեղական կազմակերպությունների նախաձեռնությամբ կենտրոնացված կարգով ապահովվում են վառելիքով, ռեսպուբլիկայի գյուղական վայրերի զգալի մասում, վառելիքի բացակայության հետևանքով ձմռանը կուլտուրայի օջախները փակվում են։

Թվում է թե ռեսպուբլիկայի գազիֆիկացումը, որի շնորհիվ մեծ քանակությամբ վառելափայտ և քարածուխ է խնայվում, մեր պլանային օրգանների համար լավ առիթ կհանդիսանար լուծելու գյուղական կուլտուր-լուսավորական հիմնարկները վառելիքով ապահովելու հարցը։ Ընդ որում, սխալված չենք լինի, եթե ասենք, որ գյուղական ակումբը և գրադարանը այն միակ հիմնարկներն են, որոնք պլանավորված կարգով չեն ապահովվում վառելիքով։

Ինչպես հայտնի է, այս տարվա ապրիլից զգալիորեն բարձրացել է կուլտուր-լուսավորական հիմնարկների աշխատողների աշխատավարձը։ Դա հնարավորություն է ստեղծում այդ բնագավառն ապահովելու համապատասխան կրթություն ունեցող, գործը տիրապետող ու սիրող որակյալ կադրերով։ Այստեղ մեզ պետք է կոնկրետ օգնություն ցույց տան տեղական պարտիական և սովետական կազմակերպությունները, պարտիայի քաղաքային ու շրջանային կոմիտեները, քաղաքային և շրջանային սովետների գործկոմները։

Ռեսպուբլիկայի կուլտուր-լուսավորական հիմնարկների գործունեության հետագա բարելավումն ու աշխուժացումը օրվա պահանջ է, որին մենք կարող ենք հասնել այդ հիմնարկների ցանցի նյութատեխնիկական բազայի ընդլայնման, կադրերի ճիշտ ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության միջոցով։

ԱՐ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Հայկական ՍՍՌ Կուլտուրայի մինիստրության կուլտուր-լուսավորական հիմնարկների վարչության պետ.

# ԷՋԵՐ ԱՆՑՅԱԼԻՑ



## ՍԻՐԵԼԻ ՊԱՈԼՈՆ

«Թողած Երևանդ սիրուն,
Ուր քեզ օրորում էր Աստն,
Հառել ես հայացքդ հեռուն,
Որպես մի նոր Յասոն»...

Մեր մեծանուն քնարերգու Վահան Տերյանի այս տողերը նվիրված են նրա ընկերոջը՝ գրականագետ, հասարակական գործիչ Պողոս Մակինցյանին, որին Տերյանը և մոտ ընկերները մտերմաբար Պաոլո էին կոչում:

Տերյանի բանաստեղծությունը գրվել է 1917 թվականին, երբ Ռուսաստանում արդեն լսելի էր մոտալուտ մեծ ռևոլյուցիայի փոթորկալից շրինդը: Դեպի այդ փոթորկվող «հեռուն» էին հառել իրենց հայացքները ո՛չ միայն Մակինցյանը, այլև երկրի ամբողջ աշխատավորությունն ու առաջավոր մտավորականությունը:

Այդ օրերին Երևանի քաղաքային դումայի բոլշևիկ-անդամ Մակինցյանը չէր կարող անտարբեր մնալ դեպի այն հզոր ալեկոծումը Ռուսաստանում, որի պոռթկումը նա վաղուց էր երազել: Եվ 1918 թվականի գարնանը նա թողնում է Երևանն ու մեկնում Մոսկվա՝ նետվելու սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի հորձանուտը, որպես լենինյան պարտիայի անձնվեր մարտիկ:

Այն տարիներից իսկ, Պողոս Մակինցյանն անհայտ անձնավորություն չէր: Հոկտեմբերից դեռ առաջ էլ գրասերների լայն շրջանում նա հայտնի էր որպես պատրաստված գրականագետ-քննադատ, թարգմանիչ և ակտիվ գրական գործիչ:

Իմ սերնդի երիտասարդության համար Մակինցյանի անունը հարազատ դարձավ այն օրից, երբ գրական ասպարեզում իր պատվավոր տեղը գրավեց Մոսկվայում հրատարակվող «Գարուն» ալմանախը, որի նախաձեռնողներից ու խմբագիրներից մեկը 1910—12 թվականներից Պողոս Մակինցյանն էր:

«Գարուն» ալմանախի շուրջը համախմբված գրականագետները սովորական գրական գործիչներ չէին, այլ քաղաքական դեմքեր՝ ռևոլյուցիոն մարքսիստներ, մանավանդ Մարտունին՝ Ալ. Մյասնիկյանը և Պ. Մակինցյանը:

Քաղաքացիական կռիվների վճռական ու ծանրագույն օրերին՝ 1918 թվականին, եռ չմնալով իր մտերիմ ընկերոջից՝ Վահան Տերյանից, նա ջերմորեն ողջունեց «նորածին կյանքի աղմուկը», «փրկարար զանգի ղողանջը» և «բացվող առավոտը»: Եթե հայ մտավորականներից ոմանք ընդունեցին Հոկտեմբերյան մեծ ռևոլյուցիան որոշ վարանումներից հետո, ապա Մակինցյանն ու Վահան Տերյանը առաջին օրերից անվերապահորեն մտան բոլշևիկյան պարտիայի շարքերը՝ որպես նրա նվիրված գործիչներ:



***

Պողոս Մակինցյանը ծնվել է Գողթան գավառի Ներքին-Ագուլիս ավանում՝ աշխատավոր հողագործի ընտանիքում, 1884 թվականի ապրիլին: Միջնակարգ կրթությունն ստացել է Մոսկվայի Լազարյան ճեմարանում, որտեղ մտերմանում է իր դասընկերներ Վահան Տերյանի, Ցոլակ Խանզադյանի, հետագայում նաև՝ իրենից երկու տարով փոքր Մյասնիկյանի հետ:

1906 թվականին ավարտելով Լազարյան ճեմարանը, Մակինցյանը, ինչպես և Տերյանը, մտնում է Մոսկվայի համալսարանի պատմա-լեզվագրական ֆակուլտետը, որը և ավարտում է 1912—13 թվականներին:

Ծանր է եղել Մակինցյանի ուսանողական տարիների կյանքը, դրսից ոչ մի նյութական օժանդակություն չստանալով, ստիպված մասնավոր դասեր է տալիս ունևոր ընտանիքներում: Իսկ այդպիսի դասեր միշտ չէին պատահում: «Հավիտյան մրսած և հավիտյան քաղցած», դառը կատակով այսպես է գրել Վահան Տերյանը Մակինցյանի մասին:

Ավարտելով համալսարանը՝ Մակինցյանն ամբողջովին նվիրվում է գրական-մանկավարժական աշխատանքի, զբաղվում թարգմանություններով և խմբագրական աշխատանքով, մինչև որ 1915 թվականին հրավիրվում է Էջմիածին, որպես ճեմարանի դասատու: Որոշ ժամանակ նա դասավանդում է նաև Երևանի թեմական դպրոցում: 1917 թվականի մայիսից, ինչպես նա հաղորդում է իր պարտիական անկետաներից մեկում, Երևանում եղել է քաղաքային դումայի անդամ և բոլշևիկյան ֆրակցիայի ղեկավար, իսկ 1918 թվականի ապրիլին մեկնել է Մոսկվա, որտեղ և ստացել է իր պարտիական տոմսը:

Գալով Մոսկվա, նա իսկույն անցնում է աշխատանքի ՌՍՖՍՌ-ի լուսժողկոմատի ապարատում ազգային փոքրամասնությունների գծով՝ որպես բաժնի վարիչ, իսկ 1919 թվականի հոկտեմբերից Համառուսաստանյան չեկայի ազգային փոքրամասնությունների մամուլի բյուրոյի վարիչն է նա, մինչև Սովետական Հայաստանի վերադառնալը՝ 1921 թվականի մայիսը:

Պողոս Մակինցյանը, որին Մյասնիկյանը լավ ճանաչում և վստահում էր, նշանակվում է Հայաստանի ներքին գործերի ժողովրդական կոմիսար, միաժամանակ տանկական օկուպացիայից նոր ազատագրված Ալեքսանդրապոլի գավառի արտակարգ կոմիսար, իսկ այնուհետև արտակարգ կոմիսար Զանգեզուրում, մինչև տեղում կազմակերպվում են իշխանության նորմալ օրգաններ:

Երկար չի տևում Մակինցյանի այդ «վարչական» գործունեությունը: 1922 թվականի սեպտեմբերին նա նշանակվում է Հայաստանի լուսավորության ժողկոմ: 1923-ից մինչև 1927 թվականը Մակինցյանը լինում է արտասահմանում՝ Պոլսում, Միլանում, Փարիզում Անդրկովկասյան ռեսպուբլիկաների ֆեդերացիայի առևտրական ներկայացուցչի պաշտոնով և անգնահատելի գործ է կատարում ո՛չ միայն որպես պետական գործիչ, այլև որպես Վահան Տերյանի «Երկերի ժողովածուի» հատորները կազմող ու հրատարակող, որպես գրական-կուլտուրական ասպարեզի խոշոր դեմք, որը լիազորված էր կապ հաստատելու արտասահմանում գտնվող նշանավոր հայ մտավորականների հետ:

Որքան էլ այսօր բարձր գնահատենք Մակինցյանի քաղաքական-հասարակական, պարտիական-սովետական գործունեությունը, այնուամենայնիվ, նա բանկ է մեզ համար ամենից առաջ որպես կուլտուրական-գրական ասպարեզի նշանավոր գործիչ:

Մակինցյանի հասարակական-գրական գործունեության մեջ ամենաակնբախը նրա աջակցությունն է մեծատաղանդ ռուս բանաստեղծ Վալերի Բրյուսովին՝ «Պոեզիա Արմենիի» անթոլոգիայի հրապարակման գործում: Թե ինչպիսի սիրով ու հրճվանքով ընդունեց հայ ժողովուրդն այդ անթոլոգիան, հայտնի է ամենքիս: Մեր ականավոր վարպետը՝ Ավ. Իսահակյանը, ամենայն իրավամբ այն համարել է «մի գիրք, որը դարձավ հայ ժողովրդի կուլտուրական հպարտությունը»: Ահա այդ պատմական մեծարժեք գործում Վահան Տերյանի հետ միասին իր մեծ բաժինն ունի և Մակինցյանը՝ Բրյուսովի հայոց լեզվի ուսուցիչը, ռուս բանաստեղծին հայ ժողովրդի պատմության և գրականության արժեքներին ծանոթացնողը, վերջապես՝ Բրյուսովի հմուտ խորհրդատուն:

Չենք կարող առանձնապես չնշել նաև Մակինցյանի մեծ ծառայությունը Վահան Տերյանի երկերի չորս հատորանոց ժողովածուների հրատարակման կապակցությամբ (Պոլսում 1923—25 թթ.): Աննախընթաց, բազմակողմանի ուսումնասիրված հրատարակություն էր այդ:

Տերյանի երկերի՝ Մակինցյանի հրատարակած ժողովածուները ջերմ ընդունելություն գտան հայ գրասերների կողմից: Նա ո՛չ միայն նոր սիրով, ճաշակով ու գրականագետի հմտությամբ հավաքել է Տերյանի երկերը (բացի նամակներից, որոնք պետք է մտնեին երկերի 5-րդ հատորի մեջ), այլև մանրակրկիտ ուսումնասիրել նրա պոեզիան, տվել պոետի ծավալուն կենսագրությունը, օգտագործելով իր հարուստ հիշողությունները:

Մակինցյանը որպես գրականագետ քննադատ, անկասկած, մեր գրական կյանքում ունի իր պատվավոր տեղը: Դժբախտաբար մինչև այսօր մենք չունենք նրա աշխատությունների, գոնե ըն-

տիր հոդվածների, հատորյակը: Բայց, որպես նրա ժամանակակիցը, կարող եմ վկայել, թե ինչպիսի ջերմությամբ էին ընդունվում Մակինցյանի ելույթները թե՛ մինչռևոլյուցիոն շրջանում և թե հետագայում:

Մակինցյանի քննադատությունը միշտ կրքոտ էր և անզիջում: Այդ էր պատճառը, որ քիչ չէին Մակինցյանի հակառակորդները, որոնք տքնում էին վարկաբեկել նրան: Տերյանն իր նամակներից մեկում հետևյալ կերպ է բնորոշում Մակինցյանին. «Պողոսի համար ես միշտ վախենում էի և վախենում եմ, նա այնպիսին է, որ կրքնկվի և այն ժամանակ ամեն ինչ նրա համար ոչինչ չարժե, ամեն ինչ մոռանում է»: Իրոք այդպես էր: Հիշենք, թեկուզ, Մակինցյանի ցասկոտ տողերը իր ժամանակի «փիլիսոփա» Ե. Ֆրանգյանի մի հոդվածի կապակցությամբ («Ավ. Իսահակյանը որպես մտածող»): Մակինցյանը կարդալով այդ հավակնոտ ու մակերեսային հոդվածը, իր «Դիմագծեր»-ում զայրացած բացականչում է. *«Нет Чехова на вас,* պարոն Ֆրանգյան»: Երբ նրան ասում էին, թե ինչպե՞ս այդքան կրթված ու կոռեկտ մարդը կարող է այդչափ անզուսպ լինել իր գնահատականների մեջ, նա ժպտում էր և ասում. «Ես չար մարդ չեմ, բայց քննադատը ուրիշ կերպ չի կարող լինել, մանավանդ, երբ զանազան ոգետ գրչակները ձգտում են ասպարեզը տիրապետել: Չեմ կարող տանել ոգետ գրողին, դա սոսկալի է, ինչպե՞ս կարող է գրողը ոգետ լինել»:

Մակինցյանը որպես բարձր էրուդիցիայի մարդ միշտ էլ ամենայն բարեխղճությամբ ուսումնասիրում էր գրելիք նյութը: Այդ է պատճառը, որ նրա ակնարկները բազմակողմանի են, տպավորիչ ու համոզիչ:

Ահա նրա 120 էջանոց «Դիմագծերը»՝ նվիրված Հովհ. Թումանյանին և Ավ. Իսահակյանին՝ տպագրված «Գարուն» ալմանախի 3-րդ համարում, 1912 թվականին: Այդ ուսումնասիրությունը հեղինակը համեստորեն անվանում է սոսկ «Դիմագծեր»: Ինչպիսի՜ տպավորիչ գծերով է նա ընթերցողին ներկայացնում երկու մեծ պոետներին, նրանց պոեզիայի հիմքն ու մեծությունը: Իհարկե, կարելի է չհամաձայնել հեղինակի այս կամ այն ձևակերպման հետ, բայց այնուհանդերձ «Դիմագծերը» ներկայացված են վարպետի գուներ վրձինով և գրականագետի փայլուն տաղանդի արգասիք են:

Վերցնենք մի ուրիշ գործ ևս՝ Գերհարտ Հաուպտմանի «Ջրասույզ զանգ»-ի թարգմանության առաջաբանը: Մակինցյանը թե այս և թե իր մի շարք այլ թարգմանություններով ներկայանում է մեզ նաև որպես շնորհալի թարգմանիչ: Նա թարգմանել է բնագրից Ա. Շնիցլերի գործերից, Սերվանտեսի «Դոն Քիշոտը», Պուշկինի «Բորիս Գոդունովը», հայերենից ռուսերեն՝ Շիրվանզադեի «Քաոսը» և մի շարք այլ գործեր: Սակայն վերադառնանք «Ջրասույզ զանգ»-ի առաջաբանին: Իհարկե, թարգմանիչը բոլորովին էլ պարտավոր չէր իր թարգմանությանը կցել նաև ծավալուն առաջաբան: Բայց նա անհրաժեշտ է համարում ոչ միայն արժեքավորել դրաման, տալ նրա գրական-հասարակական նշանակությունը, այլև ծանոթացնել ընթերցողին դրամայի հեղինակի հետ, վերլուծել Հաուպտմանի ստեղծագործությունը: Եվ ինչպիսի՜ բծախնդիր պատասխանատվությամբ է նա թարգմանել: Նա հանգամանորեն նկարագրում է իր թարգմանական մեթոդը: Թարգմանությունը նա համեմատել է ռուսերեն հինգ թարգմանությունների հետ: Մակինցյանը հետաքրքրվել է նաև «Ջրասույզ զանգ»-ի ֆրանսերեն թարգմանությամբ: Մի գործ թարգմանելու համար ուսումնասիրել է վեց այլ թարգմանություններ—այդ ցույց է տալիս, թե ինչպիսի թարգմանիչ էր Մակինցյանը:

Շնորհալի գրականագետ ու թարգմանիչ Մակինցյանը տիրապետում էր ո՛չ միայն ռուսերենին, այլև գերմաներենին, ֆրանսերենին, Միլանում եղած ժամանակամիջոցում կարողացել էր յուրացնել իտալերենը:

«Ջրասույզ զանգ»-ը թարգմանված է չափածո և հանգավորված է, ինչպես և բնագիրը: Թեպետ նա իր առաջաբանում նկատում է, որ ինքը պոետ լինելու հավակնություն չունի, բայց իր այդ 180 էջանոց թարգմանությամբ դրսևորել է պոետի շնորհքը: Իզուր չէր Տերյանը մարտնչում իր ընկերոջ համար, գրելով Խանզադյանին. «Սխալ ես և այն դեպքում, երբ ասում ես, թե Դավիթը (սպեցիֆիկ Դ. Անանունը), Աբաբեկյանը ավելի իրավունք ունեն մեծամիտ լինելու (իհարկե, սա իմ կարծիքն է): Ես նրանց այդպիսի իրավունքները ընդունելու համար հիմքեր չեմ տեսնում, մինչդեռ իմ խորին համոզմունքով Պողոսն ունի ն ա շ ա կ (որ նրանցից ոչ մեկը չունի), շնորհք, որ նրանցից ոչ մեկի մեջ դեռ չեմ տեսել»:

Սրտառուչ է Տերյանի վերաբերմունքը դեպի իր գրականագետ ընկերը, որին նա այնքան բարձր է գնահատել իր կյանքի բոլոր տարիներին: Մակինցյանի կնոջ՝ վաստակավոր դերասանուհի Ե. Մ. Սեբարի մոտ պահված է Տերյանի բանաստեղծությունների՝ 1912 թվականին հրատարակված ժողովածուն, որը հեղինակը նվիրել է Մակինցյանին: Գրքի առաջին էջի վրա կարմիր բանաքով Տերյանը մակագրել է.

— Իմ սիրելի Պողոսին՝ այս գիրքը ու այս զազելը:

Եկան օրեր ու անցան և ինձ ոչինչ չմնաց...

Մակինցյանը բացառիկ հետաքրքրական զրուցակից էր: Նա հետևում էր ամեն մի նոր երևույթի, բաց չէր թողնում աչքի ընկնող ոչ մի նոր գիրք և կարող էր դրանց մասին պատմել իրեն



հատուկ ոգևորությամբ: Այդ ամենին ավելացրեք նաև նրա ծանոթությունների լայն շրջանը՝ Մաքսիմ Գորկի, Վ. Բրյուսով, Ալ. Բլոկ, Յուրի Վեսելովսկի, Բալմոնտ, Պաոլո Յաշվիլի, ռուս, հայ և այլազգի ականավոր գրողներից ու արվեստագետներից շատ շատերը:

Մակինցյանին ես հանդիպել եմ գլխավորապես 1924 թվականից սկսած, երբ աշխատում էի մեր պարտիայի Անդրկովկասյան կոմիտեում: Նա հաճախ էր լինում իր մտերիմ ընկերոջ՝ Մյասնիկյանի մոտ: Այդ պահերին անցնում էր և ինձ մոտ: Ինչպես միշտ, նրա խոսքը բովանդակալից էր, աշխույժ: Այդ հանդիպումների ընթացքում էլ միտք հղացավ թարգմանել Ալ. Բլոկի հռչակավոր պոեմը՝ «Տասներկուսը», որը հրատարակվեց Թիֆլիսում, Մակինցյանի առաջաբանով: Հետագայում, երբ ես աշխատում էի նաև «Մարտակոչի» (Պրոլետարի) խմբագրությունում, մենք ավելի հաճախ էինք հանդիպում: Անմոռանալի էին այն ժամերը, երբ նա իր բնակարանում հատվածներ էր կարդում «Բորիս Գոդունովի» թարգմանությունից: Կարդում էր շեշտված առոգանությամբ ու ոգևորությամբ: Հատկապես մեծ սիրով ու վարպետությամբ էր արտասանում Պիմենի մենախոսությունը:

Նա սիրահարված էր գրականությանը: Գրականությունն ու արվեստը նրա տարերքն էին: Պատանու պես խանդավառվում էր, երբ մի լավ գիրք էր կարդում, կամ հաջողված ներկայացում դիտում: Չեմ մոռանում, մի գիշեր նա զանգեց ինձ խմբագրատուն, որ հարցնի կարդացե՞լ եմ արդյոք Մկրտիչ Արմենի նորերս լույս տեսած «Հեղնար աղբյուրը»:

— Ոչ, դեռ չեմ կարդացել,— պատասխանեցի, —բայց ինչո՞ւ ես այդպես հուզված:

— Ինչպե՞ս չհուզվեմ,— ասում է նա,— դու երջանիկ ես, որ վաղը կկարդաս ու կվայելես այն հաճույքը, որ ես այսօր վայելեցի: Վերջապես մի տաղանդավոր երիտասարդ արձակագիր երևաց և մեր հորիզոնում: Կարդա՛, կարդա՛, դու էլ կուրախանաս, քո գյումրեցիներին կգտնես գրքում:

Այդ պահին ես հիշեցի ռուս մեծ պոետ Նեկրասովին, որը կարդալով Դոստոևսկու *«Бедные люди»* անդրանիկ վիպակի ձեռագիրը, այնպես է հիանում, որ ուշ գիշերով գրող Գրիգորևիչի ուղեկցությամբ գնում է Դոստոևսկու մոտ (որպես գրող նա դեռևս անհայտ էր) և հիացմունքի արցունքն աչքերին շնորհավորում է սկսնակ հեղինակին նրա մեծ հաջողության համար:

Մակինցյանը հմայիչ ընկեր էր, հմայիչ բոլոր կողմերով, թե՛ արտաքինով և թե իր ներքին, մարդկային-ընկերական բարեմասնություններով: Կյանքի սիրահար, բուռն հույզերով լի, լիարյուն և լիարժեք անձնավորություն էր նա՝ մարդկային ցայտուն ու նուրբ զգացումներով:

Հայ ժողովրդի հոգևոր կուլտուրայի անխոնջ ու անշահախնդիր մշակ Պ. Մակինցյանը 1930—1931 թվականներից հետո արդեն չէր երևում գրական-կուլտուրական շրջաններում: Նա ազնվորեն կատարում էր իր տնտեսավարական պարտականությունները Հայաստանում և Անդրկովկասում: Այդպիսով նրա բազմակողմանի ունակությունները օգտագործվեցին ոչ նպատակահարմարորեն մինչև այն օրը, երբ ընդհատվեց նրա կյանքը ուժերի ծաղկման շրջանում:

ԱԳ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԱՍԼԱՆՅԱՆ Հ. Գ. — Առաջադիմության գաղափարը բուրժուական պատմափիլիսոփայության մեջ: Ե., ԳԱ հրատ: 1965: 395 էջ:

*Այս մենագրությունը (ռուսերեն) բուրժուական փիլիսոփայության հիմնական բնագավառի՝ հասարակական-պատմական առաջադիմության հարցի քննադատական ուրվագիծն է, ուր տրված են այդ հարցի մարքսիստական-լենինյան ըմբռնման հիմնական դրույթները: Ղեկավարվելով մարքսիստական-լենինյան մեթոդոլոգիայի սկզբունքներով և օգտագործելով մեծաքանակ բուրժուական գրականություն, հեղինակը համառոտակի բնութագրել է հասարակական առաջադիմության գաղափարի էվոլյուցիան բուրժուական գաղափարախոսության ճգնաժամի պայմաններում, սակայն գրքի բովանդակության առանցքն է ժամանակակից բուրժուական հակաառաջադիմական կոնցեպցիայի բազմակողմանի քննադատությունը:*

ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ. — Հայաստանի կոմունիստական պարտիայի կազմակերպումը: Ե., «Հայաստան» հրատ. 1965: 342 էջ:

*Արխիվային և հրապարակված գրականության հիման վրա սույն մենագրության մեջ հեղինակը շարադրել է Հայաստանում մարքսիզմի տարածման առաջին քայլերի, բոլշևիկյան կազմակերպությունների առաջացման, սոցիալիստական հեղափոխության համար ծավալած գործունեության և Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) կուսակցության ձևավորման մասին:*

ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե. — Պլանավորման զարգացման պատմությունը ՍՍՌՄ-ում: «Միտք» հրատ. 1965, 226 էջ:

*Գրքում ընդհանրացված է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պլանավորման փորձը: Հանգամանորեն քննարկվում են պլանավորման ձևերի ու մեթոդների զարգացման ու կատարելագործման հարցերը, վերլուծվում է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության պլանավորման սկզբունքի արմատավորման ընթացքը և պլանավորումը՝ որպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի համամասնական զարգացումն ապահովող հզոր միջոց:*

ՍԱՀԱԿՅԱՆ Գ. Ն. — Սպառման անհատական և հասարակական ֆոնդերը: Ե., ԳԱ հրատ: 1965: 86 էջ:

*Գրքում ցույց է տրված հիշյալ ֆոնդերի առաջացման աղբյուրները, բաշխումը և էությունը, ինչպես նաև սպառման հասարակական ֆոնդերի դերը վերարտադրության և բաշխման հարաբերությունների կարգավորման ու ժողովրդի կենսամակարդակի բարձրացման գործում:*

ԴԱՎԹՅԱՆ Լ. Մ. — Սովետական Հայաստանի բնակչության վերարտադրությունը: Ե., ԳԱ հրատ: 1965: 218 էջ:

*Վիճակագրական և արխիվային բազմաթիվ նյութերի հիման վրա, հեղինակը Հայկական ՍՍՌ պատմական ֆոնի վրա ուսումնասիրել է բնակչության աճի, մահացության և մեխանիկական շարժման ընթացքի օրինաչափությունները:*

---



Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

ՎՖ 10458 | Պատվեր 2520 | Տիրաժ 9000 | Գինը 25 կոպ.

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 28/X 1965 թ.:

*Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ԹՈՒՂԹԸ ՔՍՈՒՔԻ ՓՈԽԱՐԵՆ*

*Օստերբուրգի (ԳԴՌ) թղթի ֆաբրիկան թողարկում է, այսպես կոչված, հակակոռոզային թուղթ, որը պատրաստի մեքենաշինական արտադրանքի փոխադրման ժամանակ փոխարինում է քսուքային յուղերին: Մետաղը պաշտպանող թուղթը սնում են հատուկ քիմիկատներով, որոնք փոխադրման ժամանակ արտադրում են գազ, որը և բացառում է կոռոզիան, բացի դրանից տնտեսում մեծ քանակությամբ քսուքային յուղ:*

## *ԳԼԻՑԵՐԻՆԸ ԲՈՒԺՈՒՄ Է ԳԼԱՈՒԿՈՄԱՆ*

*Ռումինիայի Բակէու քաղաքի հիվանդանոցային միավորման օվտալմոլոգիական բաժանմունքում գլաուկոման (աչքի հիվանդության տեսակ) բուժելու համար օգտագործում են գլիցերին: Մարմնի քաշի յուրաքանչյուր մեկ կգ-ին 1—1,5 գրամ ընդունելու դեպքում իջնում է ներաչքային ճնշումը մաքսիմում ընդունելուց մեկ ժամ հետո: Գլաուկոմայի սուր նոպաների ժամանակ գլիցերինը վերացնում է եղջերաթաղանթի հոսքը և մեղմացնում բորբոքային պրոցեսներն աչքում: Այդ հեշտացնում է վիրաբուժական միջամտությունը: Նույն նպատակով նախկինում կիրառվող միզանյութի համեմատ գլիցերինը կողմնակի երևույթներ չի առաջացնում:*

## *ՌՈՅԱԼ ԱՌԱՆՑ ԼԱՐԵՐԻ*

*Նոր տեսակի ռոյալը նախագծել է հունգարական վարպետ Կարոլի Ջերը: Նոր գործիքն ունի նույնպիսի կլավիատուրա, որպիսին սովորական ռոյալը, բայց փոքրածավալ է, էժան և կշռում է մոտ 16 կիլոգրամ: Գործիքն զբաղեցնում է այնքան տեղ, որքան ռադիոընդունիչի ռեզանիկը և շատ հարմար է ոչ մեծ բնակարանների համար:*

## *ԸՆԴԵՐՔԻ ԷԼԵԿՏՐԱԽՈՒՅԶԸ*

*Ալմա-Աթայի գեոֆիզիկական սարքերի գործարանն ստեղծել է կատարելագործված չափիչ ապարատ՝ օգտակար հանածոները էլեկտրականության միջոցով հետախուզելու համար: Այդ ֆոտոավտոկոմպենսատորը նախատեսված է երկրագնդի մակերևույթի էլեկտրական դաշտի ուսումնասիրման համար: Էլեկտրախույզը գետնի մեջ է մտցնում մետաղյա սնող 2 էլեկտրոդ, որոնց միջով անց է կացվում էլեկտրական հոսանք: Միացած լինելով ընդունիչ 2 այլ էլեկտրոդների հետ՝ ֆոտոավտոկոմպենսատորը որոշում է նրանց միջև էլեկտրականության պոտենցիալների տարբերության մեծությունը: Վերջինս էլ բնութագրում է երկրագնդի կեղևի կազմությունը, օգնում որոշելու նրա մեջ եղած օգտակար հանածոների տեղը: Համանման նախկին սարքի համեմատ նոր սարքը մեծ ճշգրտությամբ է գործում, երկու անգամ թեթև է, խնայողական և աշխատանքում՝ հուսալի:*

## *—75°-ԻՑ ՄԻՆՉԵՎ +250°*

*ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի մասնագետները մշակել են սինթետիկ կաուչուկի նոր տեսակ՝ կրեմնեօրգանական միացությունների հիման վրա: Այդ կաուչուկից ստացված ռետինն ունի բարձր ջերմադիմացկունություն, որը զուգակցվում է իջեցված մնացորդային դեֆորմացիայի հետ: Այդպիսի ռետինն ունի լավ տեխնոլոգիական հատկություններ, հեշտությամբ մշակվում է և աչքի ընկնում դիմացկունությամբ: Դրանից պատրաստված իրերը «չեն վախենում» յուղերից, ալկալիներից, օզոնից և եռացրած ջրից: Դրանք կարող են շահագործվել —75°-ից մինչև +250°-ի պայմաններում:*

ԳԻՆԸ 25 Կ.



## ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ

ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ ԱՄԵՆՈՒՐԵՔ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ»

ԱՄՍԱԳՐԻ 1966 Թ. ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է «ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»-Ի ՔԱՂԱՔԱՅԻՆ ԲԱԺԻՆՆԵՐՈՒՄ, ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ԸՆԴՈՒՆՄԱՆ ԿԵՏԵՐՈՒՄ, ԿԱՊԻ ՀԱՆԳՈՒՅՑՆԵՐՈՒՄ ԵՎ ԲԱԺԱՆՄՈՒՆՔՆԵՐՈՒՄ, ԻՍԿ ՀԻՄՆԱՐԿ-ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ՝ ՄԱՄՈՒԼԻ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՏԱՐԱԾՈՂՆԵՐԻ ՄԻՋՈՑՈՎ։

ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎՈՒՄ Է ԱՆՍԱՀՄԱՆԱՓԱԿ ՄԻՆՉԵՎ Ս/Թ ՆՈՅԵՄԲԵՐԻ 24-Ը, ՈՐԻՑ ՀԵՏՈ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆՆ ԸՆԴՈՒՆՎԵԼՈՒ Է 1966 Թ. ՓԵՏՐՎԱՐ ԵՎ ՀԵՏԱԳԱ ԱՄԻՍՆԵՐԻ ՀԱՄԱՐ։

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»